ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ

. . .

ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ

## ՃԱՌՔ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ





Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1860 ՌՅԹ




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ո[illegible]ղանէր որդւոց գովելի բարք են արդեօք ար-ժան անմոռաց յիշատակի հաստատել զկենացն առհա-սարակ արժանաւոր փառաց գնացելոյն եւ սիրոյ մնացե-լոցն ։ Աշխատասիրաց որդիքս ցանկացեալ զպարտուց ժա-մանակաց թողուլ անմոռաց զյիշատակ անուան զմեծի հօրս Յովհաննու Մանդակունւոյ , քան զամենայն ինչ պատշաճական անուան նորա եւ հայրագորով սիրոյս դա-տեցաք ածել 'ի լոյս 'ի բազմաժամանակեայ փոշեաց ըղ-քաղցր եւ զհոգեշունչ բանից նորա զճառս , որով նշուլա-զարդ փայլեն յաչս ամենեցուն փառք նորա եւ անստգիւտ վարք ։ Հայր կացեալ սորա եկեղեցւոյս հայաստանեայց զկնի սրբոցն Սահակեանց եւ Մեսրովպեանց ճոխացոյց զեկեղեցի ա̃ծայնին պաշտամամբք , օրհնութիւնաբեր կարգօք եւ կանոնականս սահմանօք , եւ ըստ ա̃յ տնտե-սութեանն առաջնորդելովն հօտին իւրոյ ․ խնդակից եւ պարագլուխ նոցա գտեալ առ Աստուած ցնծութեան յամենայն փառաւորութիւնս առաջնորդեցելոցն , եւ ա-նաչառ կշտամբիչ թերացելոցն յանառակիւր վարուց , որպէս զայլ ոմն Մակաբեան երեւեցաւ 'ի Հայաստան աշխարհիս , քարոզ բանին ճշմարտութեան սքանչելի պերճախօսութեամբն ։

Ի քսան եւ վեց ճառից սորա Հայրապետիս առա-ջինքն մեծաւ մասամբ յանուն Եփրեմի մակագրեալ են 'ի ճառընտրի ուրեք ․ որպէս եւ 'ի փարիզացւոց քա-ղաքին կայ այլ օրինակ մի ամբողջ բոլորագիր անթուա-կան նովին մակագրով ։ Այլ առ մեզ նոյն ճառք 'ի նո-

ռագիր մատենի միոջ ամենայնն յայնուն Մանդակունւոյ մակագրին ։ Նախ ’ի հնագոյն պատուական օրինակն երկաթագիր զոր ունիմք եւ զոր կալաք մեզ առաջնորդ ’ի տպագրութեան , խանգարեալ էր անուն մատենագրին առ հնութեանն ։ Այն ’ի ճառից աստի եւ ոմանք յայլ եւ այլ գրչագիրս միոյն անուամբ վարեցեալ եւ այլոց յայլում․ յորմէ եւ ոչ վայրապար երկբայեցի հնախոյզ ուսումնասէրն եթէ զոր ’ի նոցանէ որոյ մատենագրի սեփականել արժան իցէ ․ զայս եւեթ յայտնի գիտեմք , զի ’ի յոյն և յասորի բնագիրս մատենագրութեանց Եփրեմի չէք և ոչ մի ’ի ճառից աստի ։ Այլ թէ նորին Մանդակունւոյ իցեն թարգմանութիւնք յԵփրեմայ որոց բնագիրն կորուսեալ իցէ , կամ թէ ’ի բանից նորին Եփրեմի եւ Ոսկեբերանի ծաղկաքաղ արարեալ եւ յանձնէ յայլ կերպարան ածեալ իցէ զնոսին ըստ ժամուն պիտոյից ’ի բեմբասացութիւն ժողովրդեան , յորմէ յոմանս ’ի նոցանէ երեւի անուն Եփրեմի եւ ուրեք եւս Ոսկեբերանի , չիշխեմք առ ժամս դատաստան առնել համարձակ ։ Այլ եթէ այսպէս եւ եթէ այն , կարծեմք եթէ չիցեմք վրիպակ ինչ գործեալ եթէ Մանդակունւոյ զնոսին ընծայեցաք ցորչափ օրինակ յանուն նորին ’ի ձեռին ունիմք , եւ ’ի հակառակէն ոչ զօրաւոր ինչ հաւաստիք ։ Այն զի ոչ ինչ երկբայիմք եթէ ընթերցասիրացն ջան եւ փոյթ ’ի լուսաւոր՝ եւ յանստերիւր վարդապետութեանց աստի ոչ սակաւ հրահանգեցի ’ի կիրթս առաքինութեանց ․ որով եւ մատենագրին , ո ոք եւ իցէ , եւ աշխատողացս մեր կատարեալ պսակին իղձք ։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ամենայն վիրաւորք մարմնով..[1] ար............. անեն զվէրս ցաւոցն........ և հնարագէտ....... ըստ ցաւացուածին և ըստ վիրին չարութեանն դեղ յօրինեն այնմ անգամոց ուր վէրն կայցէ. և ոչ եթէ վէր յականն և դեղ յունկանն ոք առնիցէ: Նոյնպէս և յորժամ մեղաց հիւանդութիւն ոք ունիցի, և առ բժիշկն ոք հոգւոց մերձենայցէ, զոր ինչ վէրս մեղաց ցուցանիցէ վիրաւորն, մօտ է բժշկին զնոյն չարութիւնն ծանուցանել, և վասն նորին խրատել և յանդիմանել և մխիթարութիւն կատարել զնորա բանի վարդապետութեանն. զի թանձրագունիցն լսելիք դիւրալուր բանիցն հանդիպել կարասցեն, և զպարտութիւն վիրին ծանուցանել, և զդեղոցն հանգամանսն: Այլ և բանից թղթոյս շարադրութիւն ոչ խառն ՚ի խուռն զամենայն անօրէնութիւն առաջի արկեալ ցուցանեն, և կամ զայլ և այլ յանցանաց ինչ պատմեն, այլ ըստ խնդրոյ խնդրողին զնորին անօրէնութիւն չարութեանն ծանուցանեն, զի լսելիքն օգտել կարասցեն. ոչ...չ բանից և կամ........ց փոյթ արարա....... դիւրալուր ցուց.... նչ պատմել, որ ՚ի...... ից, դիւրաւ և քաջ ՚ի միտ առնուլ. զի ոչ եթէ ճարտարասանութիւն բանից ՚ի խնդիր է վիրաւորին, այլ որ դիւրալուր բանիւ զհանգամանս առաջնացուցիչս դեղոցն ոգոյն վիրացն ցուցանիցէ, և զախտս մեղացն փարատիցէ ծծային վարդապետութեամբն. ոչ ինչ աւելի ձեւացուցանել քան որ հոգւոյն սրբոյ են հրամանք: Զի թէպէտ և գիրք բազում գրեցան, սակայն մի և նոյն են պատգամք: Այսպիսի ինչ է զոր ասեմ: Ընկալաւ Մովսէս տասնպատգամեան օրէնս ՚ի հոգւոյն, որ ունէր զամենայն կամս Այ. նովին վկայ և մարգարէքն գրեցին, և զնոյն դիւրապատում արարին. Նովին հոգւով զնոյն և առաքեալքն գրեցին, և ևս առաւել յայտնագոյնս ծանուցին. նովին հոգւով զնոյն վարդապետքն թարգմանեցին. և մի ըստ միոջէ դիւրալուր եւս արարին ՚ի լրումն..[2] ջերմեռանդն արտասուօք պարտ է կալ առաջի Այ. և որպիսի աղօթք են ընդունելի և զինչ վարձք նորա, և կամ որ ընդունելիք և որպիսի..նորա. և թէ որպիսի մ....ւք ջանայ սատանայ խափանել զաղօթս աղօթականին: Ծանուցանէ և զզգաստն զգաստաւորն ծուլացելոցն և զանմահ կենացն վայելչութիւնս:

Ե. Վասն ողորմութեան և անողորմութեան, և թէ որպէս շահաւոր է քան զամենայն առաքինութիւնս. և թէ որ օգուտ հզօրին է և

1 Յօրինակին խանգարեալ է. որպէս և զկնի:

2 Թուղթ մի անկեալ է յօրինակէն:

որպիսի ինչ աղքատին 'ի սրտցն ողորմութենէ ։ Ուսուցանէ և զանազան կարգս ողորմութեան հանգամանս և զկեղծաւորացն պատիժս ։ Պատմէ և զնեղելոցն նեղութիւնս և զանողորմիցն զթշնամանս ։ Ցուցանէ և զանողորմիցն դատաստանն անողորմ, և զողորմածացն ողորմութիւնս յահեղ աւուրն յատենումն ։

Զ. Վասն պտղոց և պատարագաց և ողորմութեան աղքատաց. և եթէ կերպարանօք բարւոյ գործ անօրէն կատարէ սատանայ. և թէ պարտ է զոր ինչ ոգւոցն սերմանես՝ երկիւղիւն ևս կատարել և ոչ 'ի ցոյց մարդկան, զի մի զխոստանն մատուցանելով յանդիմանեսցուք իբրև զԿայէն ։ Եւ ապա 'ի խրատ մատուցեալ յայտնէ զչարութիւն հնարից սատանայի, և ցուցանէ թէ որպէս պարտ է զերծանել 'ի նմանէ ։

Է. Վասն փոխոց և վաշխիցն չարաց. և թէ որպէս անօրինագոյն են քան զամենայն անօրէնութիւնս փոխոցն առկոպիքն, և անթիւ հոյլս ամբարշտութեան ծնանի. և թէ պիղծ են պատարագք և ողորմութիւնք զոր 'ի վաշխիցն ոք տանիցէ ։ Սպառնայ և ահիւ գեհենին թէ յայնմ աւուր շուրջ զնովաւ տեսանելոց է զչարեացն զպատկերս ըզզրկեալս և զկոփեալսն ։

Ը. Վասն յանդիմանութեան տրտնջողացն և մխիթարութեան աղքատացն գոհացողացն. և թէ որչափ չար է տրտունջ, և հաւասար հայհոյութեան. և որպիսի շահք են յաղքատացն գոհութենէ, որք և ըղձակս իսկ զմարտիրոսութեան առանան ։ Եւ ուսուցանէ թէ որ են պտուղք և պատարագք և ողորմութիւն աղքատին, որ առանց ոսկւոյ և արծաթոյ է բաշխումն ։ Պատմէ և զհոյլս տրտմութեան մեծատանցն և զաղքատացն անհոգութիւնս. յիշէ և զատանջանացն արհաւիրս, և ապա 'ի խրատ խոնարհի ։

Թ. Վասն քահանայիցն տեսչութեան 'ի վերայ ժողովրդեանն. և թէ որպէս ահիւ և դողութեամբ պարտ է առաջնորդել, զի և անդ... ժողովրդեանն. զի բազում քննութ...... նէն. և եթէ ահեղա....... ին ոչ զգուշացուցանեն բանիւ վարդապետութեամբ ։

Ժ. Վասն բամբասողաց և չդատելոյ զվարդապետս. և թէ մեծ անօրէնութիւն է բամբասողաց չարութիւն, և ընդ պոռնիկս և ընդ յափշտակօղս դատապարտին. և առաւել ևս որք զքահանայն և զվարդապետն և զառաջնորդս բամբասիցեն. և թէ որչափ ապաշխարութիւն է քահանային վասն հօտին տեսչութեան ։ Պատմէ և զահեղ տանջանացն, և ցուցանէ զճանապարհ կենացն յաւիտենից ։

ԺԱ. Վասն սիրոյ և յանդիմանութեան և մախանաց և նախանձու. և եթէ որ է սէրն ծածկեալ, և կամ որ ըստ մարմնոյ. և եթէ որպիսի անօրէնութիւն է նախանձն և ատելութիւնն զոր զանձկլեալն սատանայի նմանեցուցանէ և նորուն տանջանացն տանջանակից ։ Ապա 'ի խրատ խոնարհի, և սպեղանիս 'ի վերայ հրամայէ ըստ ախտին չարութեան ։

ԺԲ. Վասն բարկացողաց բարուց և անհաշտ թշնամութեան մըտաց. և թէ որչափ անհամբոյրք են և վայրենաբարոյք, և զթոյնս թըշնամութեան ..... են հանապազ ....... ցուցանէ զհաշտելն ընկե-

նայ . որքան զհեթանոսութիւնս ևս պղծագոյն է, և չէ իսկ 'ի մարդկան համարի ։ Զարմանամ և ընդ ներողութիւնն քո, թէ կենդանոյն իսկ փայլատակմամբ 'ի յերկնից պարտ էր սատակել զայնպիսին ։ Յայտնեալ է զամենայն պղծութիւնս . և ապա 'ի խրատ խոնարհի և յոյս ապաշխարութեան ցուցանէ ։

Ի. Վասն չունելոյ սէր բարեկամութեան ընդ Թշնամիս քո . և փախչել յագահաց և յափշտակողաց և յարբեցողաց անզգամաց, զի պիղծ են ագահացն և յափշտակողացն կերակուրք, և պղծեն զայնոսիկ որ մերձենան 'ի նոսա, և նոքին բարեկամութիւնս առնեն ընդ Թշնամիս քո ։ Եւ եթէ պարտ է 'ի սուրբս յարիլ և զծածանելս սիրել, զի և յերանութիւնս երանեսցին ։

ԻԱ. Վասն մխիթարութեան կարկառին հարուածոց, եթէ վասն որպիսի ինչ իրաց նեղեն զմարդիկ ցասմունք աստի աստի . և եթէ զոր ոմն գործէ, զամենայն 'ի բարի մատակարարէ մեզ ։ Յայտնէ և այլ զլուխս բազում անօրէնութեանց . և ապա մխիթարէ և գոհանալ հրամայէ զողորմութենէն քո, որ անցաւորօքս փորձէ և ոչ յաւիտենական տանջանօքն ։

ԻԲ. Վասն զգուշութեամբ 'ի սուրբ խորհուրդն մերձենալոյ . և թէ որպէս պարտ է ահիւ և դողութեամբ և բազում երկիւղիւ ընդունել 'ի մարմնոյ և յարենէ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի . և եթէ յոյժ աններելի դատապարտի քահանայն՝ որ զխիղճ մեղաց ուրուք գիտիցէ, և 'ի սուրբ խորհուրդն մերձենայ, և ոչ սաստիցէ նմա . և եթէ որպիսի սրբութեամբ արժանասցին 'ի սուրբ մարմինն և յարիւնն տէրունական մերձենալ ։

ԻԳ. Վասն սգաւորաց մխիթարութեան 'ի վերայ վախճանելոց . և թէ հեթանոսական և սատանայական է սուգ մեռելոց . և լինին ... վանք չար դիւրին խորհրդոց ։ Եւ եթէ լաւ է մահ և օգտակար, թէպէտ և մեղօք ոք իցէ վախճանեալ, սակայն յառաջակայիցն դադարեաց ։ Պատմէ և զանտանելութիւնս կծծողացն և փետողացն և զմերկանելն արիւնաւանացն, և զճչողսն և զկատանչողսն յանդիմանէ, և առ սգաւորսն 'ի մխիթարութիւն խոնարհի ։

ԻԴ. Եւ ապա ողբքն, և նորին աղօթքն ։

ԻԵ. Եւ խրատ հարցն յաղագս առաքինութեանց երիտասարդի . և վասն ամբարտաւանութեան, որ յետ ելանելոյն Ադամայ նախահօրն մեր 'ի դրախտէն 'ի վերայ ծննդոց նորա հաստատեցան ։

ԻԶ. Վասն հմայից և անօրէն դիւականաց որք Թիւրեցան յաշխարհի 'ի ճշմարիտ և յուղիղ պատուիրանաց, և գնացին զհետ սատանայի առ կախարդս և առ Թովիչս և առ վհուկս և առ ձեռնածուս . և Թողուլ զկաթողիկէ եկեղեցի և զխաչն աստուածընկալ, զնոսա յանդիմանէ և լուծանէ 'ի քրիստոնէական հաւատոց . և առ ճշմարիտ պատուիրանապահսն 'ի խրատ խոնարհի և յաւիտենից բարութեցն ժառանգորդս կացուցանէ ։

Եւ արդ զայս ամենայն փոքր 'ի շատէ ծաղկաքաղ արարաք . բայց են և այլ անԹիւ հոյլք խորհրդոց և բազում օրինակք չարեաց և առաքի-

նութեանց, և որք կարևոր են առաջնորդաց եկեղեցւոյ 'ի խրատ և 'ի յանդիմանութիւն և յերկիւղ և 'ի զգուշութիւն ամենայն ժողովրդոց. զի որ ինչ միանգամ պակասութիւն է մեղաց, և յանցանք վարուց եդեալ են 'ի սմա, և ամենայն խրատք վարդապետութեան որ պիտոյ են եկեղեցւոյ, 'ի սմա գտանին յայտնապէս և ոչ ծածկաբար: Ցայտնէ և զմեղացն չարութիւնս և զբժշկութեանն զհանգամանս. որով պահէ անարատ և առանց գայթագղութեան զտգիտագունիցն զեղուս, որք փոյթ են յուսանել վասն երկիւղին նոյ և պակասեն բանիւ և կամ գիտութեամբ: Ընաշխատ խրատէ զեկեղեցին Թղթոյս վարդապետութեամբ: Ցուցանէ և զանազան մեղացն չարութիւնս և զահեղ տանջանացն զարհաւիրսն: Ծանուցանէ և զխոստովանութեան հանգամանս և զապաշխարութեան զզջումն. զյորդորումն ողորմութեան և զփոյթ աղօթից և զպնդութիւն պահոց: Ուսուցանէ և զխոնարհութիւն մեծամեծաց և զհնազանդութիւն նուաստագունիցն. տալ և զփոյթ խրատու քահանայից և զգուշութիւն պատուիրանապահութեան ժողովրդոց, զպղծութիւն գործոց, զանպարկեշտութիւն մարմնոյ և ըզգայթագղութիւն լեզուաց և զխորամանկութեանցն աներևոյթ մխասուցն, և զամենայն հոլլս ազգի ազգի անօրէնութեան յայտնէ և յանդիմանէ, և ուսուցանէ զզանազանութիւն վարուցն առաքինութեան ըստ հաճոյից կամացն նոյ. և ամենայն իսկ չարաչար ախտից և վէրացն և մեղաց բժշկութեան՝ որում ցանկայ և խնդրէ անձն ապաշխարողի զհնարս դեղոց բժշկութեան՝ 'ի սմա գտանէ, որ են այսոքիկ:



ՏԵԱՌՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ





## Ա

### ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ՎԱՐՈՒՑ ՅԱՆՑԱՆԱՑ

Որք սուրբ հոգւոյն են ցանկացողք, և ա̃ծային սիրոյն են բաղձացեալք, գալստեան որդւոյն ա̃յ սպասեն, և անանց փառացն փափագեն. միշտ 'ի վերինն խորհին, և համապազ անդուրախութիւնան փափագեն. զաւուրեայս արհամարհեն ուրանան, և օր ըստ օրէ 'ի վեր ելանեն՝ ոչ միայն հաւատոցն ճշմարտութեամբ, այլ և վարուցն առաքինութեամբք. միշտ սկեն սրտին սրբութեամբ, և համապազ պատրաստ են ոգւոցն անարատութեան. վարին և կեան յաշխարհի և ոչ ըստ աշխարհիս հաճոյից, այլ իբրև զօտարս և գնացպաննականս և զմանկունս այլոց աշխարհի նեղին և մաշին 'ի բազում պխտոյից. յուսովն զօրանան այնու՝ եթէ “Ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի”: Այսպիսի են հոգևորացն պտուղք և ա̃ծատուրացն պարգևք:

Այլ ես 'ի բազում նետից չարին վիրաւորեցայ, և յաղթեալ պարտաւորեցայ. զպարտութիւն խոստովա-

նիմ, և զամբարշտութիւնս իմ ծանուցանեմ․ զանթիւ զմեղս իմ պատմեմ, և զահեղ անօրէնութիւնս իմ պաղատիմ։ Օ՜ի ցաւք վիրաց իմոց բռնադատեն զիս պատմել, և վարանք աղէտից իմոց հարկեցուցանեն զիս պաղատել, դեղ վիրիս իմոյ որոնել, և վտակս արտասուաց խնդրել հանապազ․ որով զմեղս իմ լացից, և զվէրս իմ բժշկեցից։ Օ՜որ բաղում բաղձանօք ցանկամ հանապազ, և ըղձալի տենչանօք հայցեմ յարաժամ զմարգարէականն զայն ողբալ․ զի ընդ նմա ձայնակցելով ողբայի, և արտասուելով զաղերսալի զձայն գորովոյ բարբառէի միշտ՝ ասելով թէ առնէր ոք զգլուխ իմ շտեմարանս ջուրց բազմաց, և զաչս իմ յորդ աղբիւր արտասուաց, և միշտ 'ի տուէ և 'ի գիշերի լայի անդադար՝ դառնապէս զամբարշտութիւնս իմ արտասուել, և զչարիս իմ վարանել, զբազմութիւն անօրէնութեանց իմոց լալ, և միշտ զմեղս իմ ողբալ, և զանբաւ զյանցանս իմ հեծել, և զանթիւ զպղծութիւնս իմ հառաչեցից, և զահեղ զկործանումն իմ կոծել, և զանձն աղէտիցն տանջանաց ողբալ դառնապէս։ Օ՜ի խիղճ յանցանաց իմոց հեղձուցանէ զիս հանապազ, և չարիք իմ չարչարեն զիս յարաժամ, հայելով յանթիւ մեղաց իմոց բազմութիւն, և յահեղ ախտից իմոց անօրէնութիւն․ որ միշտ զմարմինս իմ մաշէ, և զոսկերս իմ խարշատէ, և զսիրտ իմ գելու, և զորովայն իմ գալարէ, և անձն իմ դողայ երկիւղիւ, և զամենայն անդամս իմ հալէ հանապազ։ Օ՜ի առ ցաւս վիրաց իմոց վարանիմ, և միտք իմ ափշեալ յամառին, զի գիտեմ զբարին, և առնեմ զչար․ իմանամ զարդարութիւն, և գործեմ զանօրէնութիւն․ խօսիմ զուղղութիւն, և խորհիմ զանիրաւութիւն․ երևիմ սրբութիւն, և մերձենամ յաղտեղութիւն․ ճանաչեմ զճշմարտութիւն, և յարիմ 'ի մոլորութիւն․ տեսանեմ զլոյսն, և խաւարին փարփագեմ։

Այլ արդ ո՞վ զիս լացցէ, և կամ ո՞վ զիս ողբասցէ զմեռեալս մեղօք և զկործանեալս անօրէնութեամբ, զանկեալս 'ի խորս խաւարի և յանդունդս ամբարշտութեան․ զի չարիք իմ չարչարեն զիս, և պղծութիւնք իմ սպանանեն։ Այլ արդ որպիսի՞ կոծ լացից, և կամ որպիսի՞ ողբասցից զանթիւ մեղաց իմոց զբազմութիւն, որ 'ի յան-

ցանկացա եմ հիւանդացեալ, և ծուլութեամբ իմով ցաւագնեալ։ Ոչ է անմահութիւն ինձ խոստացեալ, և ես մնամ 'ի մահուս․ 'ի վեր յերկինս հրաւիրեաց, և ես յանդունդս դժոխոց իջանեմ․ զփափագելի զդրախտն պատրաստեաց, և ես զփուշս խոցոտիչս ընտրեցի․ և կեանս և փառս մշտնջենաւորս, և զիս մեղօք իմովք ըսպանի։ Այլ արդ այսր ամենայնի որ սուգ բաւական իցէ, կամ որ ողբ ողբալոյ․ որպիսի՞ լալումն արտասուաց, կամ որպիսի՞ հառաչանք պաղատանաց․ որ. ինչ աշխատութիւնք, և կամ որ վաստակք առաքինութեան զվէրս իմ բժշկեսցեն, զի անթիւք են և անհամարք։ Այլ անձն իմ հեղգայ ծուլութեամբ, յահեղ մեղաց բազմութենէ լքեալ թուլանայ, և յանշէջ հրոյն գեհենին սարսեալ սարսափէ․ զի յիշելով զմեծ օր ահեղ դատաստանին և զսոսկալի բեմբն արհաւիրս՝ անձն իմ դողայ երկիւղիւ, և միտք իմ ահիւ հիանայ․ սիրտ իմ ողբալ պահանջէ, և աչք իմ բաղձան արտասուաց․ ահ ահեղ ատենին փութացուցանէ զիս յապաշխարութիւն, և պատրանք չարին ծուլացուցանեն զիս հանապազ։ Այլ ահա ներեալ եմ յերկոցունց և տագնապեալ եմ ամենայնիւ, զի միշտ 'ի մեղս զաւուրս իմ անցուցի, և յանօրէնութեան զկեանս իմ ծախեցի, և ումեք զբարիս չարարի, և զարդարութիւն երբէք ոչ ստացայ․ այլ զամենայն անդամս իմ ապականեալ կորուսի 'ի յանցանս բազմադիմիս։ Զբերան իմ բամբասանօք պղծեցի, և զլեզու իմ դատարկ բանիւք աղտեղացուցի․ զունկն իմ 'ի լուր չարութեան, և զակն իմ 'ի տեսս աղտեղիս․ զսիրտ իմ զազիր խորհրդովք, և զանձն իմ անպարկեշտ գնացիւք վարեցի հանապազ․ և ամենևին ոչ պահեցի զմարմին իմ առողջ և զսիրտ իմ ճշմարիտ․ զի մեղօք 'ի ցաւս, և յանցանօք 'ի հիւանդութիւնս։ Կամիմ զզջանալ խոստովանել, և թշնամին յապաղեցուցանէ․ կամիմ մտանել 'ի վարս ապաշխարութեան, և թշնամին ծուլացուցանէ․ կամիմ անկանել առաջի այ, և թշնամին հեռացուցանէ․ կամիմ պաղատել և մաղթել և աղաչել, և թշնամին կարծրացուցանէ․ կամիմ ողբալ և լալ արտասուօք, և թշնամին ցամաքեցուցանէ․ կամիմ ողորմել աղքատին, և թշնամին զաղքատութիւնս իմ յիշեցուցանէ․ կամիմ պահօք զիս մաշել, և թշնա-

մին զանկարանալս մարմնով ինձ յիշեցուցանէ. կամիմ խոնարհել և եղբօրն հնազանդել, և սիրտ իմ ուռչի ամբարհաւաճութեամբ. զի որով մարթիմ զմեղս իմ քաւել, պչրութեամբ որոգայթ թշնամւոյն առաջի ե-դեալ գտանեմ:

Այլ արդ նեղեալ եմ ամենայնիւ, և անձն իմ հեծէ համապազ. յիշելով զմեղաց իմոց զբազմութիւն զա-ղամ երկիւղիւ, և ընդ զազրութիւն խորհրդոց իմոց վարանիմ. զանարգութիւնս իմ հայելով ողբամ հա-նապազ, և զանօրէնութիւնս զմտաւ ածելով արհաւիրք տարակուսանաց 'ի վերայ իմ անկանին, և ցաւք երկանց ինձ հասկանեն: Ո՜ք միշտ զահ ահեղ ատենին տեսա-նեմ, և զարհաւիրս մեծի բեմբի և ահաւորի, և զա-հեղ հնչիւն փողոյն, և զահագին բարբառ հրեշտակա-պետին. զծովածաւալ հրոյն բորբոքումնն, և ընդ ամե-նայն երկիր ծաւալումն. զվերանալն արդարոցն, և զմը-նալն մեղաւորացն. զգումարելն ամենայն մեղաւորաց, և տալ համարս բանից և գործոց. զսոսկալի դէմս դա-տաւորին, և զաններելի օր դատաստանին. զչար ամօթն մեղաւորաց, և զգան [1] անմահ տանջանան յաւիտե-նականս: Այլ վասն այսր ամենայնի հեծեմ և լամ դառ-նապէս՝ անդադար զմեղս իմ ողբալով, զի յոյժ ահեղ տեսանեմ զարհաւիրս գեհենին, և զսոսկալի աղէտիցն զտեսչութիւնն. ուր ոչ ինչք և ոչ աղաչանք ինչ օգնեն. ոչ լալումն և ոչ արտասուք են օգուտ. ոչ հեծութիւնք և ոչ հառաչանք են պիտոյ. ոչ արդարքն մաղթեն, և սուրբքն բարեխօսեն ընդ գնացելոցն մեզօք: Անծանօթ ես 'ի ծանօթից, և հեռաւոր 'ի մերձաւորաց. ատելի ես սիրելեաց, և թշնամի բարեկամաց. ամայի ես ամե-նեւին, և օտար ես յամենեցունց: Ոչ զոք կարես աղա-չել, և ոչ ոք զքեզ ճանաչէ. ողբաս և լաս ողորմով, և ոչ ոք 'ի քեզ խոնարհի. պապաքեալ ծարաւով տապա-կիս, և ոչ գթայ ոք 'ի քեզ. այրիս համապազ, և հը-նարս խորովմանն ոչ գտանես ամենեւին. միգապատեալ կաս 'ի հուր հնոցացն, և աղջամղջիւ յանշէջ գեհե-նին, 'ի զուբս խաւարայինս և 'ի տարատարոս ներքինս 'ի ժահահոտս և յորդնեռացս. հուր բորբոքեալ 'ի ներ-

[1] Մի [illegible]. [illegible]:

քոյ, և հրահրասանք ահեղ 'ի վերուստ՝ որ յորդեալ եղանեն յորդահոս գետոցն հրեղինաց, ուր խաւարն է շօշափելի ։ Այլ ամենեքին զոր ոչ կարեն տեսանել, զի ունաթղոր միգամի մթապատեալ և արկեալ 'ի մէջ կայծակունց՝ լսեն և ողբան անդադար, և զգեն միայն վարանան կսծիս, զի յահեղ ազէտիցն ցաւոց զգեն միայն համբարիս 'ի տանջանս չարչարանացն ։ Հեծեն հանապազ և լսն դառնապէս, անհանգիստ և անմխիթար ։ միշտք և նեղութիւնք և մշտնջենաւոր տառապանք, անդադար տանջանք և անվերջի տագնապանաց, անպատում ցաւք և անհնարին կսկիծք, ամենայնիւ վտարանք և ամենեքեան տարակուսեալք ։ Ո՛չ է անդ ձայնումն և վայումն միայն է բարբառ ։ ողբմանք և խանդաղատանք անդ՝ ըղհաչելեաց և գեհենաւորեաց միայն լսիս, զհեծեծելն և զառաչանապելն ։ լալ և ողբալ անդադար, և ողորմութիւն ոչ գտանել ։ այլ միշտ 'ի վերջս խաւարի, և հանապազ 'ի կարօտութիւն մնալս, հանդերձ արտասուօք և պաղատանօք զոր ոչ ոք լսէ, և ոչ զպաղատանսն ընդունի, քանզի անցեալ է ժամանակն ։ Այլ աստ է լալ և աստ է ողբալ ։ աստ է հաճել և աստէն հառաչել ։ աստ է աղաչել և մաղթել և խնդրել թողութիւն ։ զի աստ է շահ արտասուացն և օգուտ աղօթից, սրբմանք ողորմութեան և պսակ ապաշխարութեան, ժամանակ հառաչելոյ և ողորմութիւն խնդրելոյ ։

Այլ արդ աստէն փոխանակեսցուք զաւուր նեղութիւն մարմնոյս ընդ անսպառ տանջանացն ցաւոց ։ զի ընդ սակաւ պահոց աշխարհիս աշխատութեան ապրեսցուք 'ի բազմօրեայ բոցոյն և յահեղ կայծականց գեհենոյն ։ ընդ փոքր ինչ տքնութեան աղօթիցն ապրեսցուք 'ի յորդահոս գետոցն հրեղինաց ։ ընդ սուղ ինչ արտասուաց ապրեսցուք յահեղ հնոցացն և 'ի չարաժամիկ որդանցն խածանողաց ։ ընդ հաչելոյն և ընդ հառաչելոյն աստ՝ անդ ապրեսցուք 'ի դառն տանջանացն և յանշէջ խաւարէն ։ ընդ սուղ մի լալոյ և արտասուելոյ աստ՝ անդ ապրեսցուք 'ի միշտ լալոյն և 'ի հանապազ ողբալոյն ։ և փոխանակ միոյ ապաշխարելոյ աստ՝ անդ ապրեսցուք 'ի մշտնջենաւոր խաւարէն, 'ի դառն մահուանէն և յաւիտենականն ամօթոյն ։

Այլ արդ զայս ամենայն զմտաւ ածելով, ով անձն իմ բազմամեղ, մի հեղգար 'ի պահոց, և մի ծուլանար յա-

ղօթից. մի՛ դադարեր 'ի զղջանալոյ, և մի՛ յապաղեր 'ի խոստովանութենէ, և մի՛ վհատիր յապաշխարութենէ, և մի՛ վստահիր յողորմութենէ. մի՛ դադարիր 'ի լալոյ, և մի՛ հանգչիր յողբալոյ. մի՛ մնար վախճանին, և մի՛ յուսար 'ի վաստակ ծերութեան, և մի՛ համարիր զքեզ ամս բազումս յաշխարհիս, և մի՛ կարծեր եթէ յապա ինչ ապաշխարեմ. գող է թշնամին և խաբող, խաբէ ըզ-քեզ և կորուսանէ յապաղեցուցանելով այսպէս: Այժմ գործեցից ասես, ապա ապաշխարեցից. 'ի մանկութենս հանգեայց ասես, և 'ի ծերութեանն ապաշխարեցից. կեցից այսօր վայելեցից ասես, և 'ի վաղիւն պահեցից. այժմ փափկացայց ասես, և ապա պարկեշտացայց. այժմ ժողովեցից ասես, ապա սփռեցից աղքատաց...[1]: Այաղթելիք են պատրանք թշնամոյն, որովք խաբէ և կորուսանէ զմեզ՝ ամ յամ առնելով, և ժամ 'ի ժամ սահմանելով գործել զբարին:

Եւ արդ մի՛ խաբեսցուք յայսպիսի պատրանաց. անյայտ է օր վախճանին, աներևոյթք են ելք յաշխարհէս. իբրև երկունք 'ի վերայ անկանին, և ոչ ժամանես զղջանալ և ապաշխարել. իբրև գող 'ի գիշերի հասանէ, և ոչ տայ կոծել և ապաշխարել. իբրև վարմ հաւորսաց վաղվաղակի ըմբռնէ, և ոչ տայ լալ և հեծել և ողորմութիւնս թողուլ. իբրև զառիւծ յարձակի, գոչէ և յափշտակէ, և ամենևին ոչ ժամանես: Եւ արդ անձն իմ զի՞նչ արասցես, և կամ զի՞նչ գործեսցես, որ խորհիս զբարին, և ոչ առնես. կամիս ողորմել, և յապաղես. ասես զղջանալ, և ոչ որպէս Դաւիթ արտասուօք զմահիճս թանաս. այլ և զմոխիր, ասէ, որպէս հաց կերայ, և զըմպելիս իմ արտասուօք խառնեցի. և զամենայն գիշերս հեծեծէր և լայր դառնապէս անդադար: Յօժար ես 'ի պահել, և ոչ որպէս ըզնինուէացիսն 'ի խորգ և 'ի մոխիր իջանես. այլ և դառձան ես, ասէ, յիւրաքանչիւր ճանապարհաց և յանօրէն գնացից, զոր և առնէին: Ախորժես արտասուել և լալ, և ոչ որպէս պոռնիկն խանդաղատագին ողբաս. կամիս ողորմել նեղելոց, և ոչ որպէս կինն այրի՝ որ զամենայնն ծախեաց:

1 Բառ մի եղծեալ է յօրինակին. որ և յայլս պակասէ:

Որդ այսպիսի է ապաշխարութեան ջերմութիւն՝ որ ոչ 'ի յինչս և ոչ 'ի մարմնոյ աշխատութիւն խնայէ. այլ նեղէ և մաշէ և տառապեցուցանէ, և խնդրէ միայն զմեղացն թողութիւն, և զախտից ոգւոյն զբժշկութիւն. որով և մեք զմեղս մեր քաւեսցուք, և զվէրս ոգւոց մերոց բժշկեսցուք: Օք է և պահօք և ծոմաջան տքնութեամբ զմեղս քաւել. է և աղօթիւք և խընդրուածովք և գորովագին պաղատանօք զմեղս քաւել. է խորգով և մոխրով և գետնախշտի անկողնօք զմեղս քաւել. է և լալով և ողբալով և գթով տնանկաց ըզմեղս քաւել. է և հաչելով և հառաչելով և անդադար հեծեծանօք զմեղս քաւել. է և հեզութեամբ և խոնարհութեամբ և հնազանդութեամբ զմեղս քաւել. է և աղքատութեամբ և անընչութեամբ և մերկութեամբ զմեղս քաւել. է և բարի բարիւք[1] և ամենեցունց բարերարութեամբ զմեղս քաւել. է և եղբայրսիրութեամբ և երկիւղիւն այ զմեղս քաւել. է և ուղիղ խրատու և վարդապետութեամբ զմեղս քաւել, ըստ այնմ եթէ "Որ դարձուցանէ 'ի չար ճանապարհէն, ապրեցուցանէ զոգի իւր 'ի մահուանէ, և ծածկեսցէ զբազմութիւն մեղաց իւրոց": Այլ[2] և ճշմարիտ դարձն միայն և ուղիղ խոստովանութիւնն բաւական են 'ի փրկութիւն և յարդարութիւն, ըստ այնմ եթէ "Ասա դու նախ զանօրէնութիւնս քո, զի արդարասցիս":

Իսկ արդ դու զինչ ունիս ասել, ով անձն իմ բազմամեղ, եթէ այսքան դեղօք ոչ բժշկիս. այլ փութա մի յապաղեր, զարթիր 'ի դառնամիրհ 'ի քնոյդ, դարձիր 'ի կորստական 'ի ճանապարհէդ. փարատեա զխաւարն անգիտութեան. սթափեցիր յանզգայ մոլորութենէդ, և եկ 'ի քեզ. ընկեա 'ի քէն զմեղացդ սաստկութիւն. թեթևացո զծանրութիւն բեռանցդ անօրէնութեան. քաւեա զանթիւ յանցանացդ բազմութիւն. բժշկեա զչարաչար վիրացդ զխոցոտումն, և լուա զժահահոտութիւն տղմոյդ ամբարշտութեան. զի սրբեալ և մաքրեալ ոգւով, լուսազարդեալ և մեծապայծառ մարմնով՝ հա-

1 Այսպէս յօրինակին:

2 Աստանօր թերատ թուի բանն յօրինակին, որ ունէր այսպէս. և ճշմարիտ դարձն միայն և ուղիղ խոստովանութիւնն. ըստ այնմ. յարմարեցաւ ըստ այլ օրինակաց:

մարձակադէմ և զուարթերես անցանիցես ընդ բազմու-
թեան տիեզերական ահեղ և անթիւ բանակացն, քննել
յանդիմանման ահաւորի և մեծի բեմին քո, և լսել 'ի նը-
մանէ զքաղցրալուր բարբառն երանութեան և աշխար-
հատես հրապարակին՝ եթէ եկայք, օրհնեալք հօր ի-
մոյ, և մտէք ժառանգեցէք զերկնից բարութեանցն ըզ-
վայելչութիւն ընդ հօր և ընդ որդւոյ և ընդ հոգւոյն
սրբոյ. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտե-
նից. ամէն։



# Բ

## ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

Արմատք դեղոց բժշկաց զցաւս մարմնոյն առողջացուցանեն, և հոսումն արտասուաց ապաշխարութեան զմեղացն զվէրսն ոգոցն բժշկեն. և մանաւանդ որ հանդերձ ողորմութեամբ և գթով տնանկացն ապաշխարիցեն։ Քանզի բազում արմատք են ախտիցն որ դադարեցուցանեն, որք խառն են ՚ի դեղս բժշկաց. բայց է որ առաւել ևս ազդոյ է առ ՚ի ցաւոցն փարատումն։ Նոյնպէս և ՚ի դեղս սորա բազում ճգնութիւնք ապաշխարութեան են ՚ի մաքրումն մեղաց. բայց ողորմութիւնն է կարևոր և ազդոյ քան զամենայն առաքինութիւնս առ ՚ի զմեղս քաւելոյ և զվէրսն բժշկելոյ հանդերձ ողբովք և հառաչանօք և գթագին արտասուօք. յորժամ մի յապաղեսցուք և վաղուէնէ ՚ի վաղիւ տարացուք զդարձն մեղացն ապաշխարութեան, և մի առաւր վախճանին մնասցուք՝ առնել զընչիցն ողորմութիւն։ Զի գող է օրն այն, յափշտակող է օր վախճանին. անէրևոյթք են երբ յաշխարհէս, յանկարծահաս է և ստիպող, և ոչ թողացուցանէ աղաչել և մաղթել, լալ և ողբալ, ողորմել և ապաշխարել։ Ըմբռնէ իբրև զորոգայթ, յափշտակէ իբրև զաւազակ. և իբրև զգերի գերեվարաց վարեալ անողորմ, հառաչես արտասուել և հեծես ողբալով, և օգուտ ինչ ոչ գտանես։ Զի ժամէ ՚ի ժամ առնելով՝ զժամանակ ապաշխարութեան կորուսեր. որով կարող էիր զլեառնս մեղաց թեթևացուցանել, և զտիղմ անօրէնութեանցն մաքրել. լինել արդարոցն երամակից, արքի հօրն երկնաւորի, և ժառանգորդ անանց բարութեանցն։

Դու արդ կամ փափագանօք ըղձափափկութեանցն և կամ պատռնալեաց ահեղ տանջանացն փութասցուք յապաշխարութիւն, և մի բեռն ՚ի վերայ բեռանն կա-

պեսցուք, և ցաւ 'ի ցաւս յաւելուցուք։ Ոչ մի՛ խաբեսցէ սատանայ՝ թէ բազմաժամանակեայ են կեանքս, և մի՛ պատրեսցէ զմեզ մանկութեամբս՝ եթէ 'ի ծերութեանն ապաշխարեմք։ Մի՛ մնասցուք աններելի վախճանին և անողորմ պահանջողացն. մի՛ անվաստակ ծուլասցուք, և անվարձ գնասցուք։ Այլ զյանցանս քաւեսցուք և զմեղսն ապաշխարեսցուք, և նախանձաւորք լերուք քաջացն քաջութեան և առաքինութեան առաքինեացն. որոց սիրտքն սրբեալք և միտքն լուսաւորեալք, անմեղ 'ի մեղաց և անարատք յանօրէնութեանց. որ միշտ զվերինն խորհին, և 'ի վերինան հոգան հանապազ. որք զմարմինս ունին հողեղէնս և հրեշտակակրօնս. որք ոչ են կարօտ գրոց վարդապետութեան և տարացոյց օրինակաց. զի առաւել քան զգիրն երևեցուցին զմտացն ուղղութիւն և զվարուցն առաքինութիւնս[1]։ Հեռի եմք յուղիղ գնացից, և օտար 'ի վա-

[1] Ի Նոտրագիր օրինակին գտանի առաջնիկայս յաւելուած համանման այնմ որ ընթերցեալ լինի 'ի Սարգսի մեկն. կաթողիկեայց. և սկսանի. "Եւ արդ համեմատեսցուք ընդ միմեանս զայժմու գործս մեր և զնախնի երանելեացն. և տեսանեմք զվատթարութիւնս մեր, և զառաջին սրբոցն զքաջութիւնսն։ Նոքա զանձինս մատնեցին վասն սիրոյն Քրիստոսի. նոքա զինչս և զհայրենիս արհամարհեցին։ Նոքա զծնողս և զկին և զորդիս թողին վասն աստուածպաշտութեան, միայն զի յոյս մի զրկեսցին։ Իսկ մեք որք թուիմքս թէ եմք ինչ, ոչ այսպէս. այլ զամենայն հնարս վասն հանգստեան մարմնոյ հնարիմք, և զընչիւք գամք, և զսիրելիս մեծարու համարիմք քան զպատուիրանս այ։ Եւ զինչ ասեմք զսիրելիս. ուր զորթ այգւոյ և զպարտէզ բանջարոյ և ծառս դրախտի և զկարաս գինւոյ և զանօթս չնչինս յարգոյ և պատուական համարիմք քան զսէրն այ։ Նոքա վասն Քրիստոսի հալածէին և քարշէին և նախատէին. 'ի բանտս և 'ի կապանս մատնէին։ Իսկ մեք վասն Քրիստոսի ոչ նախատանաց անգամ տանիմք, և ոչ թշնամանաց բանից համբերեմք, և ոչ զզայրացուցիչ եղբօրն քաղցրութեամբ չիջուցանեմք. այլ ևս առաւել զազանանամք ընդդէմ նորա։ Դարձեալ և մեք վասն Քրիստոսի մի ինչ 'ի մարմնական ցանկութեանց ոչ կապեմք 'ի մեզ ժուժկալութեանն կապանօք, և ոչ բանտարգել լինիմք 'ի տունս մեր զօր մի ողջոյն վասն Քրիստոսի, և ոչ արտասուօք զբոց մեղացն շիջուցանեմք, և ոչ ժուժկալութեամբն իբրև երկաթի եղնգամբք քերեմք 'ի մէնջ զթարախն անօրէնութեան։ Նոքա զթշնամիսն սիրէին, մեք և զբարեկամսն ատեմք. Նոքա ըզհալածիչսն օրհնէին, և մեք զբարերարսն մեր բամբասեմք. Նոքա զինչսն զոր 'ի հայրենեացն անտի ունէին՝ ցրուէին, իսկ մեք զոր ոչն ունիմք՝ ստանալ ջանամք։ Նոքա յերկրաւորացս յերկինս փոխեցան հրեշտակական կրօնաւորութեամբ քաջավարեալք. իսկ մեք յերկնաւոր քաղաքականութէ յերկիր կործանեցաք, և սանդարամետական եղաք։ Նոքա զած յինքեանս բնակեցուցին՝ զպատուիրանս Քրիս-

րուց առաքինութեան. չեղեալք յորդայնից Թշնամեաց և շաղախեալ տղմով յանցանաց. կարօտք եմք խրատուց և վարդապետութեան և տարացոյց ինչ օրինակաց. և Թերևս ահից սաստիցն յահեղ հրոյն երկիցուք, և տարացոյց օրինակացն աղէտիցն իմասցուք: Մարմնովս զոգոցն ծանիցուք, և երևելեաւս զաներևոյթն գիտասցուք. ահիւ ահեղ տանջանացն զղջասցուք, և փափագմամբ յանանց[1] բարութեանցն: Ապաշխարութիւն պարտ է առնուլ զօրինակս վիրաց ոգոցն ցաւոցն զցաւ ախտիցն մարմնոյ, թէ որպէս միշտ ողբայ անձն ցաւագին զվարանս ցաւոցն մարմնոյ, և հանապազ լայ դառնապէս զաժամանակեայ ախտիցն զայրացումն, և 'ի տարապիուսանաց ահեղ աղէտիցն հառաչէ և հեծէ անդադար, և ձայնք պաղատանաց և վայից և զանազորմն խանդաղատեն: Ոչ 'ի սաստկութենէ աշխատիցն[2] ցաւոց ոչ 'ի սէր սիրելեացն բերկրի, և ոչ 'ի Թշնամանս ատելեացն զայրանայ. ոչ զփափկութիւն կենացն յիշէ, և ոչ զվայելչութիւն գեղոյն ածէ զմտաւ. և զամենայն իսկ զպատիւս և զպայծառութիւն աշխարհիս անխոյթ արարեալ ուրանայ 'ի տարապիուսանաց ցաւոյն: Այլ կայ միշտ սգով և արտասուօք և ողբագին խանդաղատանօք. զվիշտս վտանգին միայն պաղատի, ընդ որ բազումք 'ի մերձաւորաց արտասուեն ողորմելով, և փութան լինել 'ի խնդիր բժշկաց և դեղոց առ զաժամանակեայ զցաւսն փարատելով, և վարձս եւս բժշկացն խոստանան և գինս դեղոց վասն տագնապի ցաւոց փարատելոյ:

Նոյն այս ամենայն վասն ապականացու մարմնոյս լինին նեղութիւն. որ Թէպէտ և բժշկի, սակայն մեռանել ունի: Իսկ զինչ արասցուք զմշտնջենաւոր ցաւս ահեղ հրոյ դժոխոցն՝ որ պատրաստեալ պահի բազմավէր ոգոց մերոց, որ միշտ 'ի մեղս է ախտացեալ, և 'ի մահիճս

տանի կատարելով, իսկ մեք անցանելով ընդ պատուիրանս նորա՝ անկեալ եղաք բանսարկուին սատանայի: Քանզի ամենեքին սանձակոտորք եղաք 'ի դաշտի, և զքաղցր լուծն 'ի բաց ընկեցաք 'ի պարանոցաց մերոց, և զփոքրագի բեռն սասանեցուցաք 'ի Թիկանց մերոց, և ամենաբար յերկրի շրջիմք: Ով մեծի աղէտիս, և վշտալի տարակուսիս: Վասն զի,,:

1 Այլ օրինակ այսպէս ունի. զանանց բարութեանն ժառանգութեան ապաշխարութեամբ: Եւ սոյն պարզ է մեզ առանց օրինակ:

2 Յայլում օրինակի ախտիցն:

յանցանաց անկեալ զնի անբժշկականս · և հանապազ խոցոտեն , և միջս մխրճաւորեն մեղացն անօրէնութիւնք , և առաւել չարաչար չարչարեն զմեզ վարանք աղետիցն ցաւոց ։ Եթէ ոչ հառաչեմք և հեծեմք և հանապազ պաղատիմք առ նա · ոչ ողջանամք զցաւս մեղաց , և ոչ զաղտս յանցանաց մերոց լուանամք · ոչ անդադար լալով արտասուօք զանօրէնութիւնս մեր , և զսպառնացեալ տանջանացն արհաւիրսն · այլ մեղս 'ի մեղաց յաւելումք հանապազ , և սպեղանեօք ապաշխարութեան ոչ դարմանեմք · ոչ բժիշկս խնդրեմք , և ոչ դեղս արկանեմք · ոչ ինչս ծախեմք , և ոչ վարձս խոստանամք ընդ կարևոր մերոյս բժշկութեան , և ընդ անհնարին ախտիցս առաքինութեան · որ ոչ միայն աղեօք և ստամոքօք եմք 'ի ցաւս , այլ ամենայն մարմնովս եմք 'ի մէջս մեղաց ։ Քանզի աչք մեր յանդուգնք յայրատ հայեցուածովք են 'ի մէջս · լսելիք մեր առ 'ի զանմեղական ախորժելեաց են 'ի ցաւս · լեզուք մեր բամբասանօք և երդմամբք են 'ի ցաւս · սիրտք մեր չար ցանկութեամբ և ագահ խորհրդովք են 'ի ցաւս · ձեռք մեր յափշտակութեամբ և 'ի զրկանաց են 'ի ցաւս · ոտք մեր 'ի Թատերացն խաղուց և յանպարկեշտ գնացից են 'ի ցաւս · և ամենայն մարմինք մեր ջերմացեալք մեղօք , և այրեցեալ անօրէնութեամբ ։ Եւ այսպէս ամենայն անդամօք եմք 'ի ցաւս և 'ի մէջս մեղաց · և առ բժիշկս որոցն ոչ մերձենամք , և դեղոյ ապաշխարութեան չեմք 'ի խնդիր · ախտքն մեղացն չարչարեն , և արտասուօք ապաշխարութեան ոչ բժշկեմք ։ Ոչ ողբովք սրբեմք զդառն Թարախն մեղաց , և ոչ արտասուօք լուանամք զչար նեխութեանցն փտութիւն · զոր եթէ աստ ոք ոչ բժշկէ աղօթիւք , պահօք և ողորմութեամբ , անդ ահեղ հուրն առաջի կայ , և բորբոքումն անշէջ բոցոյ գեհեննին · պատրաստ են և սպասեն հրահոսանք[1] գետոցն հրեղինաց և տարտարոսքն աղջամղջինք լի խաւարաւ · դառն դահիճք և անողորմ չարչարանք · բազում վարանք աղէտից , և ահագին արհաւիրք անմերձելի տանջանաց , որ մնան և պահին յօր մեծի ահեղ դատաստանին ։

Եւ արդ այս ամենայն առաջի կայ , և մեք զգուշիմք և

1 Յօրին. · հրահոսանիք · երկոքին ըստ այլ օր ։

փափկանամք և մեղանչեմք աներկիւղ, և ամենևին յերկիւղաւորս յորդորեալք[1] զամենայն ինչ անհոգաբար կատարեմք. ուտեմք և ըմպեմք, և ՚ի քուն լինիմք անհոգաբար, և բազում աւելասացութեամբ մթերս ժողովեմք իբրև զգանձանակս և զշտեմարանս. և զոյն երբէք չածեմք զմտաւ[2]; ոչ զարհաւ[illegible]ատաստանին, և ըզզանձն անձին յաւիտենականն: [illegible] ոչ յիշեմք իսկ ամենևին եթէ զինչ ունիցիմք կրել յետ մահու, և ոչ զամենահնար պատերազմն սատանայի ածեմք զմտաւ բազում զգուշութեամբ և երկիւղիւ հանապազ, որ միշտ ՚ի զանազանս մարտնչի անդադար, և աներևոյթ վիրաւորէ յարաժամ. և չզգամք և չզգուշանամք ՚ի չար նետից նորա, և խուսափէր հարուածոյն. այլ յամենայն ՚ի ցանկութիւնս վայելեմք անհոգաբար, և հանգչիմք անաշխատաբար: Այլ այնպէս ծուլութեամբ և անհոգութեամբ վարիմք, որպէս թէ չիցեն իսկ ատենադատք, և ոչ գեհեն, և ոչ դատաւոր ահաւոր, և ոչ դատաստանք անողորմ. ոչ քննութիւնք գործոց, և ոչ խնդիրք խորհրդոց. ոչ վարուց հանդէսք, և ոչ դատարկ բանից պահանջումն:

Այլ այս ամենայն ծուլութիւնք ՚ի չար հնարից սատանայի են որ յամենայն վարս մեր ընթանայ, և զնէ առն զորոգայթն մահու. քանզի ոչ եթէ չարեօքն միայն չարչարէ սատանայ, այլ զուղիղ վարսն ՚ի չարութիւն դարձուցանէ. և բարի արուեստիւն զոր ՚ի մարդ տեսանէ, զնէ նմին որոգայթ մահու: Ո որ սակաւն հանճարիւ, և ոչ փութայ ապաշխարել, նովին կորուսանէ. քանզի կորուսանէ զպահողն կեղծաւորութեամբ և ՚ի ցոյցս ձգնելով. զաղօթականն արհամարհանօք կալ առաջի Այ, և զմիտսն յածեցուցանելով արտաքոյ. զողորմածն ՚ի սէրս հեշտանաց ոչ գնալ: Կորուսանէ և ըզվարդապետեալն կեղծաւորութեամբ ուսուցանելովն, որ ոչ բազում երկիւղիւ զկամսն Այ ուսուցանիցէ: Կորուսանէ և զսաղմոսերգողն սատանայ, եթէ ոչ զգուշանայցէ չար ախտիւ սնափառութեամբ, այլ ՚ի ցոյց և ՚ի գով լսելեացն ասիցէ, և ոչ զպատուականն Այ պատմե-

1 Յայլում օրին. յորդորեալ: Ի գլխաւոր էջս յաւելուածս:
2 Այլօրինակ ունի յաւելուած.

ցեն, և զօրհնութիւնս նորա երգեսցեն, որք ոչ իցեն զփառաւորիչս պատուեն։ Սորուսանէ և զկողմն սատանայ վասն ծուլութեանն և արհամարհանօք լսելոյ պատգամացն ա՛յ և բանին վարդապետութեան։ Սորուսանէ և զվաստակս վաստակաւորաց սատանայ առանձնելոյն, և մեծ 'ի վե… հեղգապաշտնիցն երևելով, և 'ի հաշխ և 'ի համար …ծ սպասաւորութեան խաբոյ բերելով, և յայտնելով ամենեցուն զքան վաստակոյն խրայ. որ ոչ իցեն զվաստակաւորան համգիստ գտանէ, այլ իցեն զտրտունջողն և զդատապարտեալքն յանդիմանի։ Սորուսանէ և զընչաւորս սատանայ որք 'ի ժողվելն միայն են ժրացեալք, և ոչ 'ի բաշխելն տնանկաց. որ և ոչ ընչիւքն ապրել մարթասցեն, այլ իցեն զանղորմ և զագահս դատապարտեսցին։ Սորուսանէ և զաղքատս սատանայ հեծեծանօք և տրտնջելովն, և ոչ գոհանալով զայն որ կամի 'ի մշտնջենաւորին մեծացուցանել զնոսա։ Սորուսանէ և զարուեստաւորսն սատանայ, եթէ վարձ աւելի առնուցուն քան զգործն, և կամ նախանձու և չարակնութեամբ զտաղանդ արուեստին արգելուցուն յայնցանէ՝ որ ուսանելն խնդրեն, որ իցեն զտաղանդապարտս պարտաւորեսցին։ Սորուսանէ և զիշխանս սատանայ՝ որ ծանր իշխանութեանն լինիցի, և գողանայցեալ սրտիւ զռամկացն ահաբեկիցէ, և կամ վասն շքեղ երևեաց ինչ և կաշառուց՝ զիրաւունսն արդարացն գողանայցէ։ Սորուսանէ և զայնոսիկ որ ընդ իշխանութեամբն են, եթէ ոչ իցեն սպասաւորի ա՛յ հնազանդեն և երկիւղիւ զպատիւն հատուցանիցեն։ Սորուսանէ և զհարկապահանջսն հարկահանաց, եթէ աւելի քան զհրամանս արքունի պահանջիցեն և զնեղեալսն նեղիցեն . . .[1] և զլաց գեհեննին վարիցեն։

Այլ արդ այսպէս ամենեցուն կազմէ սատանայ որոգայթս մահու, և յուղիղ կարգաց և 'ի վարուցն ա՛յ հանէ. պտուղ չար և վարձ անօրէն՝ որով կարծեմն զարքայութիւնն ընդունել, նովին զտանջանսն ունին ժառանգել։ Այլ յայնչափ յափշտակութիւն յիմարեցոյց սատանայ, մինչև յաղօթելն և 'ի պահելն և յողորմութիւնս առնելն տայ մեղանչել։ Այլ ոչ ջանամք թափել

1 Յօրինակին առող մի անընթեռնլի է. որ և յայլս չիք։

'ի մէնջ զթմբիր սատանայի, և պատրաստանօք ապաշխա-
րութեամբ զտէր հաշտեցուցանել մեզ՝ զի կարող է ապաշ-
խարութիւնն զսևացեալս մեղօք սպիտակացուցանել, և
զաղտաթաթախսն մաքրել, զխաւարեալսն մեղօք լուսա-
ւորել, և զմթերս անօրէնութեանցն փարատել: Այս
զայս գիտելով սատանայի մտոյ առ այն՝ որ ապաշխա-
րելն կամիցի, և ծանրացուցանէ զմիտս նորա չյօժարել
'ի սկիզբն ապաշխարութեանն: Վասնզի գիտէ՝ եթէ
սկիզբն ուղղեսցի, սոյն և վստահ ապաշխարութեանն
քաղցրանայ. և վասն այնորիկ ամենայն հնարիւք
յսկիզբն ապաշխարութեանն զգուշանայ ծուլացուցանե-
լովն, և որ 'ի յոր առնելով:

Այլ մեք զայս գիտելով փութով փութասցուք սկիզբն
առնելով ապաշխարութեան. զի միայն յսկսանելն թուի
եթէ ծանր կայ, և անդէն գործն հեշտանայ, և եր-
թայ քաղցր և ցանկալի: Որպէս և պատերազմողք զօ-
ռավիգն և զայրոյն զանուանս անկեալ զկոյն չհամարձա-
կի երկրորդել որ ուսանելն կամիցի. այլ [illegible]
կխանուն և բեկբեկելով, և ապա գիր զգրոյ կախելով
անաշխատ բերելով զհեգենայն: Այսպէս և ապաշխա-
րութիւնն եթէ յսկզբանն միայն համբերիցէ, խստա-
վանութեամբն շնորհս ընդունին, և շնորհօքն միայն
լուսաւորին. զերկիւղ տանջանացն խմնան, և երկիւ-
ղիւն արտասուս և սուգ ստանան. սուգն պահս ուսու-
ցանէ, և պահքն աղօթս բերեն. աղօթքն յողորմու-
թիւնս յօժարեցուցանեն, և սակաւ սակաւ յաստիճա-
նէ յաստիճան ելանէ, և զխորս յերկինս վերանայ:
Այլ և կարող ես միով միով 'ի սոցանէ արդարանալ ե-
թէ կամիցիս. զի բազումք ուղիղ խոստովանութեամբ
միայն ապրեցան. ոմանք սգով և արտմութեամբ փըր-
կեցան. ոմանք խորգով և մոխրով միայն ապաշխարեցին.
ոմանք լալով և արտասուօք զտէրն հաշտեցուցին. ոմանք
պահօք և աղօթիւք ապաշխարեցին. ոմանք ողորմութբ̃
զողորմութիւնն այ̃ ընկալան. ոմանք մարդասիրութբ̃
և տկարագունիցն ծառայելով գտին ապաշխարութիւն.
ոմանք խոնարհութեամբ և հնազանդութեամբ թողու-
թիւն մեղաց ընկալան: Զի որպէս ազգի ազգի են մե-
ղացն ճանապարհք, նոյնպէս և զանազան են դեղք ա-
պաշխարութեանն, որով կարող ես բժշկել զամենայն

հիւանդութիւնս մեղաց, ոչ թուովք ամաց և բազում ինչ ժամանակօք, այլ միայն ուղիղ դարձիւ և սրտիւ 'ի չարեացն հեռանալով կարող ես արդարանալ ։

Այս արդ զայս ամենայն գիտելով ապաշխարութեամբ զմեղս մեր քաւեսցուք. քանզի պղծութիւնք մեղաց ոչ միայն յահեղ աւուրն դատաստանին, այլ և աստէն իսկ չարեօքն չարչարեն մտացն խղճիւ, և գաղտագողին շըրջելով անպատուութեամբք 'ի մարդկանէ, կասկածանօք 'ի ծանօթից, ամօթով 'ի սիրելեաց, նախատանօք 'ի թըշնամեաց, տաղտկալեօք դատաւորաց, երկիւղիւ բանտից և պատուհասից, յանդիմանութեամբ պատուիրանացն ա̃յ, և ահիւ ահեղ տանջանացն ։ Այլ անդր երթեալ ով կարասցէ պատմել զմշտնջենաւոր աննկարելի աղէտիցն նեղութիւնս, որ այրեն և մաշեն ամօթով և նախատանօք ։ Իսկ զապաշխարութեան պտուղս ոչ միայն յերկինս վայելես, այլ և աստէն իսկ հարիւրապատիկ ընդունիս խնդութիւն, անհոգութեամբն, գովութեամբ պատուիրանաց, անխիղճ մտացն ուրախութեամբ, անամօթելի 'ի մարդկանէ, անկասկած 'ի ծանօթից, անպարսաւ 'ի թշնամեաց, առանց ամօթոյ առ սիրելիսն, համարձակ 'ի հրապարակս, աներկիւղ առ դատաւորացն, ազատ 'ի պատուհասից, կեանք խաղաղականք, մահ հեշտական, ակնկալութիւն մշտնջենաւոր և փափագելի փափկութեանցն ։ Իսկ անդուրախութեանցն որ բերան բաւական իցէ պատմել զանբաւ բարութեանցն զվայելչութիւնս ։

Արդ այս է վարձ արդարութեանն, այս պտուղ ապաշխարութեանն ։ Վասն որոյ մի երկնչիր 'ի մեղաց բազմութենէ մտանել յապաշխարութիւն. միայն անկիր առ ա̃ծ. չէ դատաւոր, այլ բժիշկ. չէ դահիճ սպանող, այլ հայր գորովագին ։ Ընդ առաջ քո ելանէ որպէս անառակ որդւոյն. զպարանոցաւ քո անկանի որ դարձարդ յապաշխարութիւն. յաչս առ բերան համբուրէ զքեզ հայրն երկնաւոր. զպատմուճան առաջին անմեղութեան հրամայէ զգեցուցանել քեզ. կօշկաւն 'ի միւսանգամ թունիցն թշնամւոյն ամրացուցանէ ըզքեզ ։ Պատարագաւն 'ի մարմնոյ որդւոյն ա̃յ կերակրէ. ընդ քեզ վայելեն ընտիր ծառայքն 'ի պատարագէն, և սուրբք ամենայն երգեն և պարեն 'ի դառնալ յանա-

ուակութեննէդ քումմէ։ Ընդ որ հիացեալ նախանձի փոքր մի առաջին ժողովուրդն թլփատութեամբ՝ ոչ մըտանել՝ յուրախութիւն զենման որդւոյն քո. առ որս ել և եկն էակամն ած մարմնով՝ աղաչել զհրեայն հաւատացեալ ՚ի հայր՝ կոչել ՚ի հաւատս հեթանոսին ապաշխարողք, և ուրախ լինել ՚ի դարձի եղբօրն իւրոյ անառակի, և ՚ի միասին վայելել ՚ի զենմանէ որդւոյն քո, և ժառանգել զանանց բարութեանցն զվայելչութիւնս ընդ հօր և ընդ որդւոյ և ընդ սրբոյ հոգւոյն. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից։



## Գ

# ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ՊԱՀՈՑ ՊՆԴՈՒԹԵԱՆ

Ազգոյ և օգտակար և կարևոր են պահոց պնդութիւնք և յորկորստութեանց ժուժկալութիւնք. և մանաւանդ որ ընտրողական գիտութեամբն մերձենան առ նա, և ճշմարտիւ ճանաչեն թէ որպէս շահաւոր է պահոցն պնդութիւն։ Իսկ որք ոչ զգուշանայցեն այնմ, աստէն իսկ յերևելեացս պարտ է իմանալ զպարկեշտութեանն մաքրութիւն, և զխստասիար լցումն զորովայնին։ Այլ գիտեն՝ թէ որպէս տեղիք երաշտացեալք բանջարս ազգի ազգի ոչ բուսուցանեն, նոյնպէս և որովայնք ցամաքեալք խորհուրդս պղծութեան ոչ ծնանին։ Այլ որպէս երկիր աղբուտ բանջարս խառնամանս բուսուցանեն և աճեցուցանեն, նոյնպէս և որովայնք աղբով կերակրոցն փափկացեալք՝ խորհուրդս աղտեղիս բերեն 'ի վեր հանապազ. զի զորդունս գէջ երկիր պարարէ, և զախտս պղծութեան գիջացեալ որովայն։ Քանզի որ համահամօք[1] փափկանան, նա և զխորհուրդ ազգի ազգի իմանան. և որ սուղ ինչ կերակրովք շատանայ, նա զտագնապ քաղցին ածէ զմտաւ. զի որովայնք թանձրացեալք խորհուրդս սուրբս ոչ ծնանին, այլ պահել պատեն ընդ պատրուակաւ զգայութիւնս մարմնոյն։ Այլ որք որովայնին ծառայեն, անհնար է լինել հաւատարիմ ծառայ տ̃յ։ Զի որ պահօք նրբին և սրբին, ոչ միայն զպղծութիւն անօրէնութեանցն սրբեն, այլ և զսուրբն ոգ̃ յինքեանս բնակեցուցանեն։

Այլ արդ այսպէս մեծ է պահոցն պնդութիւն և պարկեշտութեան առաքինութիւն, որ պարաւանդեալ դադարեցուցանէ զամենայն անդամս մարմնոյն յանդէպ ցանկութեանց և յաղտեղի խորհրդոց, և ստէպ ստէպ

1 Յայլում օրինակի համանդամօք։

հալածէ 'ի մտացն խորհրդոց զյարձակումն դիւաց՝ որք կամին պղտորել և պղծել զմիտս մաքրեցելոցն ։ Օ՜ք պահոցն օգտութիւն իբրեւ ջրոջ երկաթեօք[1] անդեալ պահէ զամենայն վարուցն առաքինութիւնս, և զհաւատոցն հաստատութիւնս․ քանզի աշտարակ հզօր է ընդդէմ թշնամոյն, և պարիսպ ամրութեան յամենայն նետից սատանայի ։ Այլ քանզի կարի կարեւոր է պահոցն առաքինութիւն բնութեանս մերոյ, և բազում թերութիւնք 'ի խոնարհութենէ պահոցն յարդարին, անդէն իսկ ընդ ստեղծանել մարդոյն՝ պահոցն օգտութեամբ պարսպեաց զբնութիւնս մեր, և եդ առաջին մարդոյն առաջին պատուիրան զպահոցն օգտութիւն՝ չճաշակել 'ի ծառոյն ։ Օ՜ք թէ էր պահեալ զպահոցն պատուիրանն, անախտ և անմահ և անմեղ կեանս էր ժառանգեալ, և յերկինս զերկնից բարութիւնսն․ զի բազումք որք պահեցին զպահոցն օգտութիւնս, 'ի բազում վըշտաց ապրեցան ։

Սովին պահոցն օգտութեամբ և մեծն Դանիէլ 'ի ժանեաց առիւծուցն ապրեցաւ, զի և գազանական բընութիւնն պատկառէր մերձենալ 'ի սուրբ մարմինն պահողին․ և քանզի արգել զինքն չմերձենալ 'ի սեղան թագաւորին որ 'ի պիղծ զոհիցն էր աղտեղեալ, արգելան և գազանքն չմերձենալ 'ի սուրբ մարմինն պահողին ։ Սովին պահոցն օգտութեամբ և երեք մանկունքն ապրեցան 'ի բորբոքեալ բոցոյն, և շիջուցին զմոլութիւն կերակրոցն ցանկութեանց, և սակաւ ինչ սպասք շատացան․ շիջուցին զբարձրացեալ ահեղ հուր հնոցին․ զի անդ 'ի ներքս ցօղ զովացուցիչ զպահողսն մխիթարէր, և արտաքոյ բոցն բորբոքեալ զզեղխեցելոքն սատականայր, և՛ քառասուն և ինն կանգուն տարածեալ զամենեսեան սատակէր ։ Սովին պահոց օգտութեամբ և բազմամարդ քաղաքն Նինուէացւոց ապրեցան, զի դարձան յամենայն անօրէնութենէ և 'ի գնացից չարեաց․ խորգով և մոխրով դարձուցին զխստացեալ բարկութիւնն այ․ և զի ոչ խնայեցին նեղել զանձինս իւրեանց պահօք և պաղատանօք, ողբալ և լալ հեծեծանօք, խընայեաց ած յոգիս և 'ի մարմինս նոցա ։ Սովին պահոց

1 Յօր․ Էջմիածն․ Եղաք բան այլոց ։

պնդութեանն և Մովսէս ընկալաւ զօրէնսն տնօրէնք, զի բազմամերժեայ պահոց մաքրութեանն արժանացաւ 'ի մերձաւորն մերձենալ, և բերան 'ի բերան խօսէր ընդ նմա իբրև ընդ բարեկամի։ Սովին պահոց պնդութեանն արժեցաւ Եղիա Թեսբացի, և բանիւ բերանոյ իւրոյ զերկինս բանայր և փակէր, հուր 'ի յերկնից իջուցանէր։

Եւ զինչ եւս ասացից զպահոցն զպնդութիւն, որ և անբանականն եւս մարմնոցն օգտակար եղեն պահոցն պնդութիւնք՝ սանձեցին և անարատին վասն մերոյ օրինակի. որով և հողոյն տասնամնիւք առաքինացան, և զվայրս անմարմնոցն հրեշտակաց 'ի մարմնոյ մարդկան երևեցուցին. մեռուցին յերկրի զերկրաւոր զցանկութիւնս, և զօդս 'ի յերկինս կենդանացուցին. մերժեցան 'ի յանցաւոր հեշտութեանցն, զի ընկալցին զանանց բարութիւնն. հեռացեալք 'ի տանց և 'ի ստացուածոց, շաշարեցան բազում վտանգաւք, և նեղեալ անձնեանն մեռուցին զանձինս քաղցիւ և ծարաւով և գձուձ հանդերձիւ ։ Ոմանք 'ի նոցանէ խոտաբուտ ճարակօքն եւեթ շրջեցան, և ոմանք ճաշակօք մրգոց միայն վարեցան ։ Ոմանք զծայրս ծառոցն և զարմատս խոտոց միայն ուտէին. ոմանք սակաւ ինչ ընդովք ժուժկալէին. ոմանք երեք նաւկի հացիւ ժամէ 'ի ժամ. ոմանք զչորրորդ մասն նկանակի, և այլք զվեցերորդն. ոմանք զթեփ ցորենոյ արարեալ կերակուր. ոմանք խոզապատ[1] եղջերաւն միայն զտապձոյ քաղցին զագարեցուցանէին ։ Ոմանք զհազարորդութիւնն հոգևոր կերակրոյն աւուրն բաւական համարէին 'ի պէտս մարմնոյն. բայց այլ փափկութիւն ինչ կերակրոց անձնեային մեռեալ էր 'ի նոցանէ. Օր ոմանք ժամէ 'ի ժամ ճաշակէին. ոմանք յետ երկուց աւուրց. ոմանք յետ երից. ոմանք յետ եւթն աւուր՝ և որ եւս աւելի՝ յիշէին զպէտս կերակրոյն, և զայն կշռով ճաշակէին, և ջուր չափով ըմպէին, և անդադար հեծութեամբ յաղօթս և 'ի պաշտօնն պարապէին, և զգիշերն ամենայն յարտասուս և յողբս անցուցանէին, և ազերսալի մաղթանօք և հառաչանօք զԱծ հաշտեցուցանէին. Ոմանք զգարիւք անկեալ ննջէին. ոմանք ոտնմնաւոր տքնութեամբ զգիշերն անցուցանէին.

1 Յօրին. խոփոճուփ. եղջեր ըստ այլում։

ոմանք սակաւ ինչ նստելով . ոմանք մինչև ցառաւօտն զձեռս 'ի վեր ամբարձեալ ունէին . ոմանց զպարանոցն խոնարհեցուցեալ մինչև 'ի լուսանալն ժուժկալէին . ոմանք աղօթս հարիւրաւորս նկարէին : Ոմանք անխօսք լինէին , միայն խօսէին զսաղմոսս . ոմանք առանց հացմանց ուրուք ոչ բարբառէին . ոմանք ընտրութեամբ յօգուտ ընկերին միայն խօսէին , և մշտաջան վաստակօք և պաշտամոնօք զօրն անցուցանէին , և վասն հոգևոր ինչ խրատու 'ի տար աշխարհս անցանէին , և զթշնամեան իւրև զսարեկամս սիրէին , և խոնարհութեամբ զընկերն լաւ քան զանձինս համարէին , և վասն հնազանդութեան 'ի հուր եւս մտանէին , և 'ի գազանս դիմէին , և զանձինս 'ի ծառայութիւն ընկերին մատուցանէին ; և յաղագս վաստակոց զանկն և զոտնանկն և զհիւանդն կերակրէին : Չափօք զմարմինս իւրեանց վարէին , և սանձս խորհրդոց արկանէին . և այնպէս զանազան և բազում նեղութեամբ զպնդութիւն պահոցն յօրինէին . Զի այս ամենայն է դուռն նեղ և անձուկ ճանապարհ՝ որ տանի 'ի կեանսն յաւիտենից . որով և բազում նշանս և սքանչելիս առնէին , զդևս հանէին , ըզհիւանդս բժշկէին , զմեռեալս յարուցանէին , 'ի վերայ ջուրց գնային , և զընթացս արեգականն դադարեցուցանէին ուղիղ պահոցն մաքրութեամբ . և քան զայս և աւելեւս զօրութիւն գործէին պահոցն պնդութիւնք : Զի սուրբքն առաջինք յորժամ կամէին մերձենալ առ ա̃ծ , յառաջ պահօքն մաքրէին , և ապա առ մաքուրն մերձենային և ա̃ծատեսք լինէին . իսկ որք հեռացան 'ի պահոցն , հեռացան 'ի շնորհացն ա̃յ , և բազում չարեօք չարչարեցան : Նա Ադամ հեռացաւ 'ի պահոցն պընդութենէ , և ել 'ի դրախտէն յերկիր փշաբեր : Ծընունդք Նոյեան ազգին հեռացան 'ի պահոցն պնդութենէ , և համաջրունչ ջրհեղեղաւն սատակեցան և հեղձան : Ժողովուրդն եբրայեցւոց հեռացան 'ի պահոցն պնդութենէ , և ընտիրքն սատակեցան : Բնակիչքն սոդոմայեցւոյն հեռացան 'ի պահոցն , և հրացան անձրևք կայծականց տեղեաց 'ի նոսա : Իսկ ամենայն որք արհամարհեցին զպահս , արհամարհեցան յա̃յ , և յողորմութենէ նորա հեռացան :

Բայց պահողքն պարտին լինել ընտրողական գիտու-

թեամբ. քանզի կորուսանէ սատանայ զպահողսն և զպահս պահողին՝ եթէ զանպարկեշտագոյնսն բամբասիցէ, և կամ զինքն դնէր 'ի վերոյ այլոցն ցուցանիցէ, և կամ պիղծ զկերակուրսն համարեսցի. և կամ եթէ կեղծաւորութեամբ պահիցէ, որպէս եթէ ինքն յառաջ այլոցն ծածկեսցէ զպահոցն պնդութիւնս՝ զի մի սնապարծ և կեղծաւոր երևեսցի, բայց կամի թէ յայլոցն հռչակէր ժուժկալութիւն նորա. և եթէ ոչ ոք իմասցի, ապա և ինքն կամի կարծրացուցանել ընդ պատրուակաւ զպահոցն պնդութիւն, զի իմասցին և զարմասցին ընդ համբերութի՟ նորա : Զի այսպիսի պահքն ոչ սրբեն և արդարացուցանեն, այլ պղծեն և կորուսանեն : Բայց եթէ կերակրովք իսկ պարկեշտանայցէ, և այլովք անդամօքն ոչ պահիցէ, 'ի զուր և ընդվայր ջանայ : Այս է զոր ասեմ. եթէ զլեզուն ոչ պարկեշտացուցանիցէ, և ականն և ունկանն և խորհրդոց և մտաց ոչ զգուշանայցէ, և ոխութիւն ընդ ընկերին պահիցէ, և ատելութիւն ընդ եղբօրն ունիցի, և կամ սէր կեղծաւորութեամբ ումեք ցուցանիցէ, և կամ խոնարհութեամբ ընկերին ոչ ծառայիցէ, և պատուի և իշխանութեան ցանկանայցէ, և զանձն 'ի պահս կարծիցէ, յոյժ ափշութեան իցէ այնպիսին 'ի սատանայական խորհրդոց : Զի այն ոչ են պահք խոնարհութեան, այլ խաբէութեան և կեղծաւորութեան, զրաջան և անվաստակ՝ որ 'ի հուր այրի, և 'ի ջուր աղայ հանապազ. զոր ցեցն ապականեաց, և գողք հատին և տարան, և ոչ ինչ օգտեցաւ յայնպիսի պահոց մրցմանց, այլ յոյժ պատժի և պատուհասի : Քանզի աստ կեղծաւորական պահօքն պատժի, և անդ յարդար դատաստանէն դատապարտեալ 'ի հուր հնոցացն չարչարի, և քան զորկորեայսն և զարբեցողսն առաւել ևս պարտաւորի. զի զամենագէտն Աստուած անգէտ համարեցաւ չարաչար կրօնիցն կեղծաւորութեամբ :

Այլ և են ոմանք որ յորժամ կամին մտանել 'ի պահս, փութան 'ի լուանալ և յօծանել, և խծծղեն զպորտ և զորովայնս, և բազում որկորստութեամբ և արբեցութեամբք շուայտանան, ապա մտանեն 'ի պահոցն պնդութիւնս : Նա արդ զինչ կոչեսցուք զայնպիսիսն, պահողս եթէ արբեցողս, պարկեշտս եթէ որկորեայս,

ձգնաւորս եթէ զեղխեցեալս․ զի անհնար է պղծութեամբ սրբութիւն գտանել, և մեղօք յարդարութիւն ելանել․ և ոչ ոք պոռնկութեամբ կուսութիւն ստանայ, և ոչ զեղխութեամբ և արբեցութեամբ զսրբութիւն պահոց ընդունել։ Զի անհնար է այսմ լինել՝ եթէ նախ պոռնկիմ, ապա կուսանամ․ և կամ զեղխիմ և շուայտիմ արբեցութեամբ, և ապա մտանեմ 'ի սրբութիւնս պահոցն․ զի անմարթ է պոռնկին կուսանալ, զեղխելոյն արբեցութեամբ՝ պահող և ձգնող։ Զի կուսանն կուսութեամբ ստանայ զկուսութեանն պսակ, և ոչ պոռնկութեամբ․ և պահողն ժուժկալութեամբ ընդունի զվարձս պահոցն, և ոչ արբեցութեամբ, զեղխութեամբ և որկորստութեամբ շուայտանօք։

Այլ են ոմանք որ զպահս քառասներորդաց ապաղաս առնեն, զկէս ինչ 'ի շաբաթուցն կարևոր անուանեն, և պնդին և ձգնին սրբութեամբ, և զայլսն ապաղաս անուանեն, և թուլացուցանեն զպնդութիւն պահոցն, և անակնունելի իմն ճաշակեն 'ի փափուկ կերակրոց, և որկորստութեամբ զսուրբ և զերևելի պահս քառասներորդացն լուծանեն։ Զի զայս կարևոր պահս քառասներորդաց և որդին ա̃յ վասն մեր պահեաց 'ի մեր օրինակի․ և անդ ոչ անուանէր ապաղաս։ Զնոյն քառասունս և Մովսէս 'ի լերինն պահեաց․ և անդ ոչ անուանէր ապաղաս։ Զնոյն քառասունս յանապատին պահեաց 'ի լերինն Եղիաս․ և անդ ոչ անուանեաց ապաղաս։ Զնոյն քառասունս և մեք մերով տկարութեամբս օր ըստ օրէ պահօք կատարեմք․ և ոչ վայել է մեզ քառասնօրեայ պահոցն անուանել ապաղաս, և լուծանել զսուրբ պահոցն պնդութիւնն․ զի 'ի սկսանիլ պահոցն մինչև ցկատարումն նորուն՝ պահք են 'ի փափկութենէ, եթէ կամիցիս ձգնել և պահել․ ապա եթէ որկորստութեամբ լուծանել կամիցիս, ոչ եթէ զթեթև ապաղաս լուծեր, այլ պահս կարևորս։ Զի ապաղաս 'ի ծուլից և յանկատարից անուանի, և ոչ 'ի պարկեշտից և 'ի պահողաց։

Այլ պահք ոչ եթէ 'ի կերակրոցն միայն անուանի, այլ և կարձել յամենայն մեղաց․ զի պահք են և լռութիւնք բերանոյ, և ոչ առանց հարկի և հարցանելոյ ուրուք խօսել։ Պահք են և անընչութիւն և աղքատու֊

թիւնք, և ոչ զաւելորդացն հոգալ. այլ զպէտս աւուրցն որոնել, և զնոյնն խնդրել յԱյ։ Պահք են, և 'ի տեղւոջն նստել ցածութեամբ, և ոչ վայրապար ուրուք շրջել ցոփութեամբ 'ի զբօսանս և 'ի զօշաքաղութիւնս։ Պահք են և գրգուաղելն և գձձելն առանց լուանալոյ և օծանելոյ. պահք են և խարազն ինչ հանդերձիւք զպէտս մերկութեան և ցրտոյն միայն վճարել։ Պահք են և ցածուցանել զաչս յարատութենէ, և զլսելիսն յանդէպ լսելոյ, և զսիրտն 'ի պիղծ խորհրդոց։ Պահք են չհանգանակելն պատուի և իշխանութե, չպարծանալն, չաղաղակելն, չնախանձելն, չխնդրել վրէժ անձինն, և ոչ ջանալ զանձն առ ընկերին արդարացուցանել։ Պահք են չագահելն, և չմարդահաճոյանալն, և ոչ հանդերձիւք ինչ ծնապարծել։ Պահք են խոնարհութիւն և հնազանդութիւն, և սուրբ սրտիւ զամենայն ոք սիրել։ Պահք են և յորժամ զպէտս քնոյ բնութե ևեթ վճարիցէ, և քուն ցանկութեան ոչ ունիցի. այլ զառաջինն միայն, և ապա յարուցեալ գործիցէ և կամ աղօթիցէ։

Նա արդ այս ամենայն են պահք ճշմարիտք, և առաւել քան զկերակրոցն կարճումնն. և զայս և որ սոյին նման են՝ պարտ է կարծել 'ի ժամ պահոցն, և ապա լինի ընդունելի և կերակրոցն կարճումնն։ Այլ և կերակրոցն կարճումնն ոչ միապէս, այլ ըստ իւրաքանչիւր կարողութեան. ոմանք միօրէ. ոմանք երկպահք. ոմանք երեքօրեայ, և ոմանք եօթներրորդ պարկեշտութեամբ կատարեն ըստ իւրաքանչիւր անձանց զօրութե։ Ոմանք լոկով բանջարով, ոմանք ընդով միայն շատացան. ոմանք սակաւ ինչ հացիւ, ոմանք յոլովագունօք, և զանպաճոյճ թանիկն ևս յաւելուն. և ոմանք գինեհասք միայն, և ոմանք թանահասք, այլ և ոմանք հացահասք լինին, և զփափուկ ինչ կերակուրս և զհամահամ բացէ 'ի բաց հալածեն և ուրանան. բայց միով ինչ կերակրովն և ոգեպահովն ևեթ շատանան, որ միայն զկենդանութիւնն պահէ, և ոչ 'ի մարմինն և 'ի յարիւնն յաւելու որ ըղցանկութիւն ախտիցն յուզէն. և զայն սակաւ ուտել, սակաւ ըմպել, սակաւ 'ի քուն լինել, և աղօթք անդադար։ Այլ պարտ է մանաւանդ յաւուրս պահոցն զոր յոլովայնեղ արգելուս, աղքատաց ընձեռել զայն, զի

*դու քաղցիցես, և քաղցեալն յագեսցի, և մեղք քո քաւեսցի: Այս են պահք սուրբք և ա̃ծականք, և սոքօք լինին ընդունելի ամենայն վշտամբերութեանցն ճգնութիւնք, որ բժշկեն զվիրաւորեալս մեղօք, փրկեն զգերեալսն 'ի սատանայէ, կանգնեն զկործանեալսն անօրէնութեամբք, յարուցանեն զհիւանդացեալսն ամբարշտութ̃ք, սրբեն զաղտեղեալսն պղծութեամբք, լուսաւորեն զխաւարեալսն մոլորութեամբ, և մաքրեն և արդարացուցանեն զպահողսն յամենայն յանցանաց, և կացուցանեն մեծապայծառ լուսով առաջի ահաւորի և լուսաւոր բեմին ա̃յ. և ընդ նմին ժառանգեն զանանց բարութեանցն զվայելչութիւնսն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս:*



Դ.

## ՎԱՍՆ ԸՆԴՈՒՆԵԼԻ ԵՒ ԱՆԸՆԴՈՒՆԵԼԻ ԱՂՕԹԻՑ

Ամփոփեալ զմիտս մեր իմասցուք զբանս Ճառիս, և երևելեաւս զաներևոյթն ծանիցուք, և գիտասցուք թէ որպիսի դողումն և ահեղ արհաւիրք են յանցաւորացն յորժամ առաջի դատաւորին կայցեն ամօթով մեղացն. զիարդ վատնին և այլագունին դէմք նոցա. զիարդ սոսկան և սարսափեն. և զի զդողիւ հարկանին երկիւղիւ յահեղ դիմաց դատաւորին, և գլխակորեալք և ակն 'ի խոնարհ լեզուականք կան առաջի: Նա եթէ աղաչել և մաղթել ինչ յանդգնիցին, երկիւղիւ սրտիւ, և անհամարձակ լեզուաւ հիւանդաձայնս բարբառին. և բազում աղերսանօք ցաւագին պաղատանս մատուցանեն. արտասուեն, աղաչեն, մաղթեն, զի 'ի գութ և յողորմ զդատաւորն ածիցեն՝ ապրել յանցանաց պատուհասից. ոչ այլ ուրեք զբօսանին միտք նոցա, և ոչ այլուր աչք նոցա, և այլուր լսելիք: Նա յորժամ դատաւորն առ նոսա բարբառի, ոչ իշխեն զերեսս դարձուցանել, կամ խօսել ընդ ումեք 'ի ծառայակցացն, այլ միայն 'ի դատաւորն նային բազում պատկառանօք աղաչել և հայցել զյանցաւոր տանջանացն զթողութիւն: Իսկ որչափ ևս առաւել կարի կարևոր է մեզ բազում պատկառանօք կալ առաջի ահաւորի մեծի դատաւորին, ահեղ ահիւ և սոսկալի դողութեամբ մտանել և կալ յանդիման երեսացն ա̃յ, և ցաւագին ողբովք և յորդահոս արտասուօք ժտել և խնդրել զթողութիւն: Ոչ այլուր զմիտս, և այլուր զխորհուրդսն պարտիմք առաքել. այլուր զլսելիս, և այլուր զտեսանելիս յածեցուցանել, յորժամ վասն յանցանացն մեղաց կամիցի ոք աղաչել և մաղթել յա̃յ. զի հեծեծանօք և հառաչանօք զտէրն հաշտեցուսցուք, և 'ի գութ պաղատանաց խոնարհեսցուք. որով զմեղս մեր քաւեսցէ, և զանօրէնութիւնս մեր սր_

բեսցէ, և փրկեսցէ յահեղ աղէտիցն տանջանաց և յաւիտենական ամօթոյն 'ի ձեռն աղօթիցն մաղթանաց և գթագին սրտին ջերմութեան: Վասնզի բազումք բազում բարութիւնս 'ի ձեռն աղօթիցն ընկալան և եղեն հաճոյք այ, որով գտին մեղաց թողութիւն և ոգւոց փրկութիւն. և մանաւանդ որք հանդերձ արտասուօք և գթով տնանկաց աղօթեցին, ոչ եթէ միայն զմեղաց թողութիւն գտանեն, այլ և զխնդիրս մարմնոյ ընդունին, և զերկնից բարութիւնսն: Զի ձեռք են աղօթք աղօթականին, և բուռն հարեալ ունի զոտիցն այ, և վաղվաղակի խոնարհեցուցանեն յաղաչանս մաղթողին. քանզի յոյժ կամի և ախորժէ ած զժտել աղաչողին. «Խնդրեցէք և տացի ձեզ, հայցեցէք և գտջիք»:

Այլ արդ պարտ է ամենայն ծանրացելոց մեղօք և նեղելոցն վշտօք և վտանգելոցն 'ի թշնամեաց և աշխատելոցն ցաւօք միշտ աղաչել և ժտել և խնդրել հանապազ անդադար 'ի ձեռն աղօթից և պաղատանաց. զի որք միամիտ մտօք և աննենգ հաւատովք աղօթեն առ ած, և խնդրեն զբարին, ընդունին զխնդիրս ամենայն, որպէս ընկալան հարքն մեր առաջինք: Իսկ եթէ ասիցէ ոք՝ եթէ խնդրեցի և ոչ առի, աղօթեցի և ոչ ընկալայ, չև ես ժտութեամբ խնդրեցեր, որպէս կինն այրի յանիրաւ դատաւորէն, և իբրև զբարեկամն որ 'ի մէջ գիշերին հայցէր զնկանակացն խնդիրն. զոր ոչ վասն բարեկամութեանն, այլ վասն ժտութեանն ընկալաւ. նոյնպէս և Աննա ցաւագին անձամբ արտասուօքն և աղօթիցն ժտութեամբն ընկալաւ զՍամուէլ. սոյնպէս և ժողովուրդն 'ի հովլիտս տրտմութեան լային առ ած, և վասն ջերմագութ աղօթիցն և պաղատանացն յարոյց նոցա զԳեդէոն, և փրկեաց զԻսրայէլ. և վասն արտասուագին աղօթիցն Եզեկիայի այլ ևս հնգետասան ամ յաւելաւ 'ի կեանսն: Այլ դու եթէ այսպիսի արտասուօք և բոլորով սրտիւ աղօթես առ ած և ոչ երկմտիցես, ընդունի զխնդրուածս քո:

Չէ ինչ պիտոյ յօդումն բազում բանից աղօթականին. մաքսաւորն մի բարբառ արձակեաց, և ընդունելի եղեն աղօթք նորա, և զբազմաքանքար բեռինս մեղացն թեթևացոյց. և Մովսէս անշշունչ բերանով իսկ աղաղակէր, և զծովն յատակաբար բաժանէր: Այլ դու

եթէ բոլորով սրտիւ մաղթես՝ զծով մեղաց միայն ցամաքեցուցանես, և զանլիր բարկութեանն դադարեցուցանես ։ Զի չառնուլն յա՜յ 'ի չժտութենէ է, և 'ի չաղաչելոյ բոլորով սրտիւ, և կամ եթէ վնասակարագոյն ինչ խնդրիցէք ։ իսկ եթէ անդադար աղօթիւք զօգտակարն հոգւոց խնդրիցէք, անհնար է չառնուլ յա՜յ ։ Ահա աղօթք Եղիայի զերկինս փակեցին և բացին ։ աղօթքն Դաւթի զսուր հրեշտակին դադարեցուցին ։ աղօթքն Յովնանու զնա 'ի փորոյ կիտին հանին կենդանի ։ աղօթք քանանացւոյն զդեւն 'ի դստերէն հալածեցին ։ աղօթք զպոռնիկս սրբեցին, զհիւանդս բժշկեցին, զբորոտս մաքրեցին, զկոյրս լուսաւորեցին, զմեղաւորս արդարացուցին ։

Եւ արդ այս ամենայն օրինակք ընդունելի աղօթից առաջի կան ։ որում եթէ կամիս՝ կարող ես նմանել, և հանել զքեզ 'ի բանտէն մեղաց, և 'ի սատանայական կապանացն արձակել ։ Միայն արտասուալից պաղատանօք աղօթեա առ ա՜ծ, և յախտից ամբարշտութեանն թեթեւանաս, զցաւս անօրէնութեանն առողջացուցանես, և զհիւանդութիւն յանցանացն բժշկես ։ Միայն բոլորով սրտիւ աղօթեա առ ա՜ծ, և յորոգայթից սատանայի ապրես, 'ի չարաժամու վշտացէն փրկիս, և 'ի թիւնաւոր թշնամոյն ապրիս ողջանդամ ։ Միայն անդադար աղօթիւք ժտեա առ ա՜ծ, և զխաւար մոլորութեանն լուսաւորէ ։ զաղտեղութիւն պղծութեանն մեղաց և զտիղմ ցանկութեանն ցամաքեցուցանէ ։ Զի յորժամ աններկ հաւատով յամենայն սրտէ աղօթես առ ա՜ծ, ընդունիս մեղաց թողութիւն և յանցանաց քաւութիւն ։ ընդունիս զերկնից զարքայութիւնն և զանբաւ բարութիւնսն ։ ընդունիս մարմնոյ առողջութիւն և հոգւոյ փրկութիւն ։ ընդունիս աւուրս բարիս և կեանս խաղաղականս յամենայն զրպարտողաց ։ Այլ և զանլիր բարկութեան բռնաւորաց աղօթքն դադարեցուցանեն ։ զցասումն սրտմտութեանն ա՜յ դարձուցանեն ։ աղօթք զաղքատս մեծացուցանեն, և զտկարս զօրացուցանեն ։ աղօթք զհիւանդացեալսն բժշկեն, և զախտս մոլեկանս հալածեն ։ աղօթք զամուլսն ծննդական առնեն, զանորդիսն բազմորդի ։ 'ի ծփանաց ծովու զերծուցանեն, 'ի յորձանաց գետոց ապրեցուցանեն,

զքաղցրաւոր կերակուրն , զմեղկս զգեցուցանեն , զմահս տարաժամս արգելուն , զամենայն խնդրուածս հաւատով ժառանգոյն լուցանեն :

Այս է զօրութիւն ճշմարիտ աղօթից որ կամին մերձենալ առ նա . այս է պատարագ բանաւոր անարիւն . զի իւրաքանչիւր ուրուք աղօթքն են պատարագ նմ̃յ . և եթէ ոչ հաշտեսցիս սիրով ընդ ընկերին , աղօթքն քո ոչ են ընդունելի պատարագ , զի առ ա̃ծ ոչ ելանէ . զի որ քէն ընդ ընկերին ունիցի , անհնար է աղօթից նորա ելանել առ ա̃ծ . իսկ եթէ սիրով սրտիւ աղօթեսցես առ նա , մինչ չև քո աղաղակեալ իցէ , ասասցէ՝ թէ ահա հասեալ եմ : Ոի աղօթք անարատք արտասուօք և ողորմութեամբ ընդ աղօթելն աղօթականին բանան դրունք երկնից և ՚ի ներքս ն̃յ ելանեն . և եթէ միայն անթերաթողն կարդայցեն առ նա :

Այլ զայս ամենայն գիտելով սատանայի՝ թէ մեծամեծ զօրութիւնք և անչափ բարութիւնք յաղօթիցն գործին , երթեալ մերձենայ առ այն՝ որ աղօթելն կամիցի . և նախ առաջի ՚ի մահճին պատերազմիցի ընդ նմա , զանկողինսն հեշտացուցանելով , զքունն քաղցրացուցանելով , զմարմինն ծանրացուցանելով . այսր այնր յեղյեղու , և քշքշացուցանէ : Այլ ուր ուրեմն յարուցեալ զնա յեկեղեցին բեկբեկելով , և մտեալ ՚ի ներքս՝ լինի յանդիմանն ն̃յ . և անդ ևս զմիտսն պատրուակէ տանելոյ առ ՚ի չլսելոյ զպատգամութիւն յանցանաց իւրոց . և ոչ խնայեայ եթէ ն̃յ կայ առաջի . ոչ զօրհնութիւնն լսէ , և ոչ զխրատաբանութիւնն իմանայ , և ոչ ՚ի սիրտ նորա մտանեն ընթերցուածոցն վարդապետութիւնք : Ոչ հեծէ և ոչ հառաչէ զմեղացն անօրէնութիւնն . ոչ լայ և ոչ ողբայ զհոգւոյն վիրաւորութիւնն . ոչ աղաչէ և ոչ մաղթէ յա̃յ , և ոչ արտասուալից պաղատանօք զտէրն հաշտեցուցանէ . ոչ խոստովանեալ զչարեացն զբազմութիւնս , և յայտնելով զծածկեալ մեղս անօրէնութեան , զի ապրեսցի յահեղ տանջանացն , և յանշէջ խաւարէն : Այլ փոխանակ լալոյ և պաղատանաց բազում անհրկիւղութեամբ և արհամարհանօք կայ առաջի ն̃յ . և ոչ պատկառանօք ահիւ և դողութեամբ իբրև զդատապարտեալս առաջի դատաւորացն , և կամ իբրև զծառայս մեղա-

ցեալն՝ որք առ ոտս տերանց աղաչիցեն, և բազում երկիւղիւ և պաղատանօք աղաչիցեն և պաղատիցին: Եւ ոչ հեծեծանօք և հառաչանօք և ողորմագին ողբովք արտասուեմք իբրև զմահապարտն՝ զոր ձգեալ տանիցին 'ի տեղի չարչարանաց. և ոչ խորգով և մոխրով և մեծաւ սգով անկանիցիմք առաջի այ, զի փրկեսցէ զմեզ 'ի բորբոքեալ գեհեննոյն և 'ի սաստիկ տանջանացն, յորդանցն չարաթիւնից և յանշէջ խաւարէն:

Եւ արդ ոչ ահիւ և խանդաղատագին մաղթանօք կամք առաջի այ՝ աղաչել և մաղթել զվիրացն բժշկութիւն. այլ 'ի ժամ աղօթիցն և պաղատանացն և թողութիւն մեղացն խնդրելով՝ լուանամք և օծանիմք և զհանդերձսն պաճուճեմք, որպէս թէ 'ի բազմոցս կազմիցիմք, կամ 'ի թատերս խաղուց. և մտեալ յեկեղեցին սնափառ պերճանօք և մոլեկան հպարտանօք կանայք բազից կերպարանօք կան առաջի այ, և արք բոզահոմանեաց, և ցոփոգի մեղկութեամբն իգանան պերճ ցանկութեամբն, և յափրացեալ վաւաշոտին նման այծից քաղաց և ձիոց մատակախագից. և անդէն իսկ յեկեղեցւոջն և յանդիման սրբութեանցն գործեն զպղծութիւնս և զպոռնկութիւնս և զշնութիւնս կատարեն. թէպէտ և մարմնով ոչ գործեն, սակայն մտօք ըղնոյնս կատարեն ակնարկելովն և յարատ հայեցուածովքն և կնձաձայն բարբառովն, որպէս և տէրն իսկ ասէ՝ թէ որ ցանկութեամբ նայի, շնացող է կատարեալ: Արք արժանի են փայլատականց և կայծականց և շանթից հրոյ 'ի վերուստ իջանելոյ, և այրելոյ և սատակելոյ զնոսա անդէն. և յետ այնորիկ յաւիտենական հրոյն, ահեղ խաւարի և աններելի տանջանացն. փոխանակ զի 'ի ժամ աղօթիցն ցանկութիւն պղծութեանցն 'ի սիրտ արկանիցէ:

Ուր եկիր, ով թշուառական, հեծել և պաղատել առ ած, արտասուս արկանել և ողբալ մաղթանօք, հայցել հառաչել և խնդրել թողութիւն, և արդ այդ են կերպարանք խնդրուածոց, պաճուճելդ և օծանելդ և լուանալդ 'ի տեսս տեսողաց. այդ են կերպարանք հայցելոյ և թողութիւն մեղաց խնդրելոյ, սլրատանալդ և շքմոգելդ և պերճ ցանկութեամբ ակնարկելդ. այդ են կերպարանք 'ի վերայ չարեաց քոց զտէրն հաշտեցուցա-

նելոյ՝ ախտիւ ցանկութեամբ զննել զգեղդ և զհասակդ բաղահամանեաց : Զքեզ ինքնին սատանայացուցանես , և 'ի սատանայէ ապրել աղաչես . դու կամօք դիւահարիս , և խնդրես փրկիլ 'ի դիւաց : Զիա՞րդ կարես հեծել առաջի ա̃յ այդպիսի կերպարանօք , և կամ որպէս հառաչել այդպիսի խորհրդովք . այլ և իշխեցեր ես առաջի ա̃յ զազրալի միտօք և սատանայական կերպարանօք մտանել և առնել պոռնկոց զեկեղեցի ա̃յ . և ոչ սոսկաս և դողաս 'ի սրբոյն սրբութեանց և յահեղ դիմացն ա̃յ : Ո՞չ գիտես եթէ սրտագէտն քննէ զխորհուրդս քո և գիտէ զամենայն . ո՞չ լուար եթէ մտածութեանց է դատումն , և յորսա աչաց պահանջումն :

Այլ արդ եկ 'ի քեզ , և զկեղծաւորական զխաբէութիւն մտաց և պաճուճանաց ընկեա 'ի քէն . ապա մուտ առաջի ա̃յ և լուաց : Մահապարտքն յորժամ մտանեն առաջի թագաւորաց՝ չառնեն ինչ պաճուճանս , այլ մաղթանս և պաղատանս . վիրաւորք յորժամ 'ի բժշկանացս մտանեն , չեն պէտք այլ և այլ խորհրդոց , բայց միայն զեղ վիրին որոնել , և զցաւսն բժշկել : Նոյնպէս և վիրաւորին մեղօք և ցաւագնելոյն անօրէնութեամբք չեն ինչ պէտք պաճուճանաց և պերճ խորհրդոց յորժամ յեկեղեցին մտանէ , և ոչ օծանելոյ և հերսն հիւսելոյ 'ի ժամ աղօթիցն պաղատելոյ առաջի ա̃յ . այլ զմարմինն նեղել , և զխորհուրդն մաքրել . և զձուձ ձևով , բեկեալ սրտիւ , խոնարհ անձամբ մտանել կալ առաջի ա̃յ , և բազում պաղատանօք ողբալ և լալ դառնապէս . աղաչել և մաղթել անդադար հեծութեամբ . զկուրծս բախել , զձեռս տարածել , զարտասուս հոսեցուցանել , զչարիսն խոստովանել նեղեալ սրտիւ , անհամարձակ լեզուաւ , ամօթալից երեսօք , ողբալի ձայնիւ , և խանդաղատելի բարբառով հաշտեցուցանել զա̃ծ , և առնուլ թողութիւն մեղաց :

Այս են կերպարանք աղօթից և խնդրուածոց՝ յոր տէրն խոնարհի և լսէ . որով զյանցանսն շնորհէ , և զանօրէնութիւնսն քաւէ . որով մաքրիմք և սրբիմք 'ի չար ախտից պղծութեանց և 'ի սատանայական խորհրդոց . որով ընդունիմք զարքայութիւնն և զանմահ կենացն զփափկութիւնս : Իսկ մեր զայս ամենայն յիշելով բազում արհամարհանօք մտանեմք առ ա̃ծ , և կամք ընդ

սատանայի՝ որ չփոթեցաւ խառնակել զմիտս մեր ազգի ազգի մտածութեամբ, և ցրուեալ հանէ զխորհուրդս մեր 'ի հոգս և 'ի զբօսանս աշխարհիս. և գերեալք յօգնութենէ աղօթիցն շահից՝ զրկուիմք 'ի չար խորհուրդս չարին. 'ի ներքս ծուխն խաւարհեցուցեալ յաղօթման, և միտքն արտաքոյ բազում բանդագուշանօք յածեալ շրջին։ Վասնզի յաղօթման խորհիմք զհոգս տանց և զանդաստանացն. յաղօթման համարեմք զարդիւնս անդոցն և զպտուղս այգեացն, եթէ քանի կաղիմ հաց լինիցի ինձ, և կամ քանի մար գինի. և զխաշինսն և զանդեայսն յաղօթման ածեմք զմտաւ՝ եթէ քանի արջառ իցէ, կամ քանի ոչխար. անդէն և զգործն և զվարձս վարձկանացն յիշեմք, թէ վայ որ եղանէ այս 'ի տանէ իմմէ։ Այլ և զդատաստանս ևս զընկերին յիշեմք յաղօթման, և անդէն դատիմք առաջի այ. և մինչ դեռ յաղօթման կայցեմք, տակաւին խորհիմք ևս ամբաստանութիւն զեղբօրէն. և չև յեկեղեցւոյն արձակեալ՝ անդէն սկսանիմք ամբաստանել զոտախէն, և որպէս լեղեաւ զքաղցրութիւն աղօթիցն դառնացուցանեմք։ Այլ այնպէս յափշտակէ զմիտս մեր սատանայ, մինչև զխորհուրդս ևս աղտեղիս յաղօթման յիշեցուցանէ. և զվաշխս փոխոցն և տոկոսեացն յաղօթման համարեմք. յաղօթման յիշեմք զնախանձն և զթշնամանս ընկերին։ Այլ ոչ միայն այսպիսի չար խորհրդովք դատապարտիմք, այլ ընդվայրած լեզուօք և շատխօսութեամբ մտեալ յաղօթման վիրաւորիմք. զի բազմաց ոգւոցն մտանեմք, զորոց զմիտսն գերեմք, և մերժեալ հանեմք յաղօթիցն և 'ի փառաւորութենէն. դարձուցանեմք 'ի խօսս խաւարինս և 'ի խորխորատս կորստեան իջուցանեմք։ Այլ այս ամենայն չիցէ՞ ահեղ բարկութեանցն արժանի և բորբոքեալ բոցոյն գեհենոյ, բազում տանջանաց և աննշոյլ խաւարին. որ այսչափ անօրինեմք առաջի այ, և պատուհասեալք դատապարտութեամբ ելանեմք յաղօթիցն. և ոչ իբրև զաղօթականս պատուիմք, այլ իբրև զհայհոյիչս և զարհամարհօղս պարտաւորիմք և պատժիմք։

Իսկ եթէ յաղօթման և 'ի բարեգործելն մեղանչեմք, որչափ ևս 'ի չար գործելն պարտաւորիմք. որ 'ի ներքս 'ի նաւահանգստի ընկղմիմք 'ի խորս չարեաց, զինչ

գործեսցուք յորժամ պատուէր եղեալ 'ի ծով մեղացն մտանիցեմք, 'ի հրապարակս, 'ի վաճառս, յերգմունս, 'ի հայհոյութիւնս, 'ի զրկանս, 'ի մեծախօսութիւնս, 'ի բամբասանս, 'ի նախանձ, 'ի բարկութիւնս, 'ի զօշաքաղութիւնս, յարբեցութիւնս, յորկորամոլութիւնս, 'ի հպարտութիւնս, 'ի յամենայն ախտից բազմութիւնս. որ առաւել քան զծովածուփ ալէկոծութիւնս հեղձուցեալ ընկղմէ, և խորասուզեալ սաստկէ բազմահոյլ յանցանօք։ Այլ արդ ևս կամ որո՞վ մարթասցուք ապրել յանթիւ և 'ի չարաչար գործոց մերոց և 'ի բազում հնարից սատանայի. որ ոչ միայն դառն չարեօքն չարչարէ և սպանանէ, այլ հնարի և զքաղցրութիւն սուրբ աղօթիցն դարձուցանել 'ի դժնդակ լեղւոյն դառնութի. չկարեմք և ոչ այլ ինչ զերծանել 'ի չար իժէն և 'ի դառն քարբէն, բայց եթէ հանապազ պատրաստիցիմք 'ի մեքենայից սատանայի, և զգուշանայցեմք յաներևոյթ նետից նորա։

Այլ եթէ զօրն վախճանին մերոյ միշտ զմտաւ ածիցեմք երկիւղիւ վտանգին այնորիկ, կարող եմք ապրել յորժամ զոգիսն աններելի տագնապովն 'ի մարմնոյն 'ի բաց պահանջիցիմք, և բռնավարեալ տանիցի խաւարային միգովն մթապատեալ. և ցանկ զսոսկալի մեծի բեմբին զարհաւիրսն յիշեմք, և զահագին օր դատաստանին. եթէ յարաժամ զամօթն զայն հոգայցեմք որ լինելոց է առաջի տիեզերական հրապարակին, զբազմութիւն տանջանացն, զդառնութիւն որդանցն թունաւորաց, զշօշափելի խաւարն աղջամղջին, զժահահոտ տարտարոսաց զխորութիւնսն, զլորբոջումն կայծականց հրոյ գեհենին, զգոչումն բարձրաձայն հնոցացն, զարհաւիրս յորդահոս գետոցն հրեղինաց, զհանապազորդ այրումն և զխորովումն մեղաւորաց, և զանհնարին կրակիծս աղէտիցն և ցաւոյն։

Եթէ զայս ամենայն միշտ զմտաւ ածիցես, կարող ես զերծանել յորոգայթից սատանայի. կարող ես երկիւղիւ կալ յանդիման երեսացն նը. կարող ես սուրբ աղօթս մատուցանել. կարող ես սգալ, լալ և ողբալ դառնապէս. կարող ես և զդէմս դատաւորին քաղցրացուցանել, յողորմ և 'ի գութ խոնարհեցուցանել, և ընդունել թողութիւն մեղաց և քաւութիւն յանցա-

նաց, ժառանգութիւն լուսեղէն խորանացն, և զփափագելի դրախտին փափկութիւնն, և զյաւիտենական ուրախութեանցն զհեշտութիւնսն, զանմահ կենացն ցանկութիւնսն, և զանբաւ բարութեանցն վայելչութիւնս ընդ Հօր և ընդ որդւոյ և ընդ սուրբ Հոգւոյն. որում փառք պատիւ և գոհութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն ։



# Ե

## ԹՈՒՂԹ ՅԱՂԱԳՍ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ ՏՆԱՆԿԱՑ

Մի՛ ոք տղայաբար բարուք և անընտրողական ինչ մտօք ժպրհեսցի 'ի մատակարարութիւն բանին այ. այլ միշտ 'ի միտս լսողացն նայել, և բազում զգուշութեամբ սերմանել զբանն վարդապետութեան 'ի խոպանացեալ լսելիս. և մի՛ յսկզբանն միանգամայն զծանրալուր և ըզդժուարակիր վարուցն 'ի վերայ ամայելոցն[1] հաստուցանել: Զի որք կամիցին զտորմուղ յաւանակն հնազանդեցուցանել, եթէ զառաջինն բեռինս ծանունս և դըժուարակիրս կախիցեն, կամ ինքեանք բեկանին, կամ զհակս բեռինն բացէ 'ի բաց ընկենուն. այլ թեթևօք ընտանեցուցանեն, և 'ի կատարեալն հաստուցանեն: Նոյնպէս և հմուտք 'ի մշակաց որք զանդս երկրի գործեն, ոչ վայրապար 'ի խոպանն և յանտառացեալս փըշօք սերմանս պատուականս սերմանիցեն, որ կամ 'ի խուպանէն կորնչի, կամ թռչունք յափշտակեն. այլ նախ զփուշն կտրեն, և զերկիրն կակղեն, և ապա ցանեն ըզսերմանիսն պատուականս և զշահաւէտս: Ըստ նմին օրինակի և որք զբանաւոր անդս գործել կամիցին, պարտ է յառաջ խոստովանութեամբ զփուշ մեղացն խլել, և պահօք և աղօթիւք զխոպանացեալսն և զխոտացեալսն[2] կակղել վասն կուսութեան և անընչութեան և ողորմութեան և մահուչափ չարչարանաց: Զի թէպէտ և մահուչափ ծանրագոյն են ընչաւորացն ողորմութեանն հրամանք, այլ առաւել շահաւոր են և օգտակար քան զամենայն վարձուց առաքինութիւնս. և այնչափ 'ի վեր է քան զամենայն ճգնութիւնս պարկեշտութեանց, որ-

1 Երկու օր. ամէհելոցն: 2 Յերկուս նոր. օրին. զխոտոտացեալսն:

պէս թէ չերևել իսկ ամենայն վարձուց առաքինութեան առաւել լուսաւորութեամբ ողորմութեանցն պտղոց :

Այլ զի՞նչ ասացից զայլ առաքինութեանցն, որ և սրբութիւն կուսութեան 'ի հնումն և 'ի նորումն է պատուեալ. այլ առանց ողորմութեան զտաւ արհամարհեալ, և արտաքոյ առագաստին արգելաւ : Այլ ոչ եթէ չարարին ողորմութիւն, այլ սակաւ և ոչ բաւական. զի 'ի մէջ գիշերին պակասեալ շիջաւ նոցայն : Նոյնպէս և որ ունիցին ինչս բազումս, և սուղ ինչ ողորմութիւն առնիցեն, ոչ կարէ բաւական լինել փրկութեան նոցա. զի ողորմութիւնն ըստ գոյին է ընդունելի : Որք ինչս բազումս ունին, 'ի նոցանէ ողորմութիւն բազում պահանջէ. և որոց ինչքն սակաւք են, ընդունելի են և ողորմութիւնք սակաւք : Որպէս և 'ի նուէր խորանին ոսկւոյ էր տալի, ալիւր էր և մազ. որք ոսկի ունէին և մազ բերէին, անընդունելի էր և պիղծ : Իսկ որ անինչք էին և մազ միայն մատուցանէին, ընդունելի էր և հաճոյ Այ, և օրհնութիւն ընդունէին : Զի ոչ եթէ 'ի չափս ընչիցն, այլ 'ի կամս տալեացն նայի Ած. ընդունի 'ի մեծէն զմեծն իբրև զմեծ. ընդունի և 'ի սակաւէն զսակաւն իբրև զմեծ. զի որ ունիցի տասն դահեկան, և դահեկան մի ողորմութիւն ծախիցէ, և աղքատն տասն լումայ միայն ունիցի, և զմինն աղքատագունին նա տացէ, ընդ նմին համարեալ է առաջի Այ : Այլ չքաւորին առաւել ես զարմանալի է, զի 'ի չքաւորութենէն զընչեղեացն չափ ծախեաց : Ընդ այս և Յիսուս զարմացաւ, յորժամ այրին որ զերկուս լումայսն միայն ունէր և զնոյնս յողորմութիւնս ծախեաց, ասէ Յիսուս. մեծամեծքն զաւելորդս ընչիցն բերէին, բայց այրին տառապեալ զամենայն ինչս իւր բաշխեաց աղքատաց. զի երկու լումայքն միայն էին ինչք նորա : Այլ արդ այսու խրատէ սատանայ զընչեղս և զմեծատունս յորժամ ոչ տացեն ըստ մեծութեանն, և զողորմութիւնս մեծամեծս բաշխեսցէ. այլ սուղ ինչ և սակաւ իբրև զաղքատաւորսն, կարծեցուցանելով եթէ այն բաւական իցէ փրկութեան : Իսկ ոմանք զամենայն ինչս բաշխեցին աղքատաց, և զանձինս աղքատացուցին, քանզի անանց մեծութեանցն փափագեցին. և ոմանք զկէս ընչիցն տուեալ աղքատաց, և զհասարակ ազգացն և մարմնոյն բաժանեցին իբրև եղբարց :

Իսկ առաջինքն հանէին տատասկոյս, տային և պըտուղս, մնացուածէին պատարագս, տանէին և զողջակէզս, և տային զվասն մեղացն՝ զանդրանիկս մարդոյ և անասնոց, և զառաջաւորս կալոյ և հնձանի և զամենայն պտղոց։ Այլ և տօնս բազումս էր̃ կատարէին տարեկանս, և շաբաթս և ամսագլուխս նուիրէին հանդերձ ընծայիւք. յայսր վերայ և զաղքատս կարօտեալս ազգացանէին, զանթիւ զորբս և զայրիս կերակրէին, ըզհոյլս կուսանացն տեսանէին, զհիւանդս դարմանէին, զհիւրս ընդունէին, զնեղեալսն մխիթարէին, և զամենայն կարօտութիւնս տկարացն բառնային։ Իսկ արդ եթէ 'ի թերակատար հնումն խնդրէր ած̃ զայս ամենայն բարեգործութիւնս արդարութեան, որչափ առաւել ևս 'ի նորումն և 'ի կատարելումն առաւել ևս արդարութիւնս և ողորմութիւնս պահանջիցէ քան զայս ամենայն. զի "Թէ ոչ առաւելուցու արդարութիւն ձեր քան զդպրաց և զփարիսեցւոց, ոչ մտանէք յարքայութիւնն եր̃"։ Ապա զո՞ր ներեալ թողութեան ունիցիմք, եթէ ոչ աւելի ողորմութիւնս առնիցեմք քան զթերակատար հնոցն և հրէին ողորմութիւնս մեք քրիստոնեայքս որ 'ի նորոյն և 'ի կատարելոյս, որ 'ի Քրիստոսէ վարդապետեալքս։ Զի թէ զհրէին արդարութիւն միայն կատարիցեմք, ապա ընդունայն է մեզ գալուստն Քրիստոսի, եթէ ոչ առաւել քան զհրեայն առաւելուցումք սրբութեամբ, պտղօք և պատարագօք, և սիրոյն պատուիրանաւն։ Քանզի 'ի նորումս աղքատք և մեծատունք ամենեքեան մի մարմին եմք 'ի Քրիստոս, և անդամք միմեանց։ Եթէ ծառայ ես Քրիստոսի և պահես զպատուիրանս նորա, պարտ է իբրև քոյոյ անդամոյ խնամ ունել ընկերին. զի եթէ վշտանայ ինչ մի անդամն, ասէ, վշտանան ամենայն անդամք ընդ նմա։

Իսկ արդ եթէ գլուխ է Քրիստոս, և մեք մարմին եմք Քրիստոսի և անդամք յանդամոց նորա, պարտ է հասարակ անդամոցս համարել զամենայն ինչ Քրիստոսի՝ զոր ետ 'ի ձեռս մեծատանցն, և կացոյց հազարապետս և մատակարարս, զի գիտութեամբ մատակարարեսցեն՝ գիտել թէ որում շատ, և որում սակաւ պիտոյ իցէ. որպէս և առաքելոցն հասարակաց էին ինչք, և ամենայն հաւատացելոցն իբրև միոյ անձին անդամոյ.

և ոչ ոք իշխէր ասել զընչից թէ իւր իցէ . այլ բերէին և բաշխէին, և տային զայն ինչ որով կարօտն էր անձին խնդրողին : Այն էր սուրբ ողորմութիւն, այն էր ածպաշտութիւն և կատարեալ մարդասիրութիւն, որք այնպիսի գթովքն բաշխէին՝ որ մինչև զկարօտութիւնն և հարցանէին : Եւ այնչափ կարի կարևոր էր տեսութիւնն աղքատաց առ առաքելովքն, մինչև ընդ քարոզութեանն Քրիստոսի հանգոյն զողորմութիւնսն ուսուցանէին . բերէին և կուտէին առ ոտս նոցա զընչիցն բազմութիւն, յորոց վերայ զստեփաննոսեանսն կացուցին մատակարարս : Եւ որք ոչ գթով տնանկացն բերէին զողորմութիւն, այլ իբրև ՚ի հարկէ ինչ, սատակեցան՝ Անանիայն և Սափիրայն : Եւ Տաբիթայն՝ որ գթով և խնամովն կերակրէր և զգեցուցանէր զորբս և զայրիս, յաղօթից նոցունց յարեաւ ՚ի մեռելոց : Եւ Պաւղոս ասէ՝ թէ այս հրամայեցաւ մեզ՝ զի զայն աղքատաց յիշեսցուք, զոր և ես փութացայ զնոյն առնել . զի այս պատուիրան է կատարումն ամենայն գրոց այ, որպէս ցմեծատունն ասաց Քրիստոս . “ Եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զամենայն ինչս քո, և տուր աղքատաց, և գտցես գանձս յերկինս ,, . և ագահացն ասէ . “ Դիւրին է մալխոյ ընդ ծակ ասղան անցանել, քան մեծատանն յարքայութիւնն այ մտանել ,, : Զի որք աստ ինչս բազում ժողովեն, և զողորմութիւնս ոչ սերմանեն, սակ և ունայն գնան յաշխարհէս, և յանողորմ և յաններելի հուրն առաքին : Եւ զայն ծանուցեալ տեառն՝ ասէ . “ Արարէք ձեզ բարեկամս ՚ի մամոնայէ անիրաւութեան, որ ընկալցի զձեզ ՚ի յարկսն յաւիտենից ,, : Զայս և Պաւղոս ասէ՝ եթէ “ Զհետ երթայք սիրոյ, և նախանձաւոր լերուք աղքատացն ողորմութեան, զի և դուք ողորմութիւն ընկալջիք ՚ի Քրիստոսէ ,, : Եւ այլուր ասէ . “ Սփռեաց և ետ տնանկաց . արդարութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից ,, : Եւ ոչ միայն ՚ի կամս ապաստան արարեալ Պաւղոսի, այլ և պատուէր ևս դնէր ՚ի վերայ մեծատանցն ասելով . “ Ձեր ընչիցդ առաւելութիւն եղիցի աղքատացն կարօտութեանն, և յաղքատացն աղօթիցն առաւելութիւն արասցէ ձերոց մեղաց թողութիւն ,, : Զի ոչ ինչ թեթևացուցանէ զմեղացն ծան-

րութիւն իբրև զողորմութիւն և զգութ տնանկաց. որ-
պէս և սուրբն Դանիէլ Նաբուգոդոնոսորայ ուսուցա-
նէր, յորժամ հիւանդացեալ էր 'ի մեղաց. հարցանէր
զմարգարէն՝ թէ զի՞նչ հնարք իցեն ցաւոյս այսորիկ. և
մատուցեալ Դանիէլ որպէս բժիշկ՝ արքայ, ասէ, ոչ
պահք և ոչ հակումն և ոչ քուրձ և ոչ միայնութիւն
քեզ օգնել կարեն. բայց երթ զմեղս քո ողորմութեամբ
քաւեա, և զանօրէնութիւնս քո գթով տնանկաց. և
այն կաշառ է՝ որ արդարացուցանէ զքեզ, և Ճանապարհ՝
որ տանի 'ի կեանսն յաւիտենից:

Տեսանե՞ս որպիսի զօրութիւն է ողորմութեան, և
որչափ համարձակ երեսօք զողորմածն կացուցանէ առա-
ջի ա̄յ. և մանաւանդ որ սրտի մտօք զքաղցեալսն կերակ-
րէն, որպէս և Եսայի ասէ. "Բաշխեա քաղցելոց սըր-
տի մտօք, և զաղքատս անյարկս տար 'ի տուն քո. և
եթէ տեսանիցես զմերկն՝ զգեցուցանիջիր, և 'ի տառա-
պելոյ ազգի քո զերեսս մի դարձուցանէր. յայնժամ
կարդայցես, և ա̄ծ լսէ քեզ. և մինչ չև քո աղաղա-
կեալ իցէ՝ ասէ, հասեալ եմ": Այսպիսի արագա-
թև ողորմութիւնն եւս ելանէ 'ի լսելիս ա̄յ, և փութա-
պէս խոնարհեցուցանէ յօգնականութիւն ողորմածին:
Այլ ոչ եթէ աստ միայն օգնէ և փրկէ ա̄ծ զողորմածն,
այլ և յորժամ պակասիցէ այս, և 'ի հանդերձեալսն
փոխիցիմք, բազմապատիկ առատութեամբ դարձուցա-
նէ ողորմածին զողորմութիւնս նորա: Վասնզի ինքն
տէրն ասէ՝ եթէ ընդ ողորմութեան աղքատացն ես եմ
պարտական, և ընդ փոխոցն նոցա ես եմ փոխատու:
Ով որ ողորմի աղքատացն, փոխ տայ ա̄յ, և զմինն հա-
րիւրապատիկ դարձուցանէ անանց բարութեամբ. այլ և
զմեղս քաւէ, և փրկէ յահեղ տանջանացն: "Երանի
որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարին փրկէ
զնա տէր":

Այլ զի՞նչ իցէ խորհելն զաղքատն և զտնանկն: Խոր-
հելն այն է, յորժամ զտառապանս նորա զմտաւ ածի-
ցես՝ եթէ եղբայր իմ է, և անդամ և մարմին, և պէտս
ունի որպէս զիս, և կարօտ է ամենայնիւ՝ ընչիւք և յար-
կաւ, և առ վտանգս քաղցոյն բանութեան յածի և շըր-
ջի անհանգիստ. 'ի տօթոյ տապանայ, 'ի ցրտոյ դողայ,
որովայնն սին, և մարմինն մերկանդամ, հերքն թաւ-

կեալք, դէմքն դեղնեալ և թոշնեալք, և ամենայն մարմինքն գգուացեալք և երիթացեալք. թափառի, վարանի, և 'ի դուրս դուրս երերեալ և դադարեալ կառանչէ, և խանդաղատելի ողորմուկս արկանէ առ աղէտս վշտին. և զանազորոյն զմիտս մեր գիտելով՝ զխեղ անդամն ամօթոյ անակնածելի ցուցանէ, զի զանողորմութիւնս մեր 'ի գութ խոնարհեցուցանէ. յանդգնի, լքնի, և սուղ ինչ կերակուր բազում աշխատութեամբ գտանէ. երկիւղիւ 'ի դրունս, երկիւղիւ 'ի գաւիթս, երկիւղիւ 'ի տունս մտանէ. զի 'ի տունս ամենայն 'ի շանցն դողայ, յանասնոցն երկնչի. զի ձիքն կիցք հանեն, եզինքն եղջիւր ածեն, շունքն վիրաւորեն, և մարդիք չարք և անողորմք բամբասեն և թշնամանեն, և իբրև նետիւ խոցոտեն, և մանաւանդ եթէ խեղք և կոյրք իցեն և ցաւագնոտք. և վասն քաղցոյն վարանի, և յայնպիսի ալէկոծութիւնս դիմէ, յերեսս անողորմիցն իբրև 'ի դէմս գազանաց դիմեալ երթայ հասանէ. յորոց յառաջ թշնամանին, ապա եթէ կարիցեն ինչ առնուլ բազում բամբասանօք: Արդ այս է խորհել զաղքատն և զտնանկն, յորժամ զայս ամենայն զմտաւ ածիցէ, և քաղցրաբարբառ բանիւք և գթագին ողորմով զկարօտեալն մխիթարեսցէ, և հեծեծիցէ և յոգւոց հանիցէ 'ի վերայ նորա: Այնպիսեացն են երանութիւն մարգարէն, որք այնպիսի գթով և ողորմով զաղքատս ընդունին, և յաւուրն չարէն փրկին:

Իսկ օրն չար ո՞ր իցէ անողորմիցն և մեղաւորացն: Օր ահեղ դատաստանին է, յորժամ՝ երկինք սասանին, և երկիր դղրդի. յորժամ արեգակն խաւարի, լուսին և աստեղք կորնչին. յորժամ արհաւիրքն հարկանիցին, և ահագին սոսկումն սաստկանայցէ. յորժամ հնչումն փողոյն սաստկանայցէ և զարհուրեցուցանիցէ, և բարբառք հրեշտակացն հիացուցանիցեն. յորժամ զօրութիւնք և իշխանութիւնք և պետութիւնք շարժեսցին, և գունդք հրեշտակաց յերկիր ծաւալեսցին. յորժամ աթոռք անկանին, և զարքայն Քրիստոս իջեալ տեսանիցեմք. յորժամ յահէ փառաց դատաւորին սերովբէքն և քերովբէքն սարսափեն. յորժամ վէմք պատառին, և գերեզմանք բանայցեն, և բազմահոյլ նննջեցեալք յարիցեն, և անթիւ կենդանիքն նորոգեսցին.

դասք սրբոցն ցնծասցեն, և ժողովք արդարոցն պայծառասցին. աշխարհս ամենայն գումարեալ կայցէ, և հուրն ընդհանուր ընթանայցէ և ընդ տիեզերս տարածեսցի. յայնժամ զկապեալսն մեղօք զմեղաւորսն և զպարտաւորեալսն անօրէնութեամբ ածիցեն, և խաւարային միգով մթապատեալ յաշխարհատես հրապարակին ցուցանիցեն առակ և ծանակ անտանելի ամօթով, և առաջի տոսկալի բեմբին կացուցանիցեն յանդիման դատաւորին մեծի և ահաւորի, որոյ հուրն վառեալ տոչորիցէ և բորբոքեալ բարձրանայցէ, և հնոցն կայծականց և հրահոսանք գետոցն հրեղինաց. ուր հուրն վառեալ 'ի վայր իջանիցէ, և հրատիկք վառեալ 'ի ներքս տարածիցեն. ուր գուբք խաւարայինք, և տարտարոսք աղջամղջինք. գեհեն չարատանջ, և որդունք դառնաթոյնք, որք սպառնան և պատրաստեալ են ամենայն մեղաւորաց՝ առնուլ վրէժս յահեղ աւուրն յետնում:

Արդ այս է չար օրն մեղաւորաց, յորմէ փրկէ զողորմածն ողորմութիւն աղքատաց և գթութիւն տնանկաց. զոր և ինքն իսկ փրկիչն երանէ ասելով թէ "Երանի ողորմածացն, զի նոքա ողորմութիւն գտցեն„. և "Յոյժ բարձր 'ի գլուխ պարծի ողորմութիւնն առ դատաստանաւ„. և "Չար և անողորմ դատաստան լինելոց է այնմ, որ ոչ արարին ողորմութիւն„: Անողորմ դատախազք են նոքա, և անողորմ տանջանարանք. անողորմ այրումն հրոյն հնոցին, անողորմ խորովումն տապոյն. և ամենեքին անանց և աններելի են ահեղ աղետիցն չարչարանք: Այս է անողորմիցն անողորմ դատաստան և տանջանք աններելիք, զոր և անողորմ մեծատունն ընկալաւ՝ զահեղ հրոյն զխորովումն, և զաններելի տապակին. վասն զի ոչ արար ողորմութիւն քաղցելոց և մերկոց և հիւանդաց, ընդ որոց և հատուցումն անողորմ ընկալաւ:

Իսկ արդ զայս ամենայն լսելով մի յապաղեսցուք ողորմել աղքատաց նեղելոց, և առաւել ևս խեղանդամոցն և հիւանդացելոց, որբոց և այրեաց և վշտացելոց, օտարաց, հիւրոց և ծերոց, և ամենայն կարօտելոց 'ի կարևոր պիտոյիցն, որով նոցա յաջողին վաստակքն և կեանք աշխարհիս: Եթէ իցես մեծատուն, նոցա լեր հոգեբարձող և վերակացու. եթէ կամիս զմեղս քո փա-

րատել, նոցա լեր կերակրիչ և զգեցուցիչ. Եթէ կամիս համարձակ երեսօք զՔրիստոս տեսանել, զերեսս նեղելոցն և կարօտելոցն մի՛ տրտմեցուցաներ. Եթէ կամիս 'ի խորանս և յօթեվանս սրբոցն մտանել, և զանբաւ բարութիւնսն ժառանգել, օթեվան և ասպնջական լեր օտարաց, կարօտելոց, հիւանդաց և վշտացելոց. զնաստ հանգո և մխիթարեա երկրաւոր պիտոյիւքս, զի և դու հանգիցես և վայելեսցես հոգևոր կերակրովն և անանց փափկութեամբն: Վասնզի այն է ա̃ծպաշտութիւն որ միով առատ ողորմութեամբ զնեղեալս և զվշտացեալսն տեսանիցէ. զի այնպիսին ոչ եթէ առնէ ողորմութիւնս, այլ առնու զանանց բարութեանցն զվայելչութիւնս, և աստ բազում բարիս գտանէ յորժամ ըզբարիսն առնիցէ: Իսկ եթէ աղքատք ոչ էին յերկրի, ո՞վ ոք կարէր զբազմաթիւ բեռինս մեղաց թեթևացուցանել, և կամ յալէկոծեալ և 'ի ծովածուփ անօրէնութեանցս ապրել: Այլ ողորմութիւնք աղքատացն անցուցանեն զմեզ ընդ սահելի և ընդ ծփելի կեանս աշխարհիս, և հասուցանեն 'ի նաւահանգիստն խաղաղութեան: Իսկ աղօթք վշտագնելոցն խլեալ հանեն զփուշ մեղացն. մաքրեն և սրբեն զթարախ մեղաց պըղծութեան. բժշկեն և առողջացուցանեն զվէրս սատանայի. ցրեն և թեթևացուցանեն զծանրութիւն անօրէնութեանց, և քաւեալս և արդարացեալս յերկինս առաքեն: Այսպիսի են ողորմութեանցն զօրութիւնք, որ 'ի դառն կապանէն, և 'ի խորոց յանցանաց հանեն 'ի ձեռն սակաւ ինչ արծաթո՛յ զոր կարօտելոցն ծախեն:

Դու մի՛ տրտմիցիս ընդ պակասիլ ընչիցն, զի ընդ նըմին և մեղքդ պակասին. և յորժամ հանես 'ի քէն զարծաթն, հանես ընդ նմին և զմեղսդ, և զաղտեղութիւն պիղծ գործոց քոց սրբեսցես. որպէս և ասէ. “Տուք ողորմութիւն, և ամենայն ինչ ձեր սուրբ եղիցի”: Զի ողորմութեամբ սրբի մարմին ողորմածին. սրբի և հոգին. օրհնին ինչքն, և յաջողին վաստակք նորա. առաւելուն անդեայքն: Իսկ բազմանան խաշինքն, և պըտղաբերին անդաստանք նորա՝ եթէ միայն ա̃ծական կամօք ողորմութիւն առնիցէ. զի զողորմութիւն տնանկացն փոխ տայ ա̃յ. և ոչ այս միայն փոխարէն զոր վերագոյնդ ասացեալ է, այլ շնորհէ և զարքայութիւնն,

փրկէ և յորոգայթից թշնամւոյն, և 'ի ձեռաց գժոխոցն ապրեցուցանէ զողորմածսն։ Ոչ ի թէպէտ և մեծ սրբութիւն է կուսութիւնն, այլ առաւել և պատուական է ողորմածն. թէպէտ և մեծ է պահոց պնդութիւն, և առաքինութիւնք բազումք և մեծամեծք, այլ ևս մեծագոյն է ողորմութիւն, և կարևոր և ընդունելի այ։ "Մեծ է և պատուական այր ողորմած"։ Այլ որ ոչ ունէ ողորմութիւն, զայնպիսին և մարդ ոչ անուանեն գիրք ածաշունչք, այլ շուն և խոզս, և գազանս միայնակերս կոչէ։ Ոչ ի այնպիսիքն ճրագ են առանց լուսոյ և աչք առանց տեսանելոյ, աղբիւր առանց ջրոյ և ծառք գօսացեալք՝ որք զանուանակոչութիւնն միայն ունին, և ոչ զօգտակարութիւնն։

Այլ արդ իբր գիտասցուք զանողորմն թէ մարդ իցէ. քանզի աղբիւր 'ի ջրոյ անուանի աղբիւր, և ճրագ 'ի լուսոյ ասի ճրագ. նոյնպէս և մարդ յողորմութենէն ճանաչի թէ մարդ իցէ, որ հանապազ զսիրտն 'ի սէր և 'ի գութ աղքատին խոնարհեցուցանէ, և զձեռս յողորմութիւն կարօտելոցն դիցէ; և 'ի ձեռն աղքատացն քաղցելոցն զՔրիստոս կերակրէ. քանզի և Քրիստոս իւր իսկ համարի զաղքատաց ընդունելութիւնն. "Քաղցեալ էի, ասէ, և կերակրեցէք զիս. ծարաւի էի, և արբուցէք զիս. օտար էի, և ընկալայք զիս. հիւանդ էի և 'ի բանտի, և ինձ այց արարէք"։ Այլ արդ եթէ հաւատաս անսուտ բանին այ, 'ի միտ առ ճշմարտապէս, զի յորժամ զքաղցեալսն կերակրես, զՔրիստոս կերակրես. եթէ զջուր ծարաւոյն արբուցանես, զՔրիստոս արբուցանես. եթէ զհիւրս ընդունիս, զՔրիստոս ընդունիս. և թէ օտարին լինիս վանատու, Քրիստոսի ես ասպնջական. եթէ 'ի տես երթաս հիւանդին, առ Քրիստոս երթաս տեսանել. եթէ զնեղեալսն սփոփիցես, զՔրիստոս մխիթարես. եթէ անօգնականին օգնեսցես, Քրիստոսի լինիս օգնական. եթէ տկարացն սպասաւորեսցես, Քրիստոսի ես սպասաւոր. և զամենայն զոր քաղցելոցն մատուցանես, տաս 'ի ձեռս Քրիստոսի, և բազմապատիկ հատուցանէ յաւուրն յետնում. ուր ոչ ինչք կան համբարեալք, և ոչ սիրելիք և ծանօթք. ուր ոչ սուրբք կարեն օգնել, և ոչ արդարքն կարեն փրկել. ուր ոչ հարք գթան, և ոչ եղբարք ողոր-

մին, բայց միայն օգնեն ողորմութիւնք աղքատաց և վարք բարիք։

Արդ մի՛ մնասցուք վախճանին, և մի՛ ինչ ագահեսցուք, մի՛ զաղքատս կարօտեցուսցուք, մի՛ զՔրիստոս տրտմեցուսցուք. այլ զորբս սնուսցուք, զայրիս յանձանձեսցուք, զպանդուխտս ժողովեսցուք, զքաղցեալս կերակրեսցուք, զՔրիստոս մխիթարեսցուք. յերկրիս առատատուր մարդասիրութե՛ սերմանեսցուք, և յերկինս զողորմութիւնս հնձեսցուք. 'ի վերնախորանսն վերասցուք, և յանանց ուրախութիւնսն վայելեսցուք մեծապայծառ խնդութեամբ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։



## Զ

## ՎԱՍՆ ՊՏՂՈՑ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԱՑ ԵՒ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ

Բազում գաղտաձիգ[1] նետիւք վիրաւորէ զմեզ սատանայ, և զվէրսն չերևեցուցանէ. զսկիզբն իրացն երևեցուցանէ որպէս թէ առաքինի ինչ վարուք, և կատարէ յահեղ անօրէնութիւնս. և փոխանակ վարձուցն վաստակոյն արկանէ ընդ մեղօք անօրէնութեամբ. և որպէս ընծայիւք Կայենի և ընծայիւքն Յեփթայեայ, որ կերպարանօք բարւոյ զգործս անօրէնութեան կատարէր: Որ և այժմ առ բազումս կատարէ սատանայ, և առնէ զբաշխան և սնափառ յեկեղեցական 'ի պտղոց և պատարագաց ընծայից: Եւ ոչ միայն զսնափառ և զբաշխան 'ի վաստակոցն տեսանեմք, այլ և թշնամանօք 'ի յանդիմանութիւն. և անէծս պատուհասից յա̃յ ընդունին, որպէս և Մաղաքիա մարգարէն ասէ թէ «Անիծեալ լիցի մարդ որ կարող իցէ, և կայցէ 'ի հօտի նորա որձ, և մատուցանիցէ տեառն զանօգուտն և զարատաւորն և զվտիտն պատարագ»: Այլ և զքահանայս ևս որք և զխոտանս 'ի ժողովրդոցն ընդունիցին, պատուհասէ և ասէ. «Դուք քահանայք էք՝ որ բամբասէք զանուն իմ, և մատուցանէք 'ի սեղան իմ հաց պղծութեան, զխոտանն և զյափշտակեալն և զանօգուտն, այսինքն զնիհարն, և թէ ընկալայց զայն 'ի ձեռաց ձերոց. այլ առաքեցից 'ի վերայ ձեր անէծս, և նզովեցից զօրհնութիւնս ձեր, և բարձից զձեզ համադերձ նոքօք. փոխանակ զի դուք ոչ եդիք 'ի սիրտս ձեր երկնչել յինէն»:

Արդ եթէ որք 'ի հնումն զխոտանն մատուցին, այսպիսի պատուհասիւք պատժեցան, զինչ գործեսցեն որք 'ի նորումն զխոտանն կալոյ և հնձանի ա̃յ նուիրեսցեն,

1. Մի օրին. գաղտանետիւ:

և զվտիտն և զանօգուտն 'ի հօտիցն՝ կոչնոց աղքատացն մատուսցեն, որով և Կայէն կորեաւ խոտան և անընդունելի պատարագաւն. քանզի ոչ ուղիղ բաժանեցեր, ասէ, և այդ ես առ քեզ դարձցի: Արդ պարտ է մեզ երկնչել 'ի բանէս յայսմանէ. զի եթէ որք առանց օրինացն մեղան՝ այնպէս պատժեցան, որչափ ևս առաւել մեք եթէ հանդերձ օրինօքն մեղիցուք. զի որ 'ի շնորհացն որ 'ի հնումն էին՝ ոչ էին վայելեալք, և այնպիսի ուղղութիւնք խնդրէին, որչափ ևս առաւել բազում հաւաստեաւ ուղղութիւն 'ի նորումս պահանջիցէ, թէ և սակաւ ինչ զթիցեմք. որք յօրինաց խոտորեցաք, և 'ի շնորհացն վայելեցաք, և զօրինակն տեսաք: Այլ արդ եթէ զխոտանն այ նուիրիցեմք, մեզ մի՞ ներբեալ թագութեան կայցէ. զի ասէ՝ թէ զառաջնաստուրս կալոյ քո և հնձանի, և զընտիր ընտիրս խաշանց՝ այ քում մատուցանիջիր. և պատուեա զտէր 'ի քոց արդար վաստակոց, և հանդերձ պտուղ 'ի քոց արդարութեան արմտեաց: Այս է ընդունելի առաջի այ: Այլ 'ի յափշտակութենէ, կամ 'ի գողութենէ, կամ 'ի զրպարտութենէ, կամ 'ի վաշխից ինչ տոկոսեաց, կամ 'ի բռնութենէ վաճառաց, կամ 'ի տառապելոց զրկանաց եթէ մատուցանիցէ ինչ պատարագ՝ եզն կամ ոչխար կամ քօշ, պիղծ է ինձ որպէս թէ զայն՝ որ շուն ոք մորթիցէ, և կամ եթէ հարկանիցէ ոք զկառափն մարդոյ, և կամ հեղուցու ոք զարիւն խոզի:

Այլ արդ ընդէ՞ր ոք ժտիցի զայսպիսի պատարագս զազրալիս մատուցանել՝ որ գեհեննին առիթ է, և կամ զընդունելութիւն աղքատացն կոչնոց՝ կարողօքն և անկարօտիցն պատուօքն կոչուանել. զոր և Քրիստոս արգել ասելով, եթէ «Յորժամ առնիցես ճաշ կամ ընդունելութիւն աղքատաց, մի կոչեր զեղբարս քո և մի զդրացիս քո և մի զսիրելիս քո և մի զմեծատունս, զի մի և նոքա զքեզ կոչեսցեն, և այն լիցի քեզ փոխարէն. այլ յորժամ առնիցես ընդունելութիւն յաղագս ոգւոյ քոյ փրկութեան, կոչեա զաղքատս և զխեղս և զկոյրս և զկաղս, և երանի է քեզ՝ զի ոչ ունին փոխարէն հատուցանել քեզ. և լիցի քեզ փոխարէն յարքայութեան աստուծոյ»: Ո՞ր են խօսքս և հրամանքս. ո՞չ ապաքէն Յիսուսի որդւոյն այ: Այլ արդ ընդէ՞ր արհամարհես զհրամանսն Քրիս-

տասն ։ Եթէ կամիս զմեծամեծս քո պատուել՝ պատուեա. ունիս աւուրս երեք հարիւր վաթսուն և հինգ տալ մարմնոյդ, և զմի օր 'ի նոցանէ հոգւոյդ նուիրեա ։ Արդ ահա զմի օրն չարկանես տալ հոգևորացն և հոգւոյդ կոչունս ։ Եթէ բժիշկ վիրաւորեալ ոգւոյ քոյ զաղքատսն արարեր, և ժողովեցեր զնոսա բարեխօս և աղաչողս առ Ած, և մեղաց քոց քաւարան զնոսա կոչեցեր 'ի տուն քո, ապա յայնմ աւուր ընդունելութեան աղքատաց և ոգւոյ քոյ, յորում աւուր քաւչին մեղք, դադարեցո ըզխորհուրդս քոյ զմարմնաւորս, ընդ նմին և զսիրելիս քո զմարմնաւորս. և մի զոք 'ի կարողաց և կամ 'ի մարմնաւոր սիրելեաց քոց մուծանիցես 'ի տուն քո, զի մի 'ի թողութենէ մեղաց քոց վրիպիցիս՝ նոցա սպասաւորելով, նոյն աչառելովն զնոսա, զնոքօք շրջելովն, զնոսա 'ի վէր մատուցանելովն, և կերակուր և գինի ոչ վերանայ 'ի նոցանէ ։ Այլ քո քաւարան մեղաց՝ աղքատացն ժողովք 'ի ներքուստ 'ի վէր նայելն, և սեղանք նոցա զատարկ՝ յոգոց հանիցեն. և ամենք 'ի նոցանէն արտաքս իսկ մնան խեղճք զարհամարհեալս, և միայն զձայնն լսեն զբազմականացն, և 'ի սիրտս իւրեանց զարհամարհանսն իւրեանց վարանելն, զօղեալք և ակնկորեալք նստին ։ Արդ մի ինչ այսպիսի կոչունս յաւուր պատարագին ընդունելութեան արասցես, յորոց ծախիցն անվարձ լինիցիս ։

Այլ եթէ կամիցիս մեղաց քոց թողութիւն խնդրել, կոչեա զորբս և զայրիս, զնեղեալս և զտառապեալս, ըզխեղս և զկոյրս և զկաղս, զկարօտեալսն և զգերիսն, և զամենայն քաղցեալս և զանմխիթարսն. զնոսա մխիթարեա, զնոսա սփոփեա, զնոսա կերակրեա, նոցա միայն սպասաւորեա, զնոքօք շրջեա, զնոսա յարմարեա, և քաղցր բանիւք պաշտեա, զի թողութիւն մեղաց և փըրկութիւն տան քո եղիցի ։ Այլ արդ այսպէս յօրինեա զընդունելութեան կոչունս զպատարագացն, և մի ըզթագաւորս և զմեծամեծս յընդունելութիւն թշուառացելոցն և աղքատացն մուծաներ. այլ նոքա եղիցին գահերէցք, և նոքին բարձրագլուխք. նոքա 'ի վերոյ, և նոքին 'ի ներքուստ. զնոսա միայն մոյծ աղաչանօք, և զնոսա միայն յղարկէ աղերսանօք ։ Այլ եթէ այսպէս ընդունիցիս, ոչ եթէ ետուր, այլ առեր. ոչ եթէ ծախե-

ցեր, այլ մեծամեծ շահս ժողովեցեր, և Թողութիւն ընկալար: Նման այսր ամենայնի ասէր Քրիստոս՝ եթէ յորժամ առնիցես ընդունելութիւն, մի կոչեր զմեծամեծս, զի մի զբաղմամբք նոցա աղքատքն արհամարհիցին. և դու վասն աշխատանաց իբրև զօրինազանց դատիցիս, ըստ այնմ որ ասէ՝ եթէ որ զհանդերձս պայծառս ունիցի, ասիցէք եթէ դու նիստ աստ պատուով. և ցաղքատն ասիցէք եթէ երթ նիստ առ պատուանդանին. և զայս առնելով, ասէ, ոչ խղճիցէք յանձինս ձեր, և լինիցիք դատաւորք չարեաց խորհրդոց. զի 'ի մեծամեծացն աշխատելով մեղս գործէք՝ յանդիմանեալք յօրինացն իբրև օրինազանցք:

Նաև արդ մի ինչ այսպիսի դատապարտութիւնք 'ի կոչունս աղքատացն ունիցիս, զաղքատսն և զմեծամեծսն 'ի միասին ժողովելով. զի մեծամեծքն մտեալ՝ բարձ և պատիւ խնդրեն և գահերիցութիւն և մեծափառութիւնս և յարգանս և սնուտակասպասութիւնս 'ի քէն պահանջեն. և աղքատքն նստին 'ի ներքս զղջեալք և խոնարհեալք լռութեամբ: Ոչ է բարւոք կոչ ընդունելի. ոչ ոք որոմն ընդ ցորենոյն սերմանէ, և փուշ ընդ որթով տնկէն. և ոչ քեզ պարտ է սնուտակասպասութիւն և մեծափառութիւն ընդ խոնարհութիւն և ընդ աղաչխարութիւն մեղաց քոց խառնել. խափանիչք են միմեանց և ապականիչք. անհնար է քեզ միով ակամբ յերկինս հայել, և միովն յերկիր. և յայնմ աւուր միանգամայն մարմնաւորացն և հոգևորացն հանձեալ: Հոգևորքն աղաչեն և մաղթեն զքեզ յերկինս տանել, և մարմնաւորքն սնուտակասպասութեամբ և մեծափառութեամբ և բաղում ստաբանութեամբ և սուտ յարգանօք յանդունդս քարշեն. հոգևորքն 'ի լոյս հրաւիրեն, և մարմնաւորքն 'ի խաւարն առաքեն: Հա այսպիսի խափանիչք քեզ վնասակարք են յաւուր ընդունելութեան աղքատաց զմեծամեծսն կոչելով: Այլ զաղքատս սփոփեա, զաղքատսն հանգուցանել, զաղքատսն աղաչել, հաց քաղցելոցն բրդել, զմերկսն զգեցուցանել, զանյարկսն ընդ յարկաւ մուծանել: Նաև յայնժամ կարդասցես, և նա լուիցէ քեզ. և մինչ չև խօսեալ իցես, ասասցէ եթէ ահաւասիկ հասեալ եմ:

Այսպիսի շահաւոր են ընդունելութիւնք աղքատաց,

և մերձ առ ա̃ծ աղօթք նոցա, զոր և մարգարէն ասէ. "Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն, յաւուր չա-րէ փրկէ զնա տէր. երանելի առնէ զնա 'ի վերայ երկ-րի, և ոչ մատնէ զնա 'ի ձեռս թշնամեաց իւրոց": Որք այս են երանութիւնք վասն կերակրելոյ կարօտե-լոցն, զոր և Քրիստոս իւր համարի: Իսկ ընդ անկարօ-տիցն կոչնոց զի՞նչ շահիցիս, և կամ ո՞ր օգուտ գործիցի, զի ընդունելութիւն քաղցելոցն է շահաւոր, և ոչ յա-գելոյն. և Քրիստոս ոչ ասէ՝ եթէ զյագեալսն կերակ-րեցէք, և ոչ ասաց եթէ զարբեալսն արբուցէք. այլ զծարաւեալսն տեսէք և արբուցէք, զմերկսն տեսէք և զգեցուցէք, և օտարատեսութիւն արարէք: Որպի-սիքն են վարձուց և երանութեան արժանի, և ոչ յագե-լոց և անկարօտից զմայլութիւնք. զի որ զաղքատն և զկարօտեալսն կերակրէ, զօտարսն և զհիւանդսն, ոչ զմարդ՝ այլ զՔրիստոս ընդունի, զՔրիստոս կերակրէ, զՔրիստոս զգեցուցանէ, զՔրիստոս սփոփէ, զՔրիս-տոս մխիթարէ, զՔրիստոս հանգուցանէ, և Քրիս-տոսի սպասաւորէ. զի անսուտ է բանն տէրունական:

Եթէ Քրիստոս է զոր ընդունիս, ոչ է քեզ պարտ և արժան 'ի Քրիստոսի ընդունելութ̃ն զժողովս զեղխե-ցելոյն ժողովել, զնոսա 'ի ներքս մուծանել, և զՔրիս-տոս թողուլ արտաքոյ դաւթին: Նոքա մեծարանօք 'ի վերոյ, և Քրիստոս արհամարհանօք 'ի խոնարհ. նոքա պատուով 'ի բազմականի, և Քրիստոս արհամարհա-նօք առ պատուանդանի. նոքա անդ 'ի վեր սփոփանօք սպասաւորին, և Քրիստոս աստ 'ի վայր նստի գլխար-կեալ: Ոչ է պարտ այսպիսի արհամարհանօք ընդունել զՔրիստոս, զի 'ի սրտմտութ̃ և 'ի բարկութիւն զար-թուցանես, և ոչ յողորմութիւն և 'ի թողութիւն մե-ղաց: Զի եթէ ողորմութեան է ընդունելութիւնդ, զի՞ կաչես տեսողս բազումս, և հատուցումն 'ի մարդկա-նէ ընդունիս: Ահա ուսուցանէ զքեզ Տ̃ր. "Զգոյշ լեր, ասէ, ողորմութեան՝ մի առնել առաջի մարդկան. զի որ յաչս մարդկան լինի, և հատուցումն 'ի մարդկա-նէ ընդունի. այլ եղիցի ողորմութիւնն քո 'ի ծածուկ. և հայրն քո որ տեսանէ 'ի ծածուկ, հատուսցէ քեզ յայտնապէս":

Որք մի զկնի յայսպիսի վարձուց, և մի տեսողս ա-

ղորմութեան քում ժողովել. այլ զգուշութեամբ մատակարարեա 'ի ծածուկ, զի 'ի մեզ է գաղն, գողանայ զվարձս քո. գարանակալէ աւազակն, յափշտակէ զողորմութիւնս քո. մերձ կան նենգիչք նենգել, և հանել զբարիս քո 'ի քէն. շրջանակաւ ամբարիշտքն շըրջին, և ջանան զրաջան առնել զքեզ և մնափստակ 'ի վաստակոցն։ Այլ յամենեցունց պատրաստեա երկիւղիւ, պատրաստեա խնամատութեամբ. և զգոյշ լեր յախտէն մարդահաճութեան և 'ի դիւէն սնափառութեան, զի մի դարձուցանիցեն զբարիքն քո 'ի չար, և մի զլոյսն քո 'ի խաւար. զի եթէ լոյսդ որ 'ի քեզ ասի՝ խաւար իցէ, իսկ խաւարն որչափ ևս իցէ. զի եթէ ողորմութիւնդ քո չարիք եղեն, չարիքն որչափ ևս ինչ լինիցին։ Արդ վասն այսորիկ ծածկեա յամենեցունց զողորմութիւնս քո. և որպէս ոչ կամիս զպղծութիւն մեղաց քոց ցուցանել, և մի զողորմութիւն ապաշխարութեանդ տալ գիտել. այլ ծածկեա զառաքինութիւն ապաշխարութեան իբրև զմեղացն զազրութիւն. և յամենայն ժամ ընդունելի լինին ապաշխարութիւնք քո, և գտանես մեղաց քոց թողութիւն։ Մի առ հաճոյ սնափառութեան զկոչունս ընդունելութեան արասցես, և մի 'ի ցոյցս մարդկան զտուրս ողորմութեան արասցես աղքատացն, և մի զմեծամեծս և զգոյաւորս յընդունելութեան կարօտելոց աղքատաց բաշխեսցուք և կոչեսցուք. և մի զխոստանսն կալոյ կամ հնձանի այ նուիրեսցուք, և զամենայն տուրս պտղոց եկեղեցւոյ կամ քահանայից մի չարակնեսցուք, որով Կայեն յանդիմանեցաւ. և զպէտսն և զուղիղն 'ի հօտից անձանց մերոց մի թողուցումք, և զանօգուտն և զվտիտն ընդունելութիւն աղքատացն արասցուք և կարօտելոցն զենցուք. և մի յագահութենէ և յափշտակութենէ և յանիրաւութենէ ընչից ժողովելոց յածայինն ընծայսն մատուսցուք. զի պիղծ են ամենայն զրկողք և ինչք նոցա առաջի այ։ Բայց զայս ամ ըստ հաճոյիցն այ արասցուք, որով ած հաճեսցի և ընկալցի, և թողութիւն մեղաց արասցէ։ Սրբութեամբ և անմեղութեամբ կացցուք, և փառօք և պատուօք զերկինս ժառանգեսցուք, և խոստացելոց բարեացն արժանաւորեսցուք հասանել 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում վայելէ փառք և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# Է

## ՎԱՍՆ ՓՈԽՈՑ ԵՒ ՎԱՇԽԻՑ

Յոյժ չար են ախտք ընչասիրութեան, և անհնարին չար են քան զամենայն փոխոյն տոկոսիք, որ հանապազ հայհոյեալ բանիւ 'ի Հին և 'ի Նոր կտակարանս. և պատուհասեալք պատժին չարաչարս խնդրողք վաշխից և փոխոյն' որ ընդդէմ պատուիրանացն այ զարծաթս իւրեանց 'ի վաշխու տան, և տոկոսեօք անդէն պահանջեն, և անակնածելի ուտեն զքրտինս տնանկաց, և ըմպեն զարիւն նոցա անողորմ. և ոչ ունկնդիր լինին Եզեկիելի հոգելից մարգարէին' որ ընդ մեծամեծ չարեօք դնէ զփոխոյն տոկոսիսն, և ընդ կռապաշտիցն համեմատէ պղծութեամբքն ասելով' եթէ 'ի կուռս տանն Իսրայէլի պղծեցաւ, և վաշխս ու տոկոսիս պահանջեաց: Իսկ Մովսէս ասէ' թէ մի տացես վաշխս ընկերի քում, զի անօրէնութիւն է առաջի այ. զոր և արտաքս կացուցանէ յերկնային խորանացն' որք վաշխս և տոկոսիս պահանջեն: Նաև որ զարծաթ իւր 'ի վաշխու ոչ տայցէ, և կաշառ 'ի վերայ իրաւանց ոչ առնու, նա մի սասանեսցի յաւիտեան: Իսկ միւս մարգարէն ասէ. որ 'ի վերայ լերանց զոհեալն ոչ եկեր, և զգրաւ պարտապանին դարձոյց, և վաշխս և տոկոսիս ոչ պահանջեաց, արդար է նա, և կեալով կեցցէ. իսկ որ զվաշխս և զտոկոսիս պահանջեն, դիմամարտ են պատուիրանացն այ, և հակառակ հոգւոյն հրամանացն. զի զարգելեալսն 'ի հոգւոյն հրամանացն չարաչար 'ի կիր արկանեն անօրէնութեամբք:

Իսկ այնչափ անօրէն են ախտ փոխոց տոկոսեաց, մինչև յամենայն արդանդէ խնդրէ որդի բռնութեամբ, և յապաւած քարանց պտուղ որոնէ, և առանց սերման կամի արդիւնս ժողովել, և յարուաց ծնունդս պահանջել, և 'ի քարէ կաթն կթել, և 'ի վիմաց ասր ստանալ. զթիւ արծաթոյն զոր տուեալն է' կրով ընդունի, և առանց

սերման ժտի արդիւնս ժողովել, և ընուլ զտուն իւր անօրէն ստացուածովք ։ Ապա նստի խորհի նախ բազմացուցանել զընչիցն առաւելութիւն, և ապա ընդ անօրէնութեանցն առնել ողորմութիւնս տնանկաց և պատարագս հաշտութեան, զոր յանդիմանէ Եսայի ասելով՝ թէ "Որ մատուցանէ ինձ զյափշտակեալն պատարագ, այնպէս զազրալի է՝ որպէս թէ շուն ոք մորթիցէ, և կամ թէ հարկանիցէ ոք զկառափն մարդոյ"։ Օ ի լաւ է աղքատաց անտես լինել յողորմութենէ, քան թէ յափշտակութենէ ընդունել ինչ ։ Լաւ է քահանայից 'ի սովոյ մեռանել, քան թէ յանարժանիցն կերակրել ։ Այր ուրուք, ասէ, զայլոց առեալ և այլում բաշխիցէ, ոչ եթէ վարձս ընկալցի, այլ պատիժս և տանջանս սաստիկս. զի հուր այրիչ և սուր սատակիչ են ծնունդք փոխոց ։ Եւ որ յընչիցն անիրաւութեանց զա̄ծ պաշտել համարիցին, առաւել բարկացուցանէ. "Պատուեա, ասէ, զտէր 'ի քոց արդար վաստակոց, և հան նմա պտուղ 'ի քոց արդարութեան արմտեաց"։

Մի խորհիր զյափշտակութիւն ժողովել, և ապա առնել ողորմութիւնս վասն մեղաց թողութեան. զի ոչ երբէք հրով հուր շիջանի, և ոչ վիրօք վէրք բժշկին, և ոչ մեղօք մեղք սրբին, և կամ անօրէնութեամբ անօրէնութիւնք քաւին. քանզի յոյժ չար են վաշխիցն անօրէնութիւնք, և որպէս երկունք յղւոյ են ժամադրութիւնք նոցա ։ Եւ եթէ աղքատ եւս իցէ փոխապարտն, 'ի ծուփս և 'ի հոգս մաշի հանապազ. անքուն և դառնաքուն 'ի գիշերի ննջիւն նորա. տխուր և տրտում և մռայլոյզ 'ի տուրնջեան շրջի, և ոչ գիտէ յո երթայ ։ Երբեմն սուղ ինչ զպախրէն կամի վաճառել, զի հատուսցէ զվաշխիցն տոկոսիս. և երբեմն զանօրէն գողանալն ախորժէ՝ զոգիսն կորուսանել և դիմադարձ լինել ա̄յ վասն պահանջողի վաշխի փոխիցն. և երբեմն խորհի գաղտագնաց լինել 'ի տար աշխարհ ։ Շրջի թափառական յաղագս պարտուցն բռնութե̄, և 'ի բազում խորհրրդոցն վարանիցի, և մնասցէ շփոթելոց զաղօթսն առ ա̄ծ մոռանայ. և յորժամ ձայն ոտիցն հարկանի, նա 'ի ներքս սրտաբեկ լինի յերկիւղէն. և թէ արտաքոյ տեսանէ փոխառուն զփոխատուն, փախչի և թաքչի իբրև 'ի տարակուսանաց աղէտիցն, և սիրտն թափեալ

զզօղի հարկանի, և կայ գլխարկեալ և լեզուակապ. և ամենևիմբ յերեսս նորա նայել ոչ իշխէ և ոչ համարձակի, զի տոկոսիքն վաշխիցն բազմացան 'ի վերայ նորա, և ոչ ինչ ունի հատուցանել և հաճել զփոխատուն։

Այլ արդ տես, ով պահանջող վաշխից, եթէ քանի տարակուսանօք և ընդ վշտօք զեղբայրն արկանես, և քեզ քանի կողկողանաց և աղէտից ես պատճառք՝ դիմադարձդ այ̃ և բազում մեղաց պարտապան, արկանելով 'ի վերայ փոխոցն վաշխ, և վաշխիցն վաշխ, չար ծննդոց չար թոռունս ծնուցանես. և այս են օձք՝ ծընունդք իժից։ Իժից ծնունդք զորովայն մօրն ծակեն ելանեն, և փոխոցն ծնունդք զոգիս վաշխաժողովացն պատառեն և սպանանեն, և դառն տանջանացն և ահեղ հրոյն պատրաստեն. զի դառն արուեստ և անօրէն մշակութի̃ ստացաւ, որ առանց երկրի անկեալ յանդըրնի և առանց սերման հնձել. որոյ սերմն ժանտ է, և հունձք չարաչարք, և մշակք անօրէնք, և սատանայ սատարիչ, վարիչ և յորդորիչ անօրէն հնձողաց զչար փոխոցն տոկոսիս։ Որ վառէ իբրև հրով անօրէն վաշխիցն ցանկութեան, և հանապազ սուր և հուր ժողովէ յշտեմարանս, և չարաթոյն սատակիչս քան զօձս և զիժս և ծնունդս քարբից ժողովէ 'ի տունս փոխոցն և տոկոսացն։ Այլ ոչ լուաւ զօրհնութի̃ն մարգարէին՝ որ թէև որպէս զաղաւնոյ ըղձանայր հեռանալ 'ի քաղաքաց, վասն զի ոչ պակասեաց 'ի հրապարակաց նոցա վաշխ և նենգութի̃. և ոչ զաղաչանս նորուն առ ած̃, զի 'ի վաշխէ չարէ փըրկեսցէ զանձինս նոցա. այլ զաչս խցեալս և զականջս կափուցեալս անդադար ժողովէ զվաշխիցն տոկոսիս։

Ո՜վ չար ախտի անօրէն ստացող. յորմէ պարտ էր երկիւղիւ հեռանալ 'ի տոկոսեաց գթով, նա բազում ցանկութեամբ ընդ շահից վաշխիցն ընտանենայ, որ զուշն ապշեցուցանէ չհայել 'ի պատուիրանս այ̃. զմիտսն յիմարեցուցանէ չյիշել զօր ահեղ դատաստանին. ըզմիտսն քարացուցանէ 'ի գութ կողկողեալ եղբօրն խոնարհել. խնու զլսելիս և զտեսանելիս. յամօթոյ տեսողացն չամաչէ, այլ յանդգնեալ հոլանեալ ժողովէ և գանձէ հուր յաւիտենական՝ ոգւոյն թշուառացելոյ։ Այլ որպէս երկրագործքն յաղագս անձրևաց աղաչեն և մաղթեն յայ̃ վասն սերմանցն և լիութեանց աշխարհի, իսկ

վաշխաժողովն կարօտութիւն և տարակուսանս և սովս սաստիկս և հարկապահանջս աշխարհի ըղձանայ, զի 'ի գործ և 'ի շահ վաշխիցն ինչքն անկանիցին ։ Ի ժամ փոխոցն տալոյ զուարթերես կեղծաւորի. և յորժամ ժամադրութի̃ վաշխիցն հասանիցէ, տեսանելով զչքաւորութիւն և զտարակուսութիւն պարտապանին՝ ոչ ողորմի, և ոչ երդմանն հաւատայ մաղթողին, ոչ խոնարհի յաղաչանս վարանեցելոյն. այլ դժոխեալ անխոնարհելի և անհաշտ, և իւր ծառայ զփոխառուն համարի փոխատուն ։ Քննէ եթէ զինչ ինչք նորա իցեն նմա արժանի. հետազօտէ՝ թէ ուր տարեալ թագուցանէ. արտաքոյ զդուրս պահէ, 'ի մէջ բազմութեանն թշնամանէ, 'ի սիրելեան ամաչեցուցանէ, 'ի հրապարակս խեղդէ ։

Չար պատահումն 'ի տուն, 'ի կեանս չար քան զմահ տեսանէ փոխապարտն. ատէ զաւուրն ժամադրութիւնս, երկնչի յամօթոյն, երեսքն խոնարհի տեսանել 'ի պահանջողն. աչքն պատրուակին իբրև շուն ըմբռնեալ 'ի տեղիս, ամօթովն աղափարի ։ Տեսէք զողորմելի տեսումն. տեսէք զչար մեքենայսն սատանայի. տեսէք զանօրէն շահսն նզովից. զի մոլար ախտիւն անամօթացեալք զընչաւէտսն աղքատացուցանեն, զաղքատսն մերկացուցանեն, զմերկսն խեղդեն, և յարտասուաց արծաթ ժողովեն և բերկրին ընդ անօրէն շահիցն յաճախութեանցն ։ Ո՜վ անօրէն վաշխիցն չարեաց՝ որ է որոգայթ մահու ստացողաց, և ոչ իմանան. խեղդ է անձանց, կապանք հոգւոյն, առիթ գեհենին, առաջնորդ խաւարի, և պատրաստող ամենայն տանջանաց և յաւիտենական ամօթոյն ։

Վասն որոյ բազում զգուշութեամբ փախիցուք յընչից տենչանաց. փախիցուք 'ի չար ախտէն յայնմանէ. փախիցուք 'ի չարաժանի գաղանէն. փախիցուք 'ի սատանայական մեքենայէն ։ Զի վաշխ չար օձին է վարդապետութեան. վաշխ գիւտք են դիւական. վաշխ թշնամոյն են սերմանք. վաշխ առհաւատչեայ է տանջանացն. վաշխ խափանիչ է բարեպաշտութեան. վաշխ ճանապարհ է գեհենին. վաշխ զրկումն է արքայութե̃. վաշխ ամբոխումն է մարմնոյ և սատակիչ հոգւոյ և մերժումն ամենայն արդարութեանց ։ Արդ փախիցուք

յա̃ծամարտ յախտէդ յայդմանէ, 'ի վարդապետէ խաւարէ, 'ի մարդասպան մօրէ։ Աղաչեմ՝ մի՛ ախտասցուք զհիւանդութիւնն զայն. և եթէ 'ի ներքս անկեալ իցեմք յախտն, արտաքս փախիցուք։ Իսկ որ նոքօքն վարին շարաչար, արժանի են սգոյ և ողբալի արտասուաց. զի զոր օրինակ սուր առեալ՝ և զինքն խոցոտիցէ, այսպիսի է շարութիւն ախտին, և բազում գլուխ ստացեալ ունի. ագահ է՝ սոյն և կռապաշտ առնէ. անամօթ է՝ սոյն և գազանամիտ առնէ. անագորոյն է՝ սոյն և անողորմ առնէ. անիրաւ է՝ սոյն և յափշտակող առնէ. անձնասէր է՝ սոյն և քրիստոսատեաց առնէ հակառակ կամացն ա̃յ։

Այս արդ զինչ ասացից. չէ մարդն այն քրիստոնեայ՝ որ վաշխս ժողովէ անիրաւութեամբ. այլ բազմին է այնպիսին սատանայի լի մարդագրոհիւք, և գերեզման լի նեխեալ մեռելովք, և նմանեալ բորբոքեալ հրոյ գեհենոյն՝ որ զամենայն ինչ ծախէ, և երբէք ոչ յագենայ։ Զարհուրեցուք, սիրելիք, եթէ մեր երթեալ տարաւ զմեզ ընչիցն ցանկութիւն. զարհուրեսցուք և բազում զգուշութեամբ զարմատն խլեսցուք, զի մի՛ զարգացեալ ծայրիցն՝ զմեզ 'ի վայր դարահոսեսցեն յանդունդս 'ի հուր գեհենին։

Այս արդ զինչ արասցուք, և կամ որո՞վ օրինակաւ ըզչար արմատն խլեսցուք. զի իբրև ընդ օձս և ընդ գազանս խօսիմք, և ոչ ընդ քրիստոնեայս և ընդ քրիստոսասէրս՝ որ հնազանդին հրամանացն ա̃յ։ Պատերազմին բարբառեալ ասելով. եթէ ոչ դառնայ առ մեզ արծաթն վաշխաւ, ապա և 'ի տալոյ իսկ արգելումք զփոխն, և ոչ ողորմիմք եղբօրն կողկողելոյ։ Այդ բարբառ անօրէն և հակառակ կամացն ա̃յ. այդ բարբառ ծնունդ է սատանայական կամաց՝ որ յա̃յ հեռացուցանէ. այդ բարբառ չար թշնամոյն է սերմանք, զի զձեզ 'ի ճշմարտութենէն մերժեցուսցէ. քանզի այդ իսկ են խորհուրդք չարին վարդապետութեն ընդդէմ պատուիրանացն ա̃յ։ Զի Քրիստոս ասաց. թէ տացէք փոխ այնմիկ՝ ուստի ակն ունիք անդրէն առնուլ զկշիռն, զայդ և մեղաւորքն առնեն. իսկ դուք, ասէ, տուք փոխ այնոցիկ՝ ուստի ակն ոչ ունիք առնուլ, յորժամ զմիմեանց բեռն բառնայցեմք, և կատարեմք զօրէնսն Քրիստոսի՝ որ ասէն, թէ ձեր ա-

ռաւելութիւնդ եղիցի չքաւորացն կարօտութիւն, զի եղիցի հաւասարութիւն երկոցունց: Նա եւ արդ 'ի միտ առ, զի ոչ եթէ չափով ինչ հրամայէ ողորմել քեզ աղքատին, այլ քում ընչաւէտութեանդ հաւասարել զչքաւորութիւն նորա. զի Ա̅ծ եղբայր քո անուանեաց զաղքատն չքաւորն, եւ անդամ յանդամոց քոց. եւ քեզ չէ օրէն զանդամս քո մերկ տեսանել եւ անտես առնել, եւ կամ զրկել 'ի բաժնէ ընչիցն. զի եղբայր քո կոչեցաւ:

Նա եւ արդ թէ եղբայր քո հանարիս, մի հեթանոսաբար անկուշնէք 'ի պատուիրանաց Ա̅յ. այլ կալ քրիստոնէաբար զհրամանսն տեառն՝ որ ոչ զպակասութիւն աղքատին հրամայեաց լնուլ, այլ եւ առաւել եւս բազմաց: Որդ զայս հրաման ունիս յԱ̅յ, եւ դու զփոխն եւս կամ տաս չարաչար վաշխիւ, եւ կամ փակես անօրէն եւ անա̅ծաբար: Այլ անամօթիս եւս առել՝ եթէ փոխ առնուս. զայն քաջ սիրես, եթէ տամ մին՝ եւ երկուս առնում, քան եթէ ոչ տամ: Իսկ նա զժամուն վարձնան կամք փարատել, եւ առ նեղութեանն յանկամաց առնու. բայց դու եթէ Ա̅ծապաշտ ես՝ հայեաց 'ի պատուիրանս Ա̅յ, զի ձրի իսկ հրամայեցաւ տալ տարակուսելոյն, եւ թափել 'ի պահանջողաց բռնութենէն. զի եւ դու 'ի թշնամոյն զերծանիցիս, որ հանապազ յաշխատութեան պահէ զքեզ՝ ժողովել եւ ապրել[1] եւ զանձել զայլոց ինչս, եւ վայելել եւ ոչ երբէք. զի ոչ ակն տեսանելով յագի, եւ ոչ արծաթասէրն ժողովելով եւ առնլով զայլոց: Գողժոխք են անձինք ագահաց, եւ ոչ երբէք շատանայ, եւ ոչ երբէք ասեն շատ:

Ընդէ՞ր տարածանիս. յաղագս է՞ր անօրինիս, ով թըշուառական. զի՞ ժողովես զանպտղութիւն արծաթոյն տուիթ յաւիտենական գեհենին: Գիր դու առաջի աչացդ զՔրիստոսի դատաստանն. զի՞նչ պատասխանի տայցես՝ յորժամ զքեւ շուրջ գայցեն զրկեալքն 'ի վաշխից ամբաստանելով զքէն առ դատաւորին. զի՞նչ առնիցես, ով թշուառական, իւ ապաշխարեսցես: Անդ ոչ աղօթք, ոչ ինչք, ոչ մեծութիւնք. անապատ ես 'ի սիրելեաց, հեռի յօգնականաց. առանց խօսնակի, առանց պատասխանւոյ. անմնչեցեալ, դրատում, տխուր, միայ-

[1] Յայլում օրին. պահել:

նայցեալ, առանց համարձակութեան. զի ուր և 'ի շուրջ ածիցես զաչս՝ յայտնապէս տեսցես զչարեացն զպատկերս՝ զոր գործեալ իցես. աստի տեսանես զորբոցն արտասուսն, անտի զայրոցն հառաչանան, այլուր զկոփեալն 'ի քէն զաղքատն, զծառայսն զոր չարչարեցեր, զդրացիսն զոր բարկացուցեր. ամենեքեան քեզ 'ի վերայ յարիցեն, և գժնդակ 'ի վերայ չարեաց քոց զհետ քո շաջիցեն հանապազ. զի զոր օրինակ շուք իւր անմեկնելի է 'ի մարդոյն, նոյնպէս և մեղքն անմեկնելի զհետ երթան զոգւոյն. յայտնապէս զկերպարանս բազմութեան մեղացն ցուցանէ ամենայն հրապարակին: Վասն այնորիկ ոչ ոք կարէ ուրանալ անդ զչար գործոցն զպղծութիւնսն. այլ կապի լեզու չարախօս, կարկի բերան անօրէն. դողայ մարմին յանցաւոր, զի իւրաքանչիւր ուրուք մեղք վկայեն զգործելեացն, ոչ բարբառ ինչ արձակելով. այլ որպէս 'ի մէջ օդեացն երևի այծեացն սևութիւնն, նոյնպէս և մեղաւորացն անձինք խաւարազգեցեալք և պատեալք 'ի մէջ լուսազարդեալ հրապարակացն երևեսցին: Դու արդ ընդէ՞ր վասն ծփական կենցաղոյս և կորստական արծաթոյդ մատնիս աններելի տանջանաց և յաւիտենական ամօթոյն. ընդէ՞ր ոչ ուրանաս 'ի չար ախտէն ընչասիրութեան. ընդէ՞ր ոչ հեռանաս 'ի գլթոց վաշխի շահիցն՝ որ զքեզ առաւել քան զանօրէն դատապարտէ 'ի հուր ահեղ հնոցացն:

Այլ ասիցես. եթէ ցրեցից զընչիցն առաւելութիւնն՝ արհամարհիմ, աղքատանամ և կարօտիմ. ո՞չ լուար մարգարէին որ ասէ, եթէ “Ոչ տեսի զարդարն արհամարհեալ, և ոչ զզաւակ նորա թէ մուրանայ հաց”: Այլ թէ և յաղքատանալն հասեր, քեզ լաւ է կողկողել և թափառել, շրջել և մուրանալ յողորմածաց, քան եթէ 'ի դառնութէ անօրէն վաշխից կերակրել: Այլ ունիս ձեռս, ունիս ոտս, ունիս արուեստ. գործեա, վարձեա, սպասաւորեա, և ուտես: Յոլով հնարք են մարմնոյդ դարմանոյդ, եթէ կամիս վաստակել: Ո ի եթէ մրջիմն չնչին ինչ զեռուն է՝ զինքն կարէ կերակրել, և մեղուքն զնշխարս իւրեանց կերակուր թագաւորաց ընձեռեն, որք ոչ ձեռս և ոչ գործիս արուեստից ունին ստացեալ. իսկ քեզ ետ ա̃ծ ձեռս և գործիս և միտս ամենահնարս, անմեղութեամբ հաւասարեա զմնունդ կեն-

ցաղդս ։ Այլ արդ զոր գիտես պատասխանատուութիւն յաղագս .քոյոյ ուղղութեանդ, որում հրամայեցաւ գոր-ծել և տալ ուամ պիտոյ իցէ ․ դու և անձին քում ոչ ես բաւական ։ Այլ մեռանիս ահեղ աղէտիցն յաղագս փո-խոյն վաշխիցն՝ որ հանդերձ մարմնով և հոգւով զքեզ արկանեն 'ի հրացան 'ի հնոց տանջանաց, ուր է լալ ան-դադար և կրճտել զատամունս, յորմէ զմեզ փրկեսցէ շնորհք և ողորմութիւն հոգւոյն սրբոյ ․ որում փառք և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։



# Ը

## ՅԱՂԱԳՍ ՄԽԻԹԱՐՈՒԹԵԱՆ ԱՂՔԱՏԱՑ

Զո՞ր տացից, և կամ զո՞ր պատմեցից, և կամ զո՞ր թողեալ արհամարհեցից. և զոր ոչն կարծեմ կարևոր՝ այն զլեզու իմ շարժէ, և զհոյլս 'ի խորհուրդս իմ ժողովէ: Այլ քանզի կարևոր տեսանեմ զմիտս ճառիս, կամաւ և ես խօսեցայց և պատմեցից զնեղելոցն զվհատութիւնս, զչքաւորացն զչարչարանս յիմարութիւն անօրէնութեան, մինչև առ յոյժ անմտութեան յա̃ծ եւս հայհոյութիւն առնել. և կոչեն զնա աչառող և ակնառու մեծատանց ընչաւորաց: Ասեն. ա̃ծ զմեծատունս սիրէ, և նոցուն աչառի, և զվաստակս նոցա յաջողէ, և ոչ հայի 'ի զրկանս տառապելոցն, այլ արհամարհեալ անտես առնէ: Այսպիսի անօրէն բարբառովք ուրանան զճշմարտութիւնն և զարդարութիւնն ա̃յ, և զստուգագործութ̃ին նորա կարծեցուցանեն անօրէնութեան գործակից. և այսու առաքեն հայհոյութիւն 'ի բարձունս, և խօսին զա̃յ անիրաւութիւն. այսու 'ի ճշմարտութենէն ա̃յ ուրանան, և յանդունդս հերձուածողացն ընկղմին: Զի զճշմարտութիւն արդարութեանն ա̃յ ոչ հըրեայն կարէ ուրանալ և ոչ հեթանոսն. զոր հայհոյողն ամպարշտեալ ուրանայ, և զարթուցանէ զսաստիկ սրտմտութիւնն ա̃յ 'ի վերայ ոգւոցն կորուսելոց:

Այլ արդ ե՞ր խօսիս զա̃յ անիրաւութիւն, ով չքաւորդ և աղքատացեալդ. միթէ զքեզ զրկեա՞ց ինչ ա̃ծ յիւրոցն. ո՞չ ապաքէն մեծատանց և աղքատաց միապէս բարժանեաց իբրև եղբարց՝ աչս ամենեցուն զնոյն, ձեռս և ոտս զնոյն. յարեգակնէ և յօդոյ և յանձրևաց առհասարակ վայելեմք. ամենեքեան յերկրէ և յԱդամայ. ամենեցուն մի մկրտութիւն և մի շնորհք և մի մարմին և մի արիւն Քրիստոսի. ամենեցուն մի երկիր և մի երկինք և մի հիւթ ամենայն: Ահա այս են աստուծոյքն

զոր շնորհեաց հասարակաց՝ աղքատաց և հզօրաց։ Արդ ի՞ւ զրկեաց զքեզ, և եղև աչառող մեծատանց։ Այլ գիտեմ եթէ ոչ ինչ ունիս ասել առ այս. բայց ասես, իսկ ուստի՞ է սմա մեծութիւն։ Ի միտ առ. ոչ եթէ զնա տարաւ ա՟ծ, և եցոյց ինչս բազումս և ետ նմա, և զքեզ զրկեաց. այլ ոմանց յագահութենէ և յափշտակութենէ է մեծութիւն, և ոմանց յանդորր վաստակոց, և ոմանց 'ի հայրենի ժառանգութենէ։

Իսկ ընդ այն զի՞ ես տրտմեալ դու, որ յանընչութեդ ես և յանհոգութեան, 'ի հանդարտութեան և 'ի խաղաղութեան, զիւրաւ և սակաւաւ վարես[1] զկարևոր պէտս մարմնոյդ։ Իսկ մեծատանցն զժուարաւ յօրինեն ճաշս և ընթրիս, և լի բազում հոգովք են վայելք նոցա. և մանաւանդ եթէ 'ի սպասութենէ և 'ի զրկանաց ևս իցեն կերակուրքն՝ խղճիւն հանապազ հաշին և մաշին, և վասն բազում աղբոյ որովայնին բազում մրրիկք երկիւղիւ պատեն զմիտս նոցա. և կարասեան յամենայն կողմանց կայ 'ի վերայ նոցա, կասկած 'ի գողոց, և երկիւղ յաւազակաց. արհաւիրք 'ի զրպարտողաց, տագնապ 'ի հարկահանաց, նախանձք 'ի նախանձողաց, չարախօսութիւնք 'ի թշնամեաց, նենգութիւնք և վարանք յամենայն կողմանց. զի ամենեցուն 'ի նա բացեալ են զաւերանս իբրև վիշապաց, և կամին կլանել. Հատուցեալ են մեծատանց հոգք և տրտմութիւնք քան ըզհանգիստ և զուարթութիւն։ Այլ ո՞ր իսկ է մեծատանց ուրախութիւնն յորժամ հանապազ զերկնից անձրևս խնդրեն, զդառնաշունչ ձմերունս հոգան, զպաշտաց դարմանս հոգան, զպաղպանաբեկ հօտիցն հոգան, 'ի հինիցն դողան, ընդ խաշնամահն տրտմին, վասն գանձուցն սգեն, 'ի պակասեալն հալին. ու՞ր և ցեց իսկ տիրէ 'ի վերայ մեծատանց, և երկեղուկս առնէ։ Ո՛չ ինչ ես ասացից վասն ահեղ աւուրն զարհաւիրս և զդատն դառն տանջանացն, որ և աստէն իսկ յայտ է պատուհասանացն տարապարտէ և սաստկայ հանապազ՝ յորժամ ընթերցուածք մարգարէիցն և առաքելոցն յանդիմանեալ կշտամբիցեն զանօրէնս և զագահ մեծատունս։

Արդ ո՞ւր է խնդութիւն մեծատանց, և կամ ո՞ւր մը-

1 Յայլում օրինակի վճարես։

խիթարութիւն՝ որում չքաւորդ բաղձաս և ցանկաս, և ընդ հեշտական և ընդ խաղաղական կեանսդ քո տըրտմիս, և եղկելի և թշուառական զքեզ համարիս, և ըզբազմապատիկ իմաստութիւնդ քո արհամարհես: Որ ոչ երկիւղ 'ի գողոց է քեզ, և ոչ կասկած յաւազակաց. ոչ հոգաս վասն դաշտաց դալարոյ, և ոչ վասն լերանց արօտոյ. ոչ երկնչիս 'ի հովուաց նենգութենէ, և ոչ 'ի գազանացն յափշտակութենէ. ոչ սարսես 'ի բռնաւորացն բռնութենէ, և ոչ 'ի գրաւահարկէ իշխանացն. ոչ նախանձոտքն նախանձին ընդ քեզ, և ոչ զրպարտողքն զրպարտեն. ոչ երկիւղ է քեզ յումեքէ, և ոչ խռովութիւն. ոչ ահ իշխանացն կարէ զարհուրեցուցանել զաղքատն, և ոչ սաստ տերանց. ոչ հանել ոք կարէ յաղքատէն, և ոչ խռովել և սասանել: Մեծատունք խռովեալք և տաղմկեալք, և աղքատն ծաղր առնէ զնոքօք. իշխանք ամբարտաւանեալք զայրագնեն 'ի վերայ ընչեղացն, և աղքատն յոչ ինչ համարի զնոսա. երկիր լի գողովք և աւազակօք, և աղքատն աներկիւղ է 'ի նոցանէ. հրապարակք լի զրպարտողօք և բռնաւորօք, և աղքատն անհոգ է 'ի նոցանէ. դատաւորք գայլացեալք և գազանացեալք, և աղքատն անկլուկ է 'ի նոցանէ. զի վասն անընչեղութեանն 'ի բազում խաղաղութեան և յանհոգութեան են կեանք աղքատին, ազատ յամենայնէ և անկասկած յամենեցունց, աննախանձ և անքէնահան, և անմեղ 'ի բազում ախտից: Ոչ պէտս ունի բազում շինուածոց. ոչ պէտք են նմա փականք աղխից. ոչ տրտմութիւն է 'ի հիւանդութեան աղքատին, և ոչ խռովութիւն և աղմուկ 'ի մահուն. այլ 'ի բազում անհոգութեան են կեանք աղքատաց, և անդրդուագ հանգիստ նոցա: Այս ամենայն ազատութիւնք աստ:

Իսկ զանսպառ մեծութիւն և զփափկութիւն և զանանց բարութեանցն զվայելչութիւնն զոր պատրաստեալ է անդ չքաւորութեանն համբերութեան՝ ո՞ր բերան բաւական է պատմել. զի քան զամենայն վայելչութիւնս թագաւորաց աշխարհիս ցանկալի է և փափագելի: Ոչ թէ միայն տուանց տրամջելոյ աղքատութեանն համբերիցէ, թեթև և անհոգաբար անցանէ ընդ կեանս աշխարհիս. զի խնդրէ զաւուրն միայն զկերակուրն՝ զոր բազում ցանկութեամբ զարհամարհէն իբրև զքաղցրա-

համ ախորժելով ճաշակէ, և նմին անհոգաբար: Իսկ մեծատանցն զմայլելոց և ոչ անոյշքն թուին ախորժելիք, այլ անպիտոյք և տաղտկալիք: Մտանեն նոքա մեծագին գինեաւն, թմբրին և յիմարին. իսկ աղքատն դիւրագին ջրովն զնոյն պէտս ծարաւոյն վճարէ, և ըզգաստ և առողջ քան զարբեցողն գտանի:

Եւ արդ ընդ է՞ր եղկելի և թշուառական զքեզ համարիս. զի զկեանս անհոգս և հեշտականս, և կերակուրս անոյշս և ախորժելիս զաղքատին տեսանեմ քան զմեծատանցն. զի սուրբ են յամենայն նենգութենէ, և յագահաց խռովմանց վայելքն նոցա: Իսկ մեծատանցն փափկութիւնք նախ այն է՝ զի անսուրբ է և անպարկեշտ, և լի ամենայն պղծութեամբ շուայտութիւնք նոցա. և ապա զի 'ի յափշտակութենէ և 'ի զրկանաց ժողովեալ անօրէնութեամբ և ագահութեամբ: Այլ և 'ի բազմաց քրտանց յօրինին սեղանք նոցա. բազում երկիւղիւ, և սակաւ վայելումն. ազգի ազգի հոգք, և սակաւ ինչ հանգիստ, և այն բազում ինչ կասկածանօք. զի սակաւ է կարօտութիւն քաղցելոյ աղքատին, և հեշտ հանգիստ քնոյ նորա: Իսկ մեծատունն չև ելեալ 'ի մահիճն, անդէն պատեն շուրջ զնովաւ խորհուրդք նորա իբրև զթշնամիս և զպատերազմողս, հոգք տանն և ծառայիցն, երկիւղ գողոց և զրպարտողաց, նենգութիւն դրացեայն և իշխանացն. և ամենայն ծուփք մեծութեան պատեալ պաշարեն զնա՝ թէ որով հնարիւք զինչս աճեցուցանել մարթասցուք: Նա դառն են մահիճք մեծատան ագահի, և ամենայն ուրեք տրտմութիւն 'ի վերայ տրտմութեանց յաւելուն. զի տեսանէ վնաս և սխալումն 'ի տանն և տրտմի. տեսանէ սխալումն յանդին և տրտմի. տեսանէ սխալումն 'ի խաշինս և տրտմի, և ամենայն ուրեք իբրև ալիք յալեաց առնուն հոգք և տըրտմութիւնք: Իսկ զանտի տանջանացն և զհրոյ գեհենոյն զի՞նչ ասացից և կամ զի՞նչ պատմեցից, զոր պատրաստեալ է մեծատանց ագահաց և անողորմից:

Եւ արդ, դու աղքատդ և չքաւորդ, ընդէ՞ր նեղիս և տրտմիս և տագնապիս ընդ նաւահանգիստն անընչութեանդ, և խնդրես այնպիսի մրրիկս և ալէկոծութիւն մեծութեան. ո՞չ է մեծ քեզ զի անհոգ ես 'ի գիշերի, և անհոգ 'ի տուընջեան. անհոգ 'ի տան, և անհոգ 'ի

հրապարակս . աներկիւղ 'ի Ճանապարհի, և աներկիւղ յօթևվանի . անկասկած 'ի բռնաւորաց, և անակնածելի յամենայն զրպարտողաց . և մանաւանդ եթէ համբերութեամբ ևս 'ի փոքր ժամանակիս փորձանաց և աղքատութեանդ տանիցիս : Զի մեծ է բաշխել զինչս իւր աղքատաց, այլ մեծագոյն ևս է զանձն աղքատացուցանել խոնարհութբ՟, և գոհանալ զայն : Զայս և տէրն գովէ . "Երանի է, ասէ, աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւնն երկնից" : Զի եթէ չար ինչ էր աղքատութիւնն, և ոչ Քրիստոս յամենայնի զաղքատութիւնն ընտրէր . զի նմա մարթ էր 'ի թագաւորական քաղաքի երևել, և 'ի դստերաց թագաւորաց յղանալ, և յապարանս թագաւորաց ծնանել : Այլ նա յաղքատ 'ի կուսէ երևեցաւ, և 'ի գձուձ քաղաքի ծնաւ, որ ոչ տուն և տեղի օթևվանի գտանէր, այլ օտարանոց քարաքուի, ուր ոչ մահիճք, և ոչ որորան գտանէր . այլ 'ի քարանձաւ մսուրս հանգուցանէր զտէրն ամենայն արարածոց, և 'ի հիւսան խղի մնանէր, և գետնագնաց ճանապարհորդէր . և այնչափ իջաւ 'ի խոնարհութիւն՝ մինչև զոտս աշակերտացն լուանալ ծառայական կերպարանօք : Եւ այսու օրինակաւ ամենեքեան որ կամեցան յերկինս մեծանալ, զաղքատութիւն և զխոնարհութիւն ընտրեցին :

Իսկ դու ընդէ՞ր դողաս յաղքատութենէդ, որով յերկինս վայելես անհոգաբար, և զերկնից անբաւ բարութիւնսն ժառանգես փոխանակ ընդ սուղ ինչ աղքատութեանդ : Քանզի կրկին նեղութիւնք և հեշտութիւնք մարդոյ, մինն աստ, և մինն 'ի հանդերձելումն . զի կամ զյաւիտենական զանանց բարութիւնսն ժառանգեսցես, կամ զաստի անցաւորն . կամ 'ի մշտնջենաւորսն է աղքատանալ և նեղել, և կամ 'ի սուղ ինչ ժամանակիս . կամ աստ է սգալ և լալ, և կամ անդ . կամ աստ է վայելչութեամբ պայծառանալ, կամ անդ . կամ աստ համբերել նեղութեանց և տանել, կամ անդ : Որպէս Եղիա մարգարէն աստ նեղեցաւ և աղքատացաւ, և յերկինս մեծաւ փառօք փառաւորեցաւ . նոյնպէս և Յովհաննէս Մկրտիչն աստ աղքատացաւ, քաղցեաւ և ծարաւեցաւ, և յերկինս զանբաւ բարութիւնսն ժառանգեաց . նոյնպէս ամենայն մարգարէքն և առաքեալքն ան-

ցուոր ներգութեամբք զանբաւ կենացն զվայելչութիւնն ստացան ։ Այլ և հարքն մեր առաքինիք զաղքատութեան կեանս ընտրեցին ․ քանզի գիտէին եթէ յոյժ դժուարաւ է մեծութեամբ աշխարհիս զերկնից մեծութիւնն ժառանգել , և ոչ անցաւոր փափկութեամբս զանանց փափկութիւնն վայելել ․ քանզի ասէ՝ թէ դժուարաւ է ան փափկասիրի զերեսս Քրիստոսի տեսանել , և մեծատանն յարքայութիւնն այ մտանել ․ այլ նեղելոց և աշխատելոց է անտի հանգիստն , և կարօտելոց է արքայութիւն ։ Որք աստ իբրև 'ի բանդի են յաղքատութեան , նոցա 'ի բաց է դուռն արքայութեանն ։ Որ ոչ մեծ անիրաւ է՝ եթէ 'ի բանդէ տառապանաց հանէ զնեղեալսն և զտառապեալսն , և 'ի բանդ դժոխոց արկանէ ․ այլ 'ի սնոտի կենացս հանէ , և յանսպառ ուրախութիւնն հանգուցանէ ։ Եթէ միայն գոհութեամբ աղքատութեանն տանիցին , բազում մեծութիւնք համբարեալ կան յերկինս , և անբաւ ուրախութիւնք ։

Իսկ արդ որ է ուրախութեան պակասութիւն անընչից և աղքատից՝ որ հայհոյութիւն 'ի բարձունս առաքեն , և խօսին զԱյ անիրաւութիւն ։ Այլ ասիցես , թէ յընչիցն բազմութենէ ողորմութիւնս բազումս բաշխէ մեծատունն ։ Այլ և ողորմութիւնք աղքատին առաւել զարմանալի է և ընդունելի քան զմեծատանն ։ Որ յորժամ սիրով որք զտառապեալն տեսանիցէ , և 'ի սակաւ ընչիցն իւրոց՝ տառապելոցն բաշխիցէ և ջամբիցէ , և զքաղցեալս կերակրիցէ , զանցուցանէ զտուրս իւր քան զբազում մեծատանց ․ քանզի ոչ եթէ 'ի չափս տրոցն նայի Այ , այլ 'ի կամս տուողացն ․ և ընդունի զսակաւն իբրև զմեծ ։

Այլ եթէ ինչս ոչ ունիցիս՝ որով և զկարօտեալսն մըխիթարեսցես , տունս ունիս՝ յորում զօտարսն հանգուցանես ․ ունիս ջուր , զոր ծարաւելոցն արբուցանես ․ ունիս գութ և ողորմութիւնս , որով լաս և հեծես 'ի վերայ վշտագնելոցն և ախտացելոցն ախտաժետաց ․ զի ողորմութիւն մեծ է քան զընչիցն բաշխումն ։ Այլ նախանձիցես , եթէ պատարագս և պտուղս հանէ մեծատունն 'ի մեծութենէն ։ Բաւել և յայսմ մարթ է աղքատին զանցուցանել զմեծատանամբն ։ Մատո զանձն քո պատարագ Այ խոնարհութեամբ և անմեղութեամբ ․ “Պա-

տարագ ա̃յ այս է, հոգի խոնարհ,,։ Այլ այս մեծ է քան զողջակէզս խոյոց և զուարակաց. զի մարգարէն զսխալս սուրբ և զհոգի խոնարհ անուանէ պատարագ ընդունելի և հաճոյ ա̃յ։ Նոյնք մանկունքն զանձինս և զհոգիս մատուցին պատարագ ա̃յ։ Այլ եթէ ընդ պտուղս կալոյ կամ հնձանի մեծատանն նախանձիցես, * որ մեծ է քան զամենայն բարեգործութիւնս, քան զպատարագս և զողորմութիւնս և քան զպահոց պնդութիւնս՝ պտուղս ա̃յ հանել յարմտեաց իւրեանց 'ի կալոյ և հնձանէ. որով հոտոտի ա̃ծ 'ի հոտ անուշից, և օրհնէ ա̃ծ զտունս և զվաստակս նոցա։ Այլ տուն յորմէ պտուղք օրհնութեան ոչ ելանեն յեկեղեցիս և 'ի քահանայս և 'ի աղքատաւորս եկեղեցեաց, ա̃ծային օրհնութիւնն ոչ մտանէ 'ի տուն յայն, և ոչ 'ի վաստակս նոցա, և հանապազ 'ի նուաղութեան լինի տունն այն։ Վասն այսորիկ պատուիրեաց ա̃ծ Մովսէսի՝ եթէ "Ո՛չ առաջինս արմտեաց քոց ինձ տացես, զանդրանիկս հօտից քոց, զարջառոյ և զոչխարի ինձ նուիրիցես. զի յամենայն յոր ինչ մխիցես զձեռն քո, աճեցուցից և բազմացուցից,,։ Նոյնպէս և Սողոմոն ասէ. "Պատուեա զտէր 'ի քոց արդար վաստակոց, և հան նմա պտուղ 'ի քոց արդարութեան արմտեաց,,. ասէ. "Լցցին շտեմարանք քո ցորենոյ, և գինւոյ հնձանք քո առաւել բղխեսցեն,,։ Արդ եթէ ինչք չկան քո, ով չքաւորդ, և || հան և դու պտուղ 'ի քոց անդամոց. քանզի յաչաց պտուղ է՝ կուրին առաջնորդել և հանել 'ի դիւր. յոտից պտուղ է՝ կաղին ցուպ մտանել, և զհարկ ոտիցն նորա հարկանել. 'ի ձեռաց պտուղ է՝ անդամալուծին առաջնորդել, և զօսացելոյն օգնել. 'ի լեզուէ պտուղ է՝ զմոլորեալն ուսուցանել, զտրտմեալն սփոփել. 'ի լսելեաց պտուղ է՝ լսել վաղվաղակի եղբօրն հրամանի, և խոնարհութ̃բ կամաց նորա հնազանդել։

Արդ զայս ամենայն ողորմութիւն առանց ոսկւոյ ամենեցուն մարթ է բաշխել, և վարձս առաւել ընդունել քան յընչիցն ողորմութենէն։ Արդ զինչ ունիս ասել, զի և պատարագք և պտուղք և ողորմութիւնք աղքատացն դիւրաւ և ընդունելի է քան զմեծատանցն։ Վասն որոյ բազում ժուժկալութեամբ համբերեցէք

* Զմիջանկեալ հատուածդ որ մեծ է․․ ով չքաւորդ, և || չունին այլք։

նեղութեանց, և գոհութեամբ ընկալարուք։ Ապա եթէ տրտմիջիք և հայհոյիցէք, ընդունելոց էք չար վարձուց հատուցումն. քանզի անսուտ է որ ասէն՝ եթէ են ոմանք որ աստ տանջին և անդ. զի աստ աղքատութ͞բ նեղին, և վասն տրտնջելոյն յարդար դատաւորէն յանդիմանեալ կշտամբին, և հալին և մաշին 'ի հուր գեհեննին. որպէս սոդոմայեցիքն որք աստ տանջեցան, և անդ տանջելոց են։ Արդ մի լիցի մեզ անկանել յայն տեղի տանջանացն և դատապարտութեան։ Այլ զմեղս ապաշխարեսցուք, զաղքատութիւն սիրեսցուք, նեղութեան համբերեսցուք, զվշտաց գոհասցուք, յանընչութեան փառաւորեսցուք, բազում առաքինութեամբ զերկինս ժառանգեսցուք և յանբաւ բարութեանցն վայելչութիւն վայելեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։



Թ

# ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ՔԱՀԱՆԱՅԻՑ ՏԵՍՉՈՒԹԵԱՆ
# Ի ՎԵՐԱՅ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ

Ես լի անթիւ յանցանօք և ունայն 'ի վարուց առաքինութենէ, թափուր 'ի բարեաց, և սոսկ յարդարութենէ, որ յամենայն ժամ յաւելում մեղս 'ի վերայ մեղաց, որ սպանանէ զիս չարաչար։ Եւ արդ ո՛վ ոք միգապատեալ բազում յանցանօք և խաւարազգեաց վարիւք անօրէնութեան զայլս լուսաւորել ժպրհիցի, և կամ հիւանդացեալն մեղօք զայլս առողջացուցանել մարթասցէ։ Մեծ յանդգնութի̃ է ծանրացելոյն 'ի մեղաց՝ ժտել զայլս թեթևացուցանել, և անկելոյն 'ի մտաց՝ ախորժել այլոցն լինելով վարդապետ. և կամ զիա̃րդ մոլեալն անօրէնութեամբ առաջնորդել այլոց բաւիցէ։ Այլ վասն զի սէրն ա̃ծային և յանհնարս հնարի, և ժտի յաղագս փրկութեան, և ջանայ ընդ նեղ և ընդ նուրբ ծերպս մտանել առ 'ի շահ և յօգուտ լսողաց. հայել յա̃ծային բանին զօրութիւնն, երթ դարձո զեղբայրն քո՝ զի քաւեսցին մեղք քո. զի որ ջանայ, ասէ, դարձուցանել զոգի մոլորեալ, զբազմութիւն մեղաց իւրոց փարատէ. և որ հանէ զպատուականն յանարգէն, բերան իմ̃ կոչեսցի։ Զի մեծ շահ և օգուտ և կարևոր՝ ջանալ և խնդրել զընկերացն փրկութիւն։

Եւ արդ աւասիկ հովիւք հօտից և առաջնորդք եկեղեցւոյ՝ ցանկի հօտիդ, տեսանէք զսատանայ հանդիսացեալ, և զՔրիստոս թշնամանեալ, և զեկեղեցւոյ փարախդ արհամարհեալ, և զհետ գայլոց ընթացեալ. և հովիւք հօտիդ լռեալ դադարէք, և ոչ անդադար բողոքէք զպատուէրս պատուիրանացն յամենեցուն լսելիս։ Զօրքդ 'ի տագնապի են 'ի մէջ թշնամեաց, և զօրավարդ անկեալ ննջեն. նաւդ 'ի ծփանս և 'ի մէջ ալեացդ

ալէկոծեալ, և նաւապետդ անկեալ կաս անհոգաբար. գազանք մտեալ զայգիդ ապականեն, և այգեգործդ տեսանես և անտես առնես յարաժամ. գողք մտեալ շուրջանակի զանկիւնսդ փորեն, և պահապանդ 'ի քուն ես և խորդաս. ժողովուրդքդ կարեվէր են 'ի վէրս, և բըժիշկդ չէ 'ի միջի. խաշինք գայլավատնեալ ցրուեցան ընդ խորխորատս, և յառապարս դարահոսեալք, և յանխնայ կոտորեն գայլք և գազանք, և թռչունք մահաբերք գեշ գեշ պատառեն, և անկեալ կան տարատարափ, և հովիւքդ ոչ երևին: Ո՞չ զարհուրիք յահեղ հովուապետէն՝ որ ասէ, թէ "Դատեցայց ոչխար առ ոչխար, և խոյ առ խոյ". և դարձեալ մարգարէիւն ամբաստանէ զքահանայիցն ասելով, եթէ "Քահանայք անարգեցին զօրէնս իմ. զի զսուրբն 'ի պղծոյն ոչ ընտրեցին, և զարատաւորսն յանարատէն ոչ զատուցին. այլ զկաթնն ուտեն, և զասրն զգենուն, և զխաշինս իմ ոչ արածեն, զտկարացեալսն ոչ զօրացուցանեն, զհիւանդացեալսն ոչ բժշկեն. հովիւք էք՝ զանձինս արածէք, և ոչ զոչխարս. և ցանեցից, ասէ, զապականս ամնից ընդ երեսս ձեր: Այլ արդ բարձից զձեզ նոքօք, և առաքեցից 'ի վերայ ձեր անէծս, և անիծեցից զօրհնութիւնս ձեր, և նզովեցից զձեզ. փոխանակ զի ոչ եդիք 'ի սրտի ձերում երկնչել յինէն, և յերեսաց իմոց ոչ խորշեցէք":

Արդ տես զի այսպիսի անէծք և սպառնալիք են յայ 'ի վերայ քահանայից հեղգացելոց. և դու երկիր յահեղ սպառնալեացն այ, և մի ինչ հեղգար 'ի տեսչութենէ հօտիդ, այլ զցայգ և զցերեկ անդադար վաստակել վասն նոցա փրկութեան և քոյոյ սրբութեան: Յիշեա զփոյթն Մովսէսի և Ահարոնի և զՍամուէլի, զի և նոքա դորին հօտի էին առաջնորդք: Յիշեա և զփոյթն Պաւղոսի և Պետրոսի, և նոքա դորին հօտի էին առաջնորդք: Յիշեա և զփոյթ սրբոցն որ յետ նոցա, զի և նոքա դորին հօտի էին առաջնորդք, որք հրով և սրով և զանազան չարչարանօք չարչարեցան վասն հօտին տեսչութեան, և գանիւք և բանդիւք և բազում կըտտանօք ելին յաշխարհէս վասն մեծ սիրոյն այ և ջերմագութ հօտին տեսչութեան: Որ և ձեզ ըստ նմին նըմանութեան ամենայն քահանայից և վարդապետաց պարտ է հանապազ 'ի սոյն վաստակել. և մանաւանդ

որ ինքնակամ կամօք ստացաւ զվերակացութիւն, զոր գովելի է՝ թէ ոչ 'ի պատճառս ինչ կենաց անձինն իմացաւ, և զօրացաւ 'ի հոգւոյն մտանել 'ի գործ մշակութեան վասն բազմաց փրկութեան։ Զի արժանաւորացն և պատուիրանապահացն գովելի է հոգևորապէս ցանկալ վերակացութեան յաղագս առաւել սիրոյն ա̃յ․ որպէս ցՊետրոս ասէր․ “Եթէ սիրես զիս առաւել քան զդոսա, արածեա զոչխարս իմ„․ և Պաւղոս ասէ․ “Որ վերակացութեան ցանկայ, բարւոյ գործոյ ցանկայ„, և ոչ չարի։ “Այլ ուսցին և մերքն բարեաց գործոց վերակացու լինել, զի մի անպտուղ լինիցին․ զի այն է բարի և օգտակար մարդկան„։ Զի քան զարեգակն ճառագայթիւք լուսաւորեալ՝ առաւել ևս մեծ է զմոլորութիւն մեղացն փարատել։

Այս է կարևոր ա̃յ, և առաւել քան զամենայն առաքինութիւնս․ վասն այսորիկ ասէ՝ թէ “Երիցունք կրկին պատուոյ արժանի եղիցին, և մանաւանդ որ վաստակեսցին բանիւ և վարդապետութեամբ„։ Զի մեծ և անհանգիստ է ջան քահանայութեան, և շահաւոր շնորհք վարդապետութեան․ բժիշկ հոգւոց է քահանայն և գործակից գործոցն ա̃յ։ Աստուած արար զմարդն կամաւ 'ի բարի և 'ի չար, և քահանայն զկամս ուղղեալ՝ զարդարէ գործովք առաքինութեամբ․ ա̃ծ զլնութիւնն ստեղծ, և նա ա̃ծածանութեամբն[1] լուսաւորէ, և հեռացուցանէ յամենայն սատանայական խաբէութենէ, և մերժեալ փարատէ զմէգ մոլորութեան և զխաւարն անգիտութեան․ և ծանուցանէ զարարիչն արարածոց, և պարգևիչ ամենայն բարութեանց, և լիութիւն ծովու և ցամաքի․ և լուսաւորեալ ճշմարիտ հաւատովք, և ուղիղ վարուք առաքինութեան, և առաջնորդէ ա̃ծասիրացն յառաքինութիւնս և յուրախութիւնս։ Վասն որոյ և բազում պատուօք պատուին, և լուսաւոր պսակօք պայծառանան։

Եւ արդ ամենայն որ ունի զվերակացութիւն քահանայութեան, պարտ է ջան մեծ և վաստակ անհանգիստ ցուցանել վասն հօտին փրկութեան․ զի եթէ Յակովբ վասն անբան ոչխարացն 'ի պաղոյ ցրտանայր, և 'ի տօթոյ տապանայր, և քուն յաչացն մերժէր, որչափ ևս

[1] Այլ օրինակք ա̃ծածանօթութեամբն։

առաւել քեզ պարտ է բանաւոր հօտիդ վաստակել և տքնել անդադար միշտ, և դողալ և հոգալ հանապազ, և ջերմագութ գորովով առաւել քան զհայր գթած և քան զմայր մատաղածին խնամել և սիրել, և խնդրել ոգւոցն նոցա փրկութիւն, և հանապազ ուսուցանել բանիւ վարդապետութեամբ, և որ առանձինն և որ 'ի մէջ ժողովրդոց: Այլ զոր բանիւք ոք ուսուցանէ, նախ գործովք պարտ է կատարել. զի չէ ինչ շահաւոր բան առանց գործոց. "Սկսաւ Յիսուս առնել, և ապա ուսուցանել". և "Որ արասցէ ինքն և ուսուսցէ այլոց, նա մեծ կոչեսցի յարքայութեանն երկնից":

Ի միտ առ, զի ճրագունք 'ի լուցելոյ ճրագէ լուսաւորին, և ոչ 'ի խաւարելոցն. և ժողովուրդք 'ի ձեռն սըրբոցն սրբին, և ոչ յաղտեղացելոցն մեղօք. զի քահանայն իբրև ակն 'ի մարմնի է 'ի մէջ ժողովրդոց, և պարտ է զամենեքումբք նայել և յարդարել և մաքրել զամենայն աղտեղութիւնս մեղաց: Իբրև ճրագ է 'ի վերայ աշտանակի, և պարտ է զխաւարն թանձրամած փարատել, և զամենայն տունս լուսաւորել: Այլ դէտ է և պահապան, և պարտ է հանապազ բողոքել, զի մի եկեալ թշնամին սրով մեղացն վիրաւորէ, և արիւն սպանելոցն 'ի ձեռաց քոց խնդրեսցի: Բժիշկ ես վիրաւորելոցն 'ի սատանայէ. հանապազ լուա և պատեա և յարդարեա: Աղ ես համեմիչ. սրբեա զամենայն նեխութիւն մեղաց: Աղբիւր ես փրկութեան. զամենեսեան լուա և մաքրեա 'ի չարեաց: Հովիւ ես հօտից. զգոյշ լեր 'ի գայլոց: Առաջնորդ ես ժողովրդոց. դիտեա որպէս առաջնորդես. ահա համարք կան և պատիժք և ճշգիւ քննութիւն:

Քահանայ, զգոյշ լեր երկիւղիւ. զի չէ ինչ ընդվայր զմարդն ստեղծեալ, և ոչ 'ի կամս են կեանք աշխարհիս. խնդիրք են յածող աչաց, քննիչք են անպարկեշտ լսողաց, պատիժք դատարկ բանից, և պահանջումն անդէպ խորհրդոց: Զի եթէ ասել զեղբայրն յիմար կամ մորոս՝ դատապարտէ, զինչ ևս այլ մթերք մեղաց մեծից գործիցեն. և եթէ ակնարկելն պոռնկութիւն գործիցէ, ո՞րչափ ևս առաւել գործն այլիցէ. եթէ երդնուլն 'ի սատանայէ է, ո՞րչափ ևս առաւել որ սուտ երդնուցուն. և եթէ ամբոխելն և աղաղակելն վնաս գործէ, ո՞րչափ ևս առաւել ոխս պահելն տանջիցէ 'ի գեհենին.

և եթէ ցանկանալն ապականէ, որչափ ևս առաւել եթէ զգործն ցանկութեանն կատարիցեմք. և եթէ չարակնելն չարախօս սատակէ, որչափ ևս առաւել նախանձն և ոխալն. և եթէ զիւր ինչս չբաշխելն դատապարտէ, որչափ ևս առաւել որ զայլոց զրկիցէ. և եթէ զխոտանն մատուցանել այ՟՝ նզովս իբրև զԿայէնն ընդունի, որչափ ևս առաւել որ 'ի զրկանաց մատուցանէ. եթէ զաղտ զեղխօրէն խօսելն վնասէ, որչափ ևս առաւել քսելն նենգութեամբ. և եթէ որ զընկերն բամբասէ՝ 'ի հուր առաքի, որչափ ևս առաւել որ զքահանայն և զվարդապետն բամբասեն. և եթէ պահարանք և սիրնկոնք[1] 'ի կռապաշտութիւն տանին, որչափ ևս առաւել յուռութք և հմայք դիւականք. և եթէ ագալն վասն մեռելոց հեթանոսութիւն է, որչափ ևս առաւել կոծել և փետել. և եթէ որք լկտին և ծիծաղին՝ որպէս զորամն 'ի հուր արկանին, որչափ ևս առաւել որք 'ի թատերսն ընթանան. և եթէ առանձին զարդարելն չէ գովելի, որչափ ևս առաւել որ 'ի տեսիլս հրապարակին պճնիցի. և եթէ զրկելն 'ի սեղանն դատապարտէ, որչափ ևս առաւել խորելն և գողանալն յեղզօրէն. և եթէ յամել 'ի գինւոջն պատուհասէ, որչափ ևս առաւել շուայտութեամբ զեղխեալսն և զորկորստութեամբ արբեալսն, զոր հին և նոր պատուիրանք պատուհասեն:

Արդ տես, զի այս ամենայն և որ ինչ նման է սոցին՝ 'ի տանջանսն դատապարտեն զգործելիսն: Արդ դու որ վերակացուդ ես եկեղեցւոյ՝ եթէ ծուլասցես ինչ, և ոչ զգուշանայցես զայս ամենայն ջերմիւ խրատել և քննել, գիտեա՝ զի արիւն կորուսելոյն 'ի ձեռաց քոց խնդրեսցի: Արդ եթէ անձին տանջանաց ոչ ոք կարէ հանդուրժել, որչափ ևս առաւել այնքան ոգւոցն լինել պարտական. յո՞ր խաւար երթայցէ, և կամ քանի՞ գետք հրահոսք իցեն նմա բաւական, և քանի՞ գուբք խաւարայինք: Այլ զգոյշ լեր, հանապազ բողոքեա, աղաղակեա անդադար, քննեա և լուր զամենայն. կարդա փութով և խրատեա. զոմանս սաստիւ, զոմանս աղերսիւ, զոմանս փափագելի արքայութեանն. փափկութեամբն յորդորեա. զոմանս չար ահեղ տանջանացն երկիւղիւն հիացո. զոմանս 'ի մէջ եկեղեցւոյ խրատեա, զի այլքն

1 Այսպէս յօրինակին. յայլ օրինակսն չիք ամբողջ յօդուածն:

ուսցին. զոմանս առաձինն յանդիմանեա, զի մի 'ի բազմաց ամօթոյն ուրացեալք՝ զյանդիմանութիւն արհամարհիցեն. և եթէ արհամարհիցեն իսկ, դու մի աղաղակաւ հակառակիցիս, զի ծառայի տեառն չէ պարտ հակառակող լինել, այլ հեզ առ ամենեսին, զի թերևս տացէ նոմա ապաշխարութիւն:

Բայց դու մի մեծարու ինչ զքեզ համարիցիս. այլ արհամարհեա զփառս աշխարհիս. անարգեա զսուտակասպասացն զպօռլութիւնն. յիշեա զպատուհասն զԳեբովզէի՝ որ զգովութիւնն ընկալաւ: Յաղագս որոյ և դու մի ինչ անձինդ շուք դնիցես, և մի պատիւ ինչ քեզ որոներ. այլ պաշտեալ զամենեսեան սպասաւոր լեր ամենեցուն, ծառայ զքեզ անուանեա: Յիշեա և զծառայելն Քրիստոսի, զդենջակին ածածանելն, զջուրն 'ի կոնքն արկանելն և լուանալ զոտս աշակերտացն, ոչ մարդ զմարդոյ, այլ ա͞ծ զմարդոյ. որ է Ճշմարիտ խոստովանութիւն և խոնարհութիւն և սէրտ ծառայութիւն. «Ոչ եկն պաշտօն առնուլ, այլ պաշտել»: Այս է քո վարդապետն, և ոչ հեծեալքն և մեծարեալքն: Արդ դու նմա լեր նմանող, և հօտք քո քեզ նմանեսցեն. որպէս և Պաւղոս ասէ. «Նմանողք եղերուք ինձ, որպէս և ես Քրիստոսի»: Ահա դու նոյն ինքն Պաւղոս ես՝ որ քարոզես, և նոյն ժողովուրդ որ ուսուցանես. և ահա մարդ էր քո նմանող 'ի Կիւլիկեա գաւառէ 'ի Տարսոն անուն քաղաքէ. և չունէր ինչ աւելի քան զքեզ, բայց միայն զյօժարութին և զվաստակսն որով զշնորհս հոգւոյն սրբոյ ընկալաւ. որ և քեզ չէ ինչ արգել, այլ միայն յօժարել և վաստակել, և զշնորհս հոգւոյն սրբոյ ստանալ:

Արդ մի ինչ պատճառեր, և ընդ այս և ընդ այն ինչ բազբաղեր. բայց միայն արթուն լեր աղօթից և փոյթ վարդապետութեան. ըստ նմանութեանն Պաւղոսի ընդ հիւանդոսն հիւանդացիր, 'ի մեղուցելոյն վերայ ողբա, ընդ գայթակղելոյն տրտմեա, զտկարացելոյն զօրացո, և ցոյց զջան նոցա, հատ զծով և զցամաք վասն նոցա: Ի վաստակս մի վհատիր, յամօթոյ մի լքանիր, 'ի բանից մի ակնածեր. այլ թէ և սովամահ և ծարաւահատ եա հասանէ լինել վասն նոցա փրկութեան, ընկալ խնդութեամբ: Զի ոչ որկորստութեամբ պէտ եղև մշակարէ, և ոչ արբեցութեամբ առաքեալ. այլ նեղեալք և

չարչարեալք յամենայն ցանկութեանց. որ և քեզ պարտ է լինել նմանող քաջացն և առաքինեաց, և ոչ գայլացելոցն հալուաց՝ որք անուամբ միայն են հովիւք, և 'ի հաւատոյն գազանաբար յարձակին և գայլաբար կոտորեն և ցրուեն և կորուսանեն. և ոչ զհոգս ինչ հոգւոցն հօտին, և ոչ ընդ մեղայն նոցա վարանին: Ոչ խնդիրք են զողոցն, և ոչ համարք տառնկացելոցն. ոչ քննութիւն բամբասողացն, և ոչ փոյթ է զարթեցելոցն ինչ. ոչ դիւթական հմայիցն են պատժողք, և ոչ յուռթոցն պահանջողք. ոչ դիւական թատերացն են անարգիչք, և ոչ հեթանոսական լալեացն են խափանիչք. ոչ զնախանձոտն յանդիմանեն, և ոչ զոխապահսն թշնամանեն. ոչ վասն չարեաց ինչ սաստեն, և ոչ վասն հեզգութեանց ինչ պատուհասեն. ոչ յողորմութիւն զոք յորդորեն, և ոչ յաղօթս փութացուցանեն, և ոչ ամենևին զոք վասն ուղղութեան տրամեցուցանեն: Այլ զամենայն փոյթ 'ի մարմնաւորսն ևեթ ցուցանեն. իբրև պատճառանս ինչ կենաց իմն աշխարհիս ստանան զքահանայութիւնն, յաղագս մարմնոյ հեշտութեան, վասն ուտելոյ և ըմպելոյ, և գինւոյ ընչից, յաղագս պատուի և գահերիցութեան և սատանայական մեծափառութեան: Վասն որոյ ոչ որբոյն ողորմին, և ոչ յայրին խնայեն. այլ պատժովք մեռաս խնդրեն, և պատուհասիւք ինչս ժողովեն յանուն եկեղեցւոյն. բռնութեամբ վարին, և իշխանութեամբ հրամայեն, և քահանայական ինչ ոչ երևին. և ոչ զՊետրոսին երբեք ածեն զմտաւ՝ թէ "Արածեցէք որ 'ի ձեզ հօտ է յԱյ, վերակացու լինել մի իբրև ակամայ, այլ կամաւ ըստ Այ. մի զօշաքաղութեամբ, այլ յօժարութեամբ. մի իբրև տիրելով 'ի վերայ հօտին, այլ լինել օրինակ գործոց բարութեանց": Զի 'ի ժողովրդոցն, ասէ, թէպէտ և բիւր անգամ անկանիցին, կարեն հասանել ներելոյ և թողութեան. իսկ վարդապետ ոք եթէ զնոյն ախտ ախտանայցէ 'ի ժողովրդեանն, յամենայն պատասխանւոյ զրկեալ գտանիցի, և զվերջին պատժոցն տացէ զտոկոսիս. զի կարի դժուարաւ է ապրել առաջնորդացն մեղուցելոց:

Վասն որոյ և դու հովիւդ հաւատարիմ, լեր առաքելական հրամանին, և մի նմանիր պղծոցն և կորուսելոցն զորս հուրն պրկելոց է. որք զանուն միայն հո-

վուացն ունին, և զյափշտակութիւն գայլոցն յափշտակեն· ընդ որս համարս տալոց են չարաչարս, զի ուսուցեն և խրատեսցեն ըստ հաճոյիցն այ։ Այլ 'ի կամս անձանց իւրեանց շրջելով՝ անկան կերակուր չարաժամնի գազանին՝ որ կարեվէր վիրաւորէ, և չարաչար սպանանէ։ Յիշեա և զԵղի· Թէպէտ և վարս անարատս ունէր, այլ քանզի զօրէնսն այ տեսանէր և անտես առնէր, անհնարին վրիժուց պատժեցաւ։ Այլ դու միշտ խրատեա, և վաստակեա անդադար վասն հօտիդ փրկութեան, զի և հովիւդ ապրեսցիս 'ի պատժոց սատուհասից։ Ի միտ առ՝ զի և զգազանակերսն և զգողահանսն տուժիս 'ի հովուացն, և զդրոշմն և զմորթ մեռելոյն ճշդիւ պահանջեն, և զհամար շաղղակեր անդամոցն խնդրեն· և որ ոչ զամենայն հաւատեաւ 'ի մէջ բերիցէ և վկայիւք հաւատարմացուսցէ, սաստիկ պատժոց լինի պատժապարտ, և լի բազում ամօթով մերժի 'ի հօտէն։ Այլ արդ եթէ վասն անբան ոչխարացն այնպիսի խնդիրք և պատիժք պահանջին, որչափ ևս առաւել վասն հոգւոցն կենդանեաց, ընդ որոց և Քրիստոս մեռաւ, ահեղ համարս 'ի քահանայիցն պահանջիցէ։ Թերևս սակաւիկ ինչ ծուլասցեն վասն բանաւոր հօտին տեսչութեան· վասն զի ճշդիւ են համարք և անհնարին են տանջանք, որք առաջնորդութիւն ստանան և ոչ առաջնորդեն։

Տես թէ քանի՞ մահուց պարտապան է զօրավարն 'ի թագաւորէն՝ թէ զզօրսն առեալ յապրեցուցանել, և 'ի ծուլութենէ 'ի սուր մատնեսցէ· և կամ դէտ՝ որ ոչ զգուշացոյց, ո՞չ ապաքէն ամենայն արիւն սպանելոցն 'ի ձեռաց դիտին պահանջեսցի։ Այլ որք առնուն աւանդ 'ի թագաւորաց, և սակաւ ինչ անտի կորիցէ, սաստիկ պատժոց պատուհասին։ Տես և զծառայիցն զպատիժս որք յարքունեացն վնասեսցեն· հայեա և ընդ պահապանս հօտից, զի փոսս փորեն և կարս ձգեն և ղամբարս դնեն, և շունք շուրջ զհօտիւն շրջին՝ զի մի գազանաբեկ լինիցին· և եթէ սակաւ ինչ ծուլասցին և քնոյ զանձինս տայցեն, գայլք և գողք դարանակալք մտեալ 'ի հօտիցն յափշտակեն և ցրուեն և վիրաւորեն։ Այլ արդ տես որչափ ևս առաւել է մարդ քան զոչխար· և եթէ անբան ոչխարացն նոյնքան պիտոյ է զգուշութիւն

յերևելի գայլոցն յափշտակութենէ, քանզի ես զգուշալի պահպանութիւն ոգւոց մարդկան սրտից իցէ յաներևոյթ նետից սատանայի, որ գումար հասեալ կայ 'ի վերայ, և պատեալ պաշարէ զամենեսեան վարմիւք և ցանցիւք, և յածի շրջի զամենեքումբք, և նետս իբրև յամպս տեղէ 'ի խորհուրդս մարդկան, յոմանս ագահութիւն, յոմանս այլազգրկութիւն, յոմանս պոռնկութեամբ, յոմանս շնութեամբ, յոմանս գողութեամբ, յոմանս ատելութեամբ, յոմանս սպանութեամբ, յոմանս նախանձու, յոմանս ոխակալութեամբ, յոմանս բամբասանաց, յոմանս բարկութեամբ, յոմանս նենգութբ̄, յոմանս մեղմեխանաց, յոմանս չարակնութեան, յոմանս չարաբարութեան, յոմանս գեղատուութեան, յոմանս վաճառաց զրկութեան, յոմանս վաշխաժողովութեան, յոմանս չափոյ և կշռոյ նենգութեան, յոմանս դիւթոց և յուռթաց և դիւթութեան, յոմանս թատերասիրութեան, յոմանս պճնողութեան, յոմանս սատանայական սգոյ տրտմութեան, յոմանս անյուսութեան, յոմանս անհնազանդութե̄, յոմանս անժուժկալութեան, յոմանս անհաւատութեան, յոմանս սնափառութեան, յոմանս ձանձրութեան, յոմանս մոռացութեան, յոմանս ստութեան, յոմանս հայհոյութե̄, յոմանս քինահանութե̄, յոմանս երդմնակերութեան, յոմանս ստախօսութեան, յոմանս որկորստութեան և արբեցութեան և ամենայն զօշաքաղութեան և ամբարտաւանութե̄ և ամբարհաւաճութեան և պղծութեան, և այլ ևս ախտից բազմութեան՝ զոր եկեալ հոսէ սատանայ 'ի սիրտս ամենեցուն, և կարեվէր վիրաւորէ, և չարամահ սպանանէ :

Դու քո զայս ամենայն տեսեալ անտես առնես և անփոյթ, և հեղգաս և ոչ լաս և ոչ ողբաս զայնչափ վիրաց բազմութիւն : Սարսեա և սոսկա յահեղ բեմբէն երկիւղէ, թէ որո՞վ աչօք և երեսօք զտէրն փառաց տեսանիցես . և քանզի գլուխք պատժոց և պատուհասից են բաւական վասն քոյոյ ծուլութեան : Այլ երկիր 'ի հովուապետէն, զարթիր 'ի ծուլութենէդ, և առ զնախանձն Փենեհեզի . խոցեա զսատանայ և զդևս, վիրաւորեա զնոսա սուրբ հոգւովն . հալածեա զընակիչս բանսարկուին . ցրեա զզօրս սատանայի . խորտակեա զաղե-

ղունս չարին, և դարձո զնետս 'ի նոսա. բարբառեա զբանս վարդապետութեան, և արա հօտի քում զեղողորմութեան՝ ծերոց, արանց և կանանց, ծառայից և տերանց, հիւանդաց ախտացելոց. և մի՛ ինչ ամենևին դանդաղեր և դատարկանար, այլ անդադար վարդապետեա: Պետ ես, աղաղակեա. տեսուչ ես, յանձանձեա. առաջնորդ ես, յեկեղեցի հետևեա. հովիւ ես, յուղիղ հաւատս արածեա. բժիշկ ես, զվէրս մեղացն բժշկեա. նաւապետ ես, զնաւդ զերծո յալեկոծութենէդ: Աւանդ ստացար, և համար ունիս տալ՝ թէ և սուղ ինչ հեղգայցես: Այլ երկիր 'ի հովուապետէն, և խնդրեա զբանաւոր հօտս քո զկորուսեալն, և զամենեսեան ժողովեա. պարսպեա խրատու վարդապետութե. զթշնամիսն ընդ այ հաշտեցո. զվարաժամնեալսն 'ի սատանայէ միաւորեա. զհեռացեալսն յեկեղեցւոյ մերձեցո. զվեհերասան յաղօթից 'ի փոյթ յորդորեա. զկորուսեալսն 'ի Ճշմարտութենէ խնդրեա. զմոլորեալսն յարդարութիւն դարձո. զհիւանդացեալսն յախտից թշնամոյ բժշկեա. զվիրաւորեալսն 'ի սատանայէ առողջացո. զգլորեալսն անօրէնութեամբ՝ կանգնեա. զխաւարեալսն անգիտութեամբ՝ լուսաւորեա. զօտարացեալսն 'ի պատուիրանացն այ ընտանեցո. զաղտեղեալսն կռապաշտութեամբ՝ լուսաւորեա. զմեղուցեալսն ապաշխարութե արդարացո. զքաղցեալսն 'ի մարմնոյն Քրիստոսի կերակրեա. զծարաւեալսն արեամբն Քրիստոսի արբո: Եւ զամենեսեան արժանաւորս արա 'ի վերին քաղաքն մտանել այսպիսի գործովք առաքինութեան. 'ի վարս պարկեշտս յորդորեա. 'ի հաւատս ուղղափառս զօրացո. ըզխոնարհութիւն և զհեզութիւն հրամայեա. զպատուիրանապահութիւն և զօրէնս տեառն կատարել ուսո, զսրբութիւն սրտի և զճշմարտութիւն լեզուի, 'ի ցածութիւն աչաց և 'ի պարկեշտութիւն մարմնոյ. 'ի ժուժկալութիւն և 'ի համբերութիւն յորդորեա. 'ի պնդութիւն պահոց և 'ի յօժարութիւն աղօթից և յառաւելութիւն ողորմութեան ամենեցուն պատուիրեա: Զի այսպէս ամենայնիւ կատարեալք և սրբեալք և լուսաւորեալք կայցէք առաջի Քրիստոսի ընդունել զանթառամ փառաց պսակն: Որում և զմեզ արժանիս արասցէ վայելել, և փառս տալ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# Ժ

## ՅԱՂԱԳՍ ԲԱՄԲԱՍՈՂԱՑ ԵՒ ՉԴԱՏԵԼՈՅ ԶՎԱՐԴԱՊԵՏՍ

Մթերք հոգւոց և աղջամուղջք տրտմութեան դի-զեալ ՚ի վերայ իմ կուտի հանապազ. զի ախտք չար և ահեղ անօրէնութիւնք մտեալ յեկեղեցի իբրև զհուր ՚ի վեր բորբոքեալ, զամենեսեան առ հասարակ այրէ, և ՚ի միտս մեր փոքր կարծեցուցանէ սատանայ. որպէս Մարիամայ եւ բամբասել զՄովսէս ծառայ այ, և ՚ի միտս նորա փոքր կարծեցուցանէր սատանայ, զի մի ՚ի զղջումն եկեսցէ. և վասն այսորիկ ընկալաւ զպատիժս պատուհասիցն: Այլ որպէս Դաթանայն եւ բամբասել զմեծութիւն Մովսի հօր իւրոյ, և ՚ի միտս նորա փոքր կարծեցուցանէր, մինչև ընկալաւ զանէծսն ծառայութեն, նոյն հուր և այժմ մտեալ յեկեղեցի՝ առ հասարակ զա-մենեսեան այրէ և կորուսանէ, նոյնպէս և որոգայթիւք. զի մինն շնայ, և մինն բամբասէ; և երկոքեանն հաւա-սար անօրինեն. մինն գողանայ, և միւսն բամբասէ, և միապէս պատուհասին. մինն արբենայ, և միւսն զար-բեցողն բամբասէ, և համանմանն դատապարտին: Եւ ամենայն իսկ զամենայն բնութիւն մեղացն մինն գոր-ծէ, և միւսն բամբասէ, և միահաւասար դատին և տան-ջին. քանզի ոչ եթէ զգողանալն և զշնալն առաւել ևս անօրէնութիւն ցուցանէ Պաւղոս քան զբամբասելն և զարբենալն, այլ միապէս չարութիւն է. միահաւասար զերկոցունցն ելանելն յարքայութենէն միով բանիւ նը-շանակեալ ասէ՝ եթէ “Ոչ գողք և ոչ պոռնիկք և ոչ արբեցողք և ոչ բամբասողք զարքայութիւնն այ ոչ ժա-ռանգեն„.

Եւ արդ ահա ելից սատանայ զաշխարհս ամենեցուն ա-նօրէն ախտիւն բամբասանաց, և հանապազ անդադար բորբոքին լեզուք ամենեցունց յեղբօրն բամբասանս և ՚ի

հայհոյութիւնս ։ Աներկիւղ և անկասկածելի իմն տեսանեմ զանձինս որք զանօրէնութիւնս զայս գործեն , և ոչ փութան լուանալ և սրբել ապաշխարութեամբ իբրև զպղծութեան և զպոռնկութեան զչարութիւնս ։ Զի եթէ գարշելի 'ի շնութենէ , գարշեա և 'ի բամբասանաց . զի եթէ չար է շնութիւն , հաւասար անէ և զբամբասողութիւնն ։ Այլ առաքեալն օրէնսուսոյց առաւել ևս ցուցանէ զբամբասանացն անօրէնութիւնն ասելով՝ եթէ " Ամենայն որ բամբասէ զեղբայր իւր , զօրէնսն բամբասէ և զօրէնս դատի ,, ։ Եւ ո՞ր քան զայն անօրէնութիւնք իցեն , որ օրինացն այ ոչ առնելի է , այլ տէր և դատիչ լինի ։ Մի է , ասէ , օրէնսդիր և դատաւոր , որ փրկէ և կեցուցանէ և կորուսանէ . դու զի՞ դատիս զայլոց ծառայ ։ Եւ արդ տես թէ քանի՛ մահուց պարտապան է՝ որ զպատիւ և զիշխանութիւն Թագաւորին յափշտակէ , և զդատաւորի դատաստան դատիցի ինքն . զի նա ասէ . " Իմ են վրէժխնդրութիւնք , և ես հատուցից՝ ասէ տէր ,, ։ " Դու զի՞ դատիս զեղբայր քո , կամ զի՞ անգոսնես զեղբայր քո ,, ։

Եւ արդ դու դատեալդ և դատապարտեալդ մեղօք , ո՞չ սոսկաս և դողաս դատել զայլոց դատաստան . որ ոչ եթէ զմարդ ոք արհամարհեցեր և թշնամանեցեր , այլ զած . և զպատիւ և զիշխանութիւննորա յափշտակեալ դատիս զդատաստան նորա , չյիշելով զբանն սուրբ աւետարանին որ ասէ՝ թէ " Մի՛ դատիք , զի մի՛ դատիջիք . զի որով դատաստանաւ դատիք , նովին դատելոց էք ,, ասէ ։ Արգոց է դատել , և անարատից է յանդիմանել . և զայն առանձինն և աղաչանօք , և ոչ հրապարակաւ զմեղս ուրուք յանդիմանել , և կամ գաղտ 'ի նմանէն 'ի լսելիս ուրուք բամբասել ։ Եւ են մեղք ահեղք և անօրէնութիք . զի ով ոք 'ի խեղութեան ինչ իցէ և զայլս խեղութեամբ թշնամանէ , ո՞չ ապաքէն յառաջ քան զնա զինքն թշնամանիցէ ։ Այլ և զի ինքն իսկ թէ և բիւր չարիք ստացեալ ունի , ծածկեալ խաղաղէ . և զեղբայրն թէ և սուղ ինչ յանցանիցէ , սահի , շրջի , և յամենեցուն լսելիս արկանէ , և լինի դառն դահիճ և քննիչ չարաչար եղբօրն յանցանացն ։ Յիւրում ականն գերան կայ և ծածկէ , և զշիւղ ական եղբօրն որոնէ . զոր և Քրիստոս ոչ միայն մեղաւոր ասէ , այլ և կեղծաւոր ևս

կոչէ . « Կեղծաւոր , ասէ , հան նախ զգերանդ յականէ քումմէ , և ապա մատիցես հանել զշիւղ յականէ եղբօր քո » :

Իսկ արդ ո՞վ իցէ քան զնա անամօթագոյն , որ զիւր մեղաց սխալանս ինչ գիտիցէ , և զայն անփոյթ արարեալ հետաքրքիր եղբօրն յանցանացն լինիցի , բամբասել 'ի բազմաց լսելիս : Իսկ զայն ոչ իմացաւ՝ թէ որով ինչ յանցանօք զեղբայրն բամբասիցէ , նովին մեղաց տանջանօքն և ինքն պատուհասի : Իսկ հանապազ անդադար բողոքին լեզուք ամենեցուն յեղբօրն բամբասանս . զի զտանջանս ամենայն մեղացն զոր գործեացն՝ է պատրաստեալ զնոյն տանջանս և բամբասողացն հաւասար : Իսկ արդ ընդէ՞ր այդպիսի տանջանօք դատապարտիցիս , և կամ զի՞նչ 'ի բամբասանացդ օգտեցար . զո՞ր ցանկութիւն կամաց քոց կատարեցեր , և կամ զո՞ր յաձախութիւն ընչից շահեցար . քաղցու ինչ մխիթարութիւն ստացար 'ի բամբասանացդ , եթէ մերկութե ինչ ծածկոյթ : Ոչ այլ ինչ աւելի գտանես , բայց միայն զսուկ զատանայ տեսանես զմիտս բամբասողացն՝ որ հանապազ լցեալ յղացեալ կան չարեօք . իբրև զծննդական երկնեն արտաքս զբամբասանս հոսեալ . յուղղան շրջին , և խօսին զեղբօրէն չարութի : Կամ 'ի չար մտաց իւրոց իմանայ , կամ 'ի յայլմէ 'ի լսելիս յաւելու չարաչար սերմ և զազրացուցիչս , և ատելի ամենեցուն զեղբայրն ցուցանէ , և զբազում 'ի նա գայթակղեցուցանէ . ընդ որոց գայթակղութեան ինքն դատապարտի : Որ չար կարծիս զեղբօրէն հնչեցուցանէ 'ի լսելիս ամենեցուն . որում և ասէ իսկ՝ թէ վայ որ կարծեն , և եղուկ որ զկարծիսն տայցեն . տէր է հատուցանող և դատաւոր , բարեացն բարիս , և չարարարացն չարիս : Դու զի՞ դատիս զեղբայր քո , և զի՞ անգոսնես և բամբասես . ահա դատաւորն առ դուրս կայ , և հատուցանէ իւրաքանչիւր ըստ գործոց :

Իսկ արդ որպիսի՞ տանջանօք դատապարտիցին՝ որ ոչ միայն զեղբարս , այլ և զվարդապետս և զքահանայս բամբասեսցեն . քանզի անօրինեալ և լցեալ են սաստիկ անառակութեամբ , և ամենայնիւ սատանայի կան 'ի հնազանդութիւն : Վասնզի հեղու զամբարշտեալ ըղթոյնս իւր 'ի վերայ , մինչև յահեղ անօրէնութիւնս

կործանէ. որպէս և ժողովրդեանն յանապատին նախ զՄովսէս ետ թշնամանել, և ապա զԱծ արհամարհել. նոյնպէս և հրէական ազգին՝ որ նախ զմարգարէսն կոտորեցին, և ապա զՔրիստոս սպանին. նոյնպէս և Յուդայի նախ զաղքատացն ետ գողանալ, և ապա զտէրն մատնել: Ըստ նմին օրինակի և բամբասողաց նախ զընկերս ետ բամբասել, և ապա զվարդապետս և զքահանայս, որոց բամբասանքն յԱծ ելանեն. որպէս և ինքն Քրիստոս ասէ՝ թէ "Որ զձեզ ընդունի, զիս ընդունի. և որ զձեզ անարգէ, զիս անարգէ": Արդ եթէ որ զքահանայս և զվարդապետս բամբասէ, զՔրիստոս թշնամանէ:

Աշխարհական ես, մի՛ զպատիւ քահանայութեանն բամբասեր և հայհոյեր: Հայեա՛ 'ի Կորխ և 'ի Դադան և 'ի յԱբիրոն՝ որք զպատիւ քահանայութեանն թըշնամանեցին. տես զի բացաւ երկիր, և եկուլ զնոսա, և հուր 'ի բանակս նոցա վառեցաւ: Զգոյշ լեր, զի մի և դու զփորձ նոցա առնուցուս՝ որ զպատիւ քահանայութեան արհամարհես: Քեզ ոչ եթէ զառաջնորդս բամբասել հրամայեցաւ, այլ ունկնդիր լինել և պատուել: "Ունկնդիր լերուք, ասէ, առաջնորդաց ձերոց, և հըպատակ կացէք նոցա. զի նոքա հսկեն վասն ոգւոց ձերոց, և համարս տալոց են ընդ ձեր": Արդ դու հայհոյութեամբ և բամբասանօք պատերազմիս ընդ նմա. տես զի ոչ ընդ նմա, այլ ընդ Այ մարտնչիս՝ որ նմա զպատիւ քահանայութեանն շնորհեաց: Զի ամենայն որ պատուէ զքահանայն, զԱծ փառաւորէ և պատուէ. և որ արհամարհէ, զԱծ թշնամանէ: Զքահանայս քո մեծարեսջիր, և զիշխանս ժողովրդեան քո մի՛ արհամարհիցես: Զի թէպէտ և յանպիտանեաց ոք իցէ քահանայն, այլ Այծ տեսանէ՝ զի վասն նորա և զանարգն մեծարես. զի սրբոյն վասն սրբութեանն պատիւ ածես: Իսկ վասն Այ պատիւ այն է՝ որ զանարգն մեծարիցես. այլ չէ անարգ, զի հրեշտակ տեառն ամենակալի է քահանայն: Արդ եթէ արհամարհես, յԱծ մեղանչես՝ որ ետ զձեռնադրութիւն նորա, և նովաւ ինքն կատարէ զխորհուրդն և զմկրտութիւնն. թէպէտ և նոքա չիցեն արժանի ահեղ խորհրդոյն մերձաւորութեան, այլ վասն փրկութեան ժողովրդեանն չարգելու զշնորհս հոգւոյն

սրբոյ ։ Զի եթէ իշոյն և Բաղաամու գիւթողին խօ-սեցաւ վասն փրկութեան ժողովրդեանն, որչափ ևս առաւել անարժան քահանայիւն ինքն գործէ զամենայն վասն մերոյ փրկութեան ։ Այլ դու եթէ սրբութեանց հաղորդիս 'ի սուրբ խորհրդոյն, քահանային պղծու-թիւնն զքեզ ոչ վնասէ. նոյնպէս և որ պղծութիւն մեր-ձենայցէ, քահանայի սրբութիւնն ոչ օգնէ ։ Ապա եթէ համարիցիս՝ եթէ 'ի ձեռն արատաւոր ինչ քահանայի շնորհք հոգւոյն ոչ իջանեն 'ի պատարագն և ոչ մն ինչ նովաւ գործէ, 'ի միտ առ՝ զի բազում զկարգս եկեղե-ցւոյ և զամուսն քոյոյ քրիստոնէութեանդ ։ Այլ եթէ այդ-պէս իցէ, և պատարագն չէ պատարագ ըստ քում առա-ջոյդ, ապա և ոչ ձեռնադրութիւնն ձեռնադրութիւն, և ոչ կարգ քահանայութեան հաստատուն. ահա յայտ քո քրիստոնէութեանդ մնոտի է, զի ամենեքին ընդ մե-ղօք եմք գրաւեալք ։

Այլ արդ մի ինչ այսպիսի ածեր զմտաւ, և մի քններ զվարս առաջնորդին, և մի զքահանայս և զվարդապետս քո բամբասեր ։ Չունէր հրաման քննել զմեղս ուրուք, թող թէ զքահանային. այլ է քննել և դատել, դու զի՞ քննես և դատես և հայհոյես ։ Զի եթէ զընկեր չու-նէր հրաման դատել և քննել և բամբասել, որչափ ևս առաւել զքահանայս և զվարդապետս ։ Զքո վարսդ քըն-նեա և դատեա, և մի զառաջնորդաց. բայց եթէ 'ի հա-ւատս ինչ անպիտան իցէ, և թիւրս ինչ ուսուցանիցէ, փախիր 'ի նմանէ, մի մերձենար և մի ճաշակեր և մի հաղորդիր ընդ նմա և մի հուպ լինիր. զի որ 'ի նմա հա-ւատս թերին է, և թիւրս ինչ ուսուցանիցէ, եթէ Պօ-ղոս իսկ իցէ՝ կամ հրեշտակ, մի հաղորդիցիս. զի չէ ա-ռանց պատժոց անխտիր հաղորդիլն ։ Զի վասն հաւա-տոց քո է քննել, և վասն վարուց այլ է դատել ։ Այլ ե-թէ 'ի հաւատս առողջ իցէ քահանայն, հնազանդ լեր նմա. վասն վարուց մի ինչ հայհոյեր ։

Աշակերտ ես, մի դատիր զվարդապետն. Քրիստոս է որ քննէ և դատի ։ Զի եթէ ընդ դատարկ բանի հա-մար տալոց եմք, և կամ զեղխայլն մեղաց և անարգ ա-տեցես՝ 'ի հաւր առաքելոյ, իսկ որչափ ևս առաւել պատ-ժոց արժանի համարիցիք, որ զվարդապետն և զքահա-նայն այլ բամբասիցէ հայհոյութեամբ ։ Ոչ եթէ նա ա-

զատ ինչ իցէ 'ի պատժոց՝ որ զխեղճ ինչ մեղաց ունիցի, և 'ի սպասաւորութիւն սրբոյ սեղանոյն յանդգնիցի, այլ ահեղ հրով և աններելի տանջանօք է դատելոյ։ Ո՛չ են ինչ, ասէ, այնչափ մեղք չարաչարք՝ որ կարող են զբոլոր զբարկութիւնն այ զարթուցանել քան զայն՝ որ անարժանութեամբ ոք 'ի քահանայութիւն մերձենայցէ. զի սպասաւոր անարատին պարտ է անարատ լինել ոգւով և մարմնով, զի 'ի ձեռն անարատին արատաւորքս սրբեսցուք։ Իսկ արհամարհողքն 'ի քահանայից՝ որ զխեղճ մնացն ինչ գիտիցեն, և արհամարհանօք 'ի սուրբ սեղանն մերձենայցեն առաջի ահեղ խորհրդոյն, մեծամեծ և չարապատիժս տանջանաց նոցա պատրաստեալ է՝ առնուլ զվրէժս ահագին յարհամարհողաց այ։ Յիշեա զորդիսն Ահարոնի՝ որք արհամարհանօք 'ի սպասաւորութիւն մտանէին, և հուր բարկութեան եկեր զնոսա. յիշեա զորդիսն Հեղեայ՝ որք անարժանութ՟ սրբութեանցն սպասաւորէին, և սուր եկեր զնոսա. վասն նոցուն կորեաւ և Հեղի, և բազումք յԻսրայէլէ սատակեցան. զի եթէ 'ի հնումն այսպէս էր, ո՞րչափ ևս առաւել ահեղ վրէժխնդրութիւն 'ի նորումս պահանջիցի, եթէ ոք անօրէնութեամբ 'ի սպասաւորութիւն ահագին խորհրդոյն մերձենայցէ։

Արդ քահանայք եթէ սուղ ինչ յանցանիցեն, և խղճիւ 'ի սուրբ խորհուրդն մերձենան, այսպիսի են տանջանք. բայց դու չառեր հրաման բամբասել և արհամարհել. զի ոչ զմարդ, այլ զԱծ հայհոյես և արհամարհես։ Արհամարհեցին զՄովսէս ժողովուրդն, և Ած իւր համարեցաւ. արհամարհեցին զՍամուէլ որդիքն Իսրայէլի, և Ած իւր համարեցաւ. "Ոչ եթէ ըզքեզ անարգեն, այլ զիս արհամարհեն". զի ամենայն որ բամբասէ և արհամարհէ զքահանայն, յԱծ մեղանչէ։ Ո՞չ ասեր՝ թէ ստոյգ են բամբասանքս, և ամենայն ոք գիտէ. զի եթէ ստոյգ է՝ ոչ է մեր այն, այլ դատաւորին է քննել։ Տես զի զմահապարտն ոչ ամենեքեան քննեն և դատին, այլ դատաւորքն միայն. բայց դու մի դատիր զուրուք դատաստան, և մի խօսիր զումեքէ, և մի լսեր զումեքէ. և եթէ լուար բան զեղբօրէն՝ մեռցի 'ի սրտի քում, զի ոչ եթէ ծակէ և ելանէ։

Նա արդ մի զմիմեանս բամբասեսցուք. զի ըստ իւ-

րաքանչիւր գործոց կալոց եմք առաջի ա̃յ, և ըստ իւրաքանչիւր գործոց համարս տալոց եմք պատուհասից, և իւրաքանչիւր զիւր բեռն բառնալոց եմք, և ընկերին ոչ ոք կարէ օգնել: Օ՜ի 'ի բազում աղէտից գեհենին, և յահէ հրացան հոսանացն գետոյն յորդութեանց համարի՝ թէ միայն իցէ 'ի տանջանս վասն չարակսկիծ ցաւոցն վարանաց. զի բորբոքումն գազանացեալ հրոյն իբրև. ընչաւոր իմն շանթիւք յարձակի առնուլ զվրէժս յարհամարհողացն ա̃յ:

Իսկ արդ որոց այսպիսի ահեղ արհաւիրք և դառն դատաստանք մնան, պարտ է զիւրաքանչիւր հոգս հոգալ, և զիւրաքանչիւր վաստակս վաստակել, և զիւր մեղսն կոծել, և զիւր յանցանսն քննել, զիւր չարիսն որոնել, զիւր աղէտսն միայն ածել զմտաւ, զիւրն սգալ և հառաչել, զիւրն լալ և ողբալ, և հանապազ զիւր անօրէնութիւնսն բամբասել, և վասն իւր մեղացն չարախօսել, և ոչ զյանցանս ընկերին որոնել, և մանաւանդ զքահանայիցն և զվարդապետացն: Օ՜ի քահանայն ժաւրն քո դեգերեալ կայ յեկեղեցւոջն. պաշտէ և սպասաւորէ վասն քո. ընթեռնու և վարդապետէ վասն քո. ձեռս 'ի վեր ամբառնայ վասն քո. մատակարարէ խորհրրդոյն վասն քո. միշտ պատարագ մատուցանէ հանապազ վասն քո. զուխտ քո ընծայէ ա̃յ. զտօն քո կատարէ հանապազ. զմոլորեալս քո ուսուցանէ և դարձուցանէ. զերախայս քո մկրտէ. մեղուցելոցն վարդապետէ. վասն ապաշխարողացն խնդրէ թողութիւն. վասն ա̃ծպաշտութեան զգուշացուցանէ. զհանգուցեալս քո օրհնութ̃բ յղարկէ. զհարսանիս քո և որդւոց քոց ուրախութեամբ պսակօք յորդորէ և շքեղացուցանէ, և զթշնամին յամօթ առնէ. վասն կենաց և փրկութեան քո աղաչէ. վասն պատուհասից քոց անկանի առաջի ա̃յ յարաժամ. պաղատի վասն քոյոյ փրկութեան միշտ զտէրն քո ընդ քեզ հաշտեցուցանել, ողորմութիւն և թողութիւն մեղաց քոց խնդրէ անդադար. և վասն հոգւոյ քոյ յամենայն ժամ հոգայ, և մարմնոյ քում սպասաւորէ հանապազ, և առաւել քան զարծաթագին կայ քեզ 'ի հնազանդութեան:

Իսկ արդ այսպիսի ծառայութիւն և աւելի քան զայն քեզ քահանայն հարկանէ, և ընդ այսր ամենայնի քա-

համայն հայհոյութիւնս և բամբասանս լսէ. և որչափ հուրք և տանջանք ահեղք և աններելիք քեզ պատրաստեալ մնան. ընդ որոյ երախտեացն պարտ էր քեզ ծառայել քահանայից, աղաչել և մաղթել, անձամբք և որդւովք սպասաւորել, և իբրև յոյժ երկնչել, և իբրև 'ի հօրէ ակնածել, և իբրև յերախտաւորէ պատկառել, իբրև զանձն և զհոգի քո սիրել, զառաքինութիւն նորա սփոփել, և զվաստակ նորա երանել, 'ի վարդապետութիւն զօրացուցանել, զտկարութիւն ինչ մխիթարել, կերակրել և յագեցուցանել, և զամենայն մարմնաւորս նորա հոգալ, զնա միայն հոգևորացն պարապեցուցանել: Զայս և բազում ևս այսպիսի երախտիս պարտ էր հատուցանել քեզ ընդ քահանայից վաստակոցն, և ոչ բամբասանս և հայհոյութիւնս և արհամարհանս անակնածելիս:

Այլ արդ զայս ամենայն լսելով՝ չխնայեցուք [illegible] հնոց հայհոյութեան, դադարեցուք զհուրն արհամարհանաց: Սանձեցէք զլեզուս 'ի չարախօսութենէ. մաքրեցէք և զաչս 'ի յարատ հայեցուածոց. ուղղեցէք զախտս 'ի չար խորհրդոց. ծառայեցէք տեառն երկիւղիւ. պատուեցէք զվարդապետս. հնազանդեցարուք քահանայից. սպասաւորեցէք հիւանդաց. զգեցուցէք զմերկս. լցուցէք զքաղցեալս. սփոփեցէք զնեղեալս. օգնեցէք տնանկին, և անդադար վաստակեցէք աղօթիւք, պահօք և ողորմութեամբ: Այս է ձեզ ճանապարհ փրկութեան՝ որ հանէ 'ի վերին քաղաքն փափագելի յանանց վայելչութիւնս. յորս և մեզ եղիցի վայելել, և փառս տալ հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ այժմ և յաւիտեանս. ամէն:

## ԺԱ.

## ՎԱՍՆ ՍԻՐՈՅ ԵՒ ՄԱԽԱՆԱՑ ԵՒ ՆԱԽԱՆՁՈՒ

Ոչ ինչ այնպէս է որ յաղագս սիրոյ նախագոյնս ինչ խնդրիցէք. զի ուսուցանէ զնոյն ինքն Քրիստոս սիրոյ մեզ վարդապետս, որ ասաց՝ եթէ սիրեսջիք զմիմեանս. եւ եթէ սիրէք զիս, զպատուիրանս իմ պահեսջիք: Զի գլուխ պատուիրանացն սէր է. եւ որ կամի մերձենալ յա͞ծ֊պաշտութի, յառաջ քան զամենայն պատուիրան զսէրն պարտ է ստանալ. «Յայսմ ծանիցեն ամենեքեան եթէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս, որպէս ես զձեզ սիրեցի»: Զի ինքն իսկ սէր է, եւ Յովհաննէս զա͞ծ սէր կոչէ. եւ որ կայ 'ի սէր նորա, նա յա͞ծ բնակէ, եւ ա͞ծ 'ի նմա. զի զհրամանս սիրոյ նորա կատարեաց: Զի սէր եւ 'ի հնումն եւս քարոզէր. այլ 'ի նորումն Քրիստոս եւ զսիրելիս եւս հրամայէ սիրել, եւ զթշնամիս եւս սիրել, եւ զանձն եւս դնել 'ի վերայ սիրոյ սիրելեացն. եւ նա զանձն իւր եդ 'ի վերայ թշնամեաց եւ սիրելեաց, զի զպատուիրանն սիրոյ ոչ բանիւք միայն, այլ եւ գործեամբք 'ի մեզ հաստատեսցէ: Նման որոյ եւ մեք զա͞ծ սրտիւ սիրեսցուք, եւ զպատուիրանս նորա երկիւղիւ պահեսցուք. զի այս է սիրելն զա͞ծ՝ եթէ զպատուիրանս նորա սրտիւ պահեսցուք. եւ պատուիրանք նորա այս են՝ զի ճշմարտիւ սիրեսցուք զմիմեանս. եւ ամենայն որ ճշմարտիւ սիրէ զընկեր իւր, նա պահէ զպատուիրանս նորա:

Այլ այս է ճշմարտիւ սիրելն՝ յորժամ ոչ վասն երախտեաց իրիք սիրեսցուք, եւ ոչ վասն ընտելականի իրիք սովորութեան, եւ ոչ վասն քաղցրահայեաց երեսաց, եւ ոչ վասն ազգի ինչ գթոյ, եւ ոչ սէր փոխանակ սիրոյ սիրեսցուք: Այլ միայն վասն պատուիրանացն Ա͞յ զամենեսեան սիրեսցուք, եւ ընդ ամենեսեան զխաղաղութիւն ունիցիս: Բայց զընչիցն կարողութիւնն կարաւելոյն

միայն բաշխեսցես, իբրեւ վշտացելոց իւրոց անդամոց խնամ ունել աղքատին. վասն զի ամենեքեան անդամք եմք միմեանց, եւ պարտիմք ընդ վշտացելոյն միոյն անդամոյն՝ այլոց անդամոցն վշտանալ ըստ ասելոյն Պաւղոսի, եւ տալ զանձն 'ի չարչարանս վասն սիրոյ ընկերին. որպէս եւ Քրիստոս ետ զանձն իւր 'ի չարչարանս վասն մեր: Ոհ թէ նա որ ա՜ծ էր՝ այնչափ յանարգութիւն էջ վասն մեր եւ թշնամեաց եւ ատելեաց, մեք զինչ պատասխանի ունիցիմք եթէ չսիրեսցուք զմիմեանս ըստ պատուիրանին զոր պատուիրեաց մեզ սիրել զթըշնամիս, օրհնել զհալածիչս, բարի առնել այնոցիկ՝ որ ատեն զմեզ, եւ աղօթս առնել 'ի վերայ հալածողացն: Ոհ սէր ընդ սիրոյ եւ մաքսաւորք հատուցանեն. բայց այն էր վասն պատուիրանին՝ որ զթշնամիսն սիրեսցին. եւ ըստ զօրութեանն իւրում օգնեսցէ ամենեցուն. զկարօտեալսն մխիթարեսցէ. զտրտմեալսն սփոփեսցէ. ընդ զրկելոյն խօսեսցի վրէժխնդրութիւն. անօգնականին օգնեսցէ. հիւանդացելոյն սպասաւորեսցէ. զմոլորեալն 'ի գիտութիւն ածիցէ, եւ զամենայն տկարութիւն եղբօրն լցուսցէ, եւ զինչ եւ զօրութիւն ամենեցուն 'ի կիր արկանիցէ, եթէ հաւատացելոցն է ամենայն ինչ հասարակաց:

Եւ արդ այսպէս սիրել պարտ է զեղբարս քրիստոնէին եւ աշակերտին Քրիստոսի. զի "Յայսմ ծանիցեն ամենեքեան եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս,,: Ոհ քան զօգի մարգարէութեան ընդունել՝ առաւել է սիրելն զեղբայրն, եւ քան զկոչումն առաքելութեան բարձրագոյն է, եւ քան զպատիւ մարտիրոսացն պատուական է, եւ 'ի վեր քան զամենայն առաքինութիւնս պատուեալ երեւի, եւ ամենեւին իսկ իբրեւ զթագաւոր 'ի մէջ ռամկաց պայծառացեալ 'ի վայելչանաց: Ոհ թէպէտ եւ մեծ է վայելչութիւն կուսանաց, բայց առ սիրոյ պայծառութեանն նուազին ամենայն լուսաւորութիւնք առաքինութեան. որպէս 'ի ճառագայթից արեգականն ծածկին ամենայն պայծառութիւնք աստեղաց, ուր ողորմութիւնք լինին առանց սիրոյ:

Եւ արդ զիարդ լինիցին ողորմութիւնք առանց սիրոյ: Յորժամ սնափառութեամբ ոք. ախտիւ 'ի ցոյց մարդկան առնիցէ. եւ կամ նախանձու ախտիւ ոք 'ի գանս

և 'ի բանտս մաշեցայ, և 'ի հուր այրեցայ, ոչ ինչ օգտի. որպէս և Պաւղոս ասէ. “Եթէ ջամբեցեմ զամենայն ինչս իմ աղքատաց, և մատնեցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ„: Զի որ սրտիւ ոք սէր սրբութեամբ ոչ ունիցի, թէպէտ և զհագիս մարգարէութեան ունիցի, և շնորհս առաքելութեան, և բազում խստամբերութեամբ զանձն չարչարիցէ, և բանիւ վարդապետութեամբ զբազումս լուսաւորեսցէ, և հաւատովք նշանս մեծամեծս առնիցէ, և զլերինս փոփոխիցէ, ամենևիմբ յամենայնի ոչ ինչ օգտի. զի սէր աղ համեմիչ է ամենայն առաքինութեան. և ուր սէր ոչ մնանէ՝ ապականի, և արտաքս ընկենուն յարքայութենէն: Որ սրտիւ ոք սէր ունիցի, նորա է ողորմութիւն և անընչեղութիւն. զի հարկ է սիրողին անընչանալ, զի սէր և ինչք 'ի միում անձին ոչ բնակին. զի սէր զինչս թօթափէ կարօտելոցն յօգնականութիւն: Ի սիրոյ հալածական են ագահութիւնք և չարակնութիւնք և նենգութիւնք և թշնամութիւնք, նախանձ և բարկութիւն, ամբարշտութիւն և սնափառութիւն, և ամենայն մախանք ախտից հեռանայ 'ի սիրոյ պահողէն: Այլ ընդ սիրոյն միաւորեալ և կապեալ է խոնարհութիւն, հեզութիւն, քաղցրութիւն, ողորմութիւն, անընչութիւն, անկեղծաւորութիւն, անանձնասիրութիւն, խաղաղութիւն, ճշմարտութիւն, սրբութիւն, անմեղութիւն, բարերարութիւն. և զամենայն առաքինութիւն և զկատարեալ պատուիրանապահութիւնս պահողն սիրոյ կատարէ:

Իսկ որ ոչ սրտիւ 'ի սէր հաստատեալ է, ամենայն չար խորհուրդք սատանայի զեղուն զնովաւ, ամենայն բազմութիւք ախտից. զի սատանայական ախտից գլուխ՝ անձնասիրութիւնն է, և 'ի նմա շարին ամենայն ախտիցն բազմութիւնք. քանզի անձնասէրն ոչ երբէք կարէ ընկերասէր լինել: Իսկ գլուխ պատուիրանին սէր է, և 'ի նմա շարին ամենայն առաքինութիւնք. զի ընկերասիրին չէ հնար զկամս անձին իւրոյ խնդրել, այլ և զամենայն հաճոյս ընկերին նաև կատարել 'ի բարիս, այլ և զանձն ևս տայ 'ի ծառայութիւն վասն պատուիրանին ա̃յ. քանզի գրեալ է՝ եթէ կատարումն պատուիրանին սէր է: Իսկ ամենայն առաքինութիւնք որ առանց սիրոյ են,

փակեցան նոցա դրունք երկնային առագաստին, և լը-սեն զսոսկալի զձայնն զայն՝ եթէ ոչ գիտեմ զձեզ, և մտանիցեն 'ի հուր գեհեննին ընդ պոռնիկս և ընդ մար-դասպանս. «Զի ամենայն, ասէ, որ ատէ զեղբայր իւր, մարդասպան է»: Իսկ որ չարակնեն և նախան-ձին, նա յո՞ր խաւար երթայցէ, և կամ ո՞ւր տուգանիցի, կամ որպիսի՞ տանջանօք խաշիցի և մաշիցի: Քանզի ըն-կերքն ախտից է նախանձ և չարակնութիւն. զի նովաւ անկաւ սատանայ 'ի փառացն, նովաւ եւ Ադամ 'ի դրախ-տէն. և անէծք և քրտունք, փուշ և տատասկ, մահ և մեղք 'ի վերայ ամենայն ծննդոց Ադամայ տիրեցին. նո-վիմբ Կայէն երերեալ տատանէր:

Այլ այժմ բազումք են՝ որ միշտ այրին նախանձու, յորժամ տեսանիցեն զեղբօրն զյաջողութիւնն՝ կամ ընչիւք, կամ արուեստիւ, կամ բանիւ վարդապետու-թեանն յարգեալ 'ի բազմաց. և զայն տեսեալ նախան-ձորդացն հալին և մաշին, և յօդեն զնմանէ բանս բամ-բասանաց, և կան հակառակ կամացն Այ՝ որ զյաջո-ղութիւնն շնորհեաց: Վասն այսորիկ թէպէտ բա-զում ձգունս տանիցի նախանձոտն, և բիւր առաքինու-թիւնս ստացեալ իցէ, և սրբութիւն կուսութիւն ու-նիցի, և պահօք և ամենայն վշտամբերութեամբ զինքն մաշիցէ հանապազ, և խորգով և մոխրով և մշտահեղ արտասուօք ոգայցէ 'ի տուէ և 'ի գիշերի, և ողորմու-թեամբք անընչանայցէ, և նշանս մեծամեծս առնիցէ, և ցանկալեան աղօթիւք և փառաւորութեամբք վերին զուարթնոցն նմանիցէ, այլ և մարտիրոսասցի ևս, և հրով այրեսցի, և 'ի սիրտն նախանձ և չարութիւն ու-նիցի, և քան զամենայն սպանողս և պղծագործս պիղծ գը-տանիցի, և քան զամենայն ամբարշտեալս թաթա-ւեալս մեղօք՝ անիրաւագոյնս: Այլ արդ ո՞ր չարիք ժան-տագոյն իցեն քան զնախանձ և զչարակնութիւն. զի քան զհուր այրիչ է և զսուր սատակիչ, զանձելիս իւր սատակէ: Այլ ո՞վ ոք կարէ համբերել այնմ բոցոյ, և կամ զո՞ր ներելով թողութիւն ունիցին այնպիսի սատա-նայական անձինք: Քանզի և ոչ մի ինչ չարութի՛ նման է նախանձու և չարակնութե՛, զի միշտ 'ի մեղս է. հա-նապազ 'ի տուէ և 'ի գիշերի ոչ դադարէ 'ի սպանութե-նէ, քանզի միշտ բարձեալ կրէ ընդ իւր զչարիս իւր:

Այս արդ ո՞վ կարասցէ փարատել զխաւարն զայն Թանձրամած՝ որ տարածեալ մածեալ ունի զմիտս նախանձոտացն. զի դառն մԹերք նախանձու մարդասպանի ոչ երբէք հեռանայ 'ի սրտից նոցա: Զի Թէպէտ յեկեղեցի մտանիցեն այնպիսիքն, և յաղօԹս և 'ի խնդրուածս մաշիցին, Թէպէտ և արտասուիցեն և ողորմուԹիւնս առնիցեն, ոչ երբէք սրբին 'ի սպանուԹենէ: Արդ զո՞ր ներեալ ԹողուԹիւն ունիցին այնպիսիքն, և կամ որպիսի՞ ինչ ահեղ չարուԹեան կարիցեմք նմանեցուցանել զայնպիսի անմեկնելի անօրէնուԹիւնս. ո՞ր գազան չարաժանի, ո՞ր աղուն խածանող, ո՞ր իժ, կամ ո՞ր քարբ այնպիսի չարագազան Թոյնս ունիցի: Զի և չէ իսկ հնար գտանել անսուրբ և անօրէն անձինս քան զչարակամացն և զնախանձոտացն, զի* միշտ լուցեալ բորբոքի 'ի միտս իւր հոգածուԹեամբն: Դողայ և դեղնի, զի տեսանիցէ զեղբարս իւր և զդրացիս, զի տուն և տղայս ունիցին. և դւք աւերեն զտունն՝ հատուցանեն, կամ վիմօք, կամ հրայրեցուԹեամբ, կամ 'ի ջուր ընկղմելով, կատարելով զկամս սատանայի. զայնպիսին պարտ է արտասուել և ողբալ հանապազ: Զի լաւ էր այնպիսւոյն երկու աչօք կոյր լինել, քան բոլորովին անգամօք 'ի հուրն յաւիտենից առաքիլ: Զի նա եւս քան զհեԹանոսս պղծագոյն երևեսցի, և ըծակից է սատանայի չար նախանձմամբն, և ընդ նմին ժառանգեսցէ զհրացայտ տարտարոսն և զանշէջ գեհեանն:

Այս եԹէ զամենայն բարեգործուԹիւնս և զզանազան առաքինուԹիւնս և զազգի ազգի վարս և զկրօնս յինքն բարձեալ ունի, ոչ օգուտ գտանէ յայսմ ամենայնէ, եԹէ զխաւար ատելուԹեան 'ի սրտին պահիցէ, և զչարակնուԹիւն և զնախանձ: Արդ փուԹա այսուհետև և 'ի բաց փախիր 'ի խաւարամած մեղացդ, և արտասուօք մեղայ տեառն Այ ասա. զի կարասցես լսել 'ի Քրիստոսէ որ ասէ. "Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ արքայուԹիւնն": Որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

* Յօրինակին 'ի բաց անկեալ է Թուղթ մի, յորում էն աւարտ Ճառիս և սկզբնաւորուԹիւն յաջորդին մինչև Բանից, Նա ||: Թերին երկաքանչիւրոցն առաւ բաղդատուԹեամբ յերկուց օրինակաց:

քարբերից դառնութիւն հաւասարէ բարկացողացն ախտ-տից · ոչ դեղք մահաբերք և ոչ հարուածք կարծի նմանն են հարուածոց բարկութեան · ոչ հատուածն սրոյ և ոչ այրեցուած հրոյ կսկծեցուցանեն առաւել քան զբար-կացողացն · և [1] ոչ այնչափ չար են մոլիւնք գինւոյ, որ-չափ բարկացողք գինւոյ յայտնամանէ : Վասնզի դեն բար-կութեանն վառի ՚ի նախանձ միշտ, և պնդէ յանհաշտ ոխակալութիւն, և հանապազ մածեալ պահէ ՚ի վերայ սրտին զխաւարն նախանձու : Այլ զոր օրինակ թիւնա-ւորքն զթոյնն ընդ խերեանս կրեն հանապազ, նոյնպէս և բարկացողքն զզառուամն և զքէն նախանձու · և յամե-նեսին յարձակին իբրև զշունս կատաղիս, և հանապազ խայթեն իբրև զկարիճս, և խածանեն իբրև զօձս, և լցեալ թիւնօքն բարկութեան ոչ կարեն վաղվաղակի խոնարհել առ միմեանս : Վասնզի իժք և ծնունդք իժից անուանին, անհաշտք ՚ի միմեանց, և անհնազանդք : Բազում քանս ձևացուցանեն՝ իւրաքանչիւր ոք զինքն արդարացուցանելով, և յօրինեն առուս բազումս պատ-մութեանց զանձինս իրաւացուցանելոյ · և զխասս կու-տել ՚ի վերայ ընկերին ջանայ ամենեցունց առաջի, կար-ծեցուցանելով զնա մնասակար : Ոչ ի զև նորա տրտմու-թեան ընդէ յանզգջութիւն, և խստացուցանէ զմիտսն յանհաշտաւ անհաւանութիւն, և զսիրտն քարացու-ցանէ լինել ունկնդիր խրատու եղբօրն և գրոց վար-դապետութեան · և յիմարեցուցեալ սատանայի զգայ-ութիւնս նորա՝ ոչ տայ ճանաչել զյանցանս նորա · այլ ՚ի միտս նորա կարծեցուցանէ զնա անմեղ յամենայնի, և զընկերն մնասակար : Նոյնպէս և ՚ի միւսում ընկերին զնա տայ նմա համարել մնասակար, և զինքն արդար յա-մենայնի : Այլ դարձեալ զսա սաստ խստացուցանէ՝ թէ նմա պարտ է քեզ խոնարհել, զի մնասակար է · և զնա անդ ընդէ՝ թէ չէ արժան քեզ նախ նմա հնազանդել, զի անմեղ ես : Այլ այսպէս զերկոսեան թշնամութեանն ՚ի միմեանց հեռացուցանէ սատանայ ՚ի մնալ անզեղջ և անապաշաւ : Նչուրս բազում ծանրացուցանէ զսիրտ եղբօրն, և ամօթ և անարգանս տայ համարել զխո-

1 Երկուք յօրինակացն այսպէս ունին զայս տեղի. և ոչ այնչափ չարչարին մոլիքն ՚ի գինւոյն, որչափ բարկացողն : Քանզի : Եւ երրորդ մի · ոչ այնչափ չարչարին մարմինքն ՚ի գինւէ, որչափ բարկացողն ՚ի գինւոյն յաւելուն : Քանզի :

նարհեա ընկերին . զի եթէ ես յառաջ խոնարհիմ, ա-
սէ , զիս փառասէր ոք կարծիցէ , և զնա անմեղ համա-
րիցին . վասն այսորիկ գազանացեալ անհնազանդի :

Քանզի յորժամ միանգամ զխորհուրդս ընդունէ ա-
նօրէն ախտն բարկութեան , յափշտակէ զմիտսն 'ի նը-
մանէ , և գազանացուցանէ , և ամենևին չտայ իմանալ
զերկիւղն այ , և ոչ զահ ահեղ դատաստանին . այլ հե-
ռացուցանէ յիրաւանց , և զդատաստանն ոչ երբէք ածէ
զմտաւ , և ոչ յիշէ զօր մահուանն իւրոյ և զարհաւիրս
սոսկալի բեմին . այլ ախտեալ մտօքն՝ զկամս անձին իւ-
րոյ կատարեալ : Եւ ոչ ամօթ եղբարցն , և ոչ խրատ
վարդապետաց , ոչ հրամանք պատուիրանաց , և ոչ եր-
կիւղն այ , ոչ փափագանք արքայութեանն , և ոչ ար-
հաւիրք տանջանացն զնա ոչ պատկառեցուցանեն 'ի զեղջ
և յապաշաւ : Այլ և ժտի ևս յեկեղեցին մտանել , և
աղօթս առ այ կատարել՝ որ ոչ ընդունի , և առ այ ոչ
ելանեն : Քեզ ինքն տէրն ասէ . "Եթէ հանեալ ի-
ցես զպատարագն քո 'ի վերայ սեղանոյն , և անդ յիշես-
ցես եթէ եղբայր քո ունիցի խէթ զքէն , թող զպատա-
րագն 'ի վերայ սեղանոյն . երթ նախ հաշտեաց ընդ եղ-
բօր քում , և ապա եկեալ մատուցանիցես զպատարագն
քո" , և ընդունելի է : Եւ իւրաքանչիւր ուրուք ա-
ղօթքն են պատարագք . և անընդունելի են այ , եթէ
ոչ նախ երթեալ հաշտի ընդ տրտմեալ եղբօրն , և ապա
եկեալ աղօթէ առ այ , և ընդունելի է : Այլ և ասէ .
"Արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ" .
զի մի դևքն եկեալ 'ի գիշերին յարուցանիցեն զխռովս քո
առ վաղիւն չհաշտել ընդ ընկերին , և խորհուրդս չարս ,
ոխս և նախանձս , և ազգի ազգի նենգութիւնս արկա-
նիցեն 'ի միտս քո : Այլ մինչ չև գիշերայն հասեալ իցէ՝
երթ հաշտեա ընդ եղբօր քում : Մինչ դեռ յաշխարհի
ես , հաշտեա ընդ ոսոխի քում . մի գուցէ մատնիցես
դատաւորին , և դատաւորն դահճաց , և ոչ ելանիցես :
Սոյնպէս և դու մինչ դեռ օր առաջի կայ , փութա հաշ-
տել ընդ ընկերին , և 'ի վաղիւն մի յապաղեր , զի ան-
ծանօթ են ելք մեր յաշխարհէ , և ոչ գիտեմք՝ թէ ու-
նիմք զվաղիւն ժառանգել՝ թէ ոչ . սակայն ժառանգեմք
զվաղիւն , և ոչ փութամք հաշտել ընդ եղբօրն : Ընդ
հեթանոսս համարեալ եմք , զի անընդունելի իցէ առանց
հաշտութեան ընդ եղբօրն և ընդ ընկերին :

Իսկ որպիսի՜ զառն տանջանս դատեցին՝ որ խիղճ ինչ թշնամութեան ընդ ընկերին ունիցին, և 'ի սուրբ խորհուրդն մերձենայցեն. որպիսի՜ հուր, և որպիսի՜ գեհենք [illegible] նոցա սպասիցեն: Մարմնոյ տեառն հաղորդիս, զԱստուած գողանալ կամիս՝ թաքուցանելով զթշնամութիւն քո ընդ ընկերին: Նոյն և Կայէն գողանալ կամէր զա̃ծ՝ թաքուցանելով զեղբօրն սպանութի. և արդ տես զերերումն տատանմանն նորա՝ զչար խորհրդոյն զպտուղն: Որ 'ի մարմինն տեառն մերձենայ, և թշնամութիւն ընդ ընկերին ունիցի, ոչ մարմին կենարար է նմա, այլ հուր կիզանող, զի դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ: Այլ ամենեք ոչ եթէ վասն փափագելոյ սրբոյ խորհրդոյն փութան 'ի հաշտութիւն ընկերին, այլ աւուրբ բազմօք հեռանան 'ի սուրբ խորհրրդոյն, և զաղաչելն և զհաշտելն ընդ եղբօրն ծանր համարին քան զհեռանալն և զչընդունելն 'ի սուրբ խորհրդոյն՝ 'ի մարմնոյն և յարենէն Քրիստոսի. վասն խոնարհելոյ ընկերին արհամարհէ զխորհուրդն տէրունական. հրաժարելով 'ի նմանէն՝ կարծէ պատիւ համարել ա̃յ չմերձենալ 'ի խորհուրդն: Այլ ոչ իմանայ՝ եթէ առաւել ևս արհամարհէ չփութալով 'ի հաշտութիւն ընկերին վասն սիրոյ փափագելի մարմնոյն Քրիստոսի, զոր և Պաւղոս ասէ, թէ ո՞վ մեկնէ զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի. նեղութիւն թէ մահ, և որ 'ի կարգին է՝ ոչ կարեն մեկնել զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի: Այլ ըղքեզ սակաւ ինչ թշնամութիւն ընդ ընկերին մեկնեաց 'ի սիրոյն Քրիստոսի, և 'ի սուրբ խորհրդոյն մերժեալ հեռացոյց: Օ՜ի թէ թշնամանեաց ոք զքեզ, և դու խոնարհեցցիս վասն պատուիրանին ա̃յ, մի՛թէ զիջաւեցա՞ր ինչ. այլ վարձս մեծամեծս ընկալար: Նարդ և արհամարհեալ ոք զքեզ անուանեաց. այլ դու հող և մոխիր ես ասա զանձն քո: Գձուձ և ցնոտաւոր[1] ոք ըղքեզ կոչեաց. այլ դու ասա. մերկ իսկ եկի յաշխարհս, և մերկանդամ անդէն դառնալոց եմ: Այսպիսի խոնարհութեամբ կապեցեր զլեզուս անօրինաց, խցեր ըղբերանս թշնամանողաց, լուծեր զխինս սատանայի, ցրեցեր զխորհուրդս նորա, և ամենևին ոչ ոք ինչ քեզ կա-

[1] Օրինակ մի ցնոտ. այլ օր. ցրտուտ:

րէ փախստել 'ի թշնամանողաց, եթէ միայն առողջ միտս ունիցիս: Ահա բազումք թշնամանեցան և համբերեցին. այլ և աղօթս ևս 'ի վերայ թշնամանողացն արարին: Ստեփաննոս աղօթէր 'ի վերայ քարկոծողացն իւր. Մովսէս, Սամուէլ, Պաւղոս և Քրիստոս որդին ա̃յ թշնամանեցաւ, և առ հայր վասն նոցա աղօթս մատուցանէր: Այլ արդ լեր դու նմանող արանցն երևելեաց: "Լռեա 'ի բարկութենէ, և հանգիր 'ի սրտմտութենէ, և մի նախանձիր ընդ չարս" ասէ մարգարէն. զի ուր բարկութիւն և սրտմտութիւն մտանէ, անդ շնորհք հոգւոյն ոչ մտանեն, և ոչ խորհուրդք արդարութեան ելանեն 'ի բարկացող սրտէ. որպէս և ասէ. "Բարկութիւն մարդոյ զարդարութիւն ա̃յ ոչ գործէ":

Է և ցասումն արդար, և բարկութիւն արդարութեան, յորժամ զվրէժս ինչ պատուիրանացն ա̃յ խնդրեսցես իբրև զՍամուէլն և զՓենեհէզն, կամ վրէժխնդրութիւն եղբօրն զրկելոյ: Իսկ որ աւելի քան զայս առաւել ինչ բարկանայցէ, կամ վրէժ անձին իւրոյ խնդրեսցէ, այն է 'ի տարապարտուց բարկանալ, զոր և Քրիստոս ասէր՝ պարտաւոր եղիցի 'ի գեհենն և 'ի հուր: Քանզի տարապարտուց բարկութիւն՝ ճանապարհ է բազում ինչ ախտից. զի բարկութիւն է և աղաղակ և կռիւ, ատելութիւն և թշնամութիւն, նախանձ և ոխակալութիւն, քինահանութիւնք և սպանութիւնք, և բազում այլ ևս չարութիւնք: Այլ որ բարկութեանն յաղթէ, այս ամենայն իշխեալ դադարէ իբրև զհուր առանց նիւթոյ. զի յորժամ բարկանայցէ ոք, և դու համբերութեամբ տանիցիս, շիջուցեր զբարկութիւն: Այլ թէ դիւահար ոք զքեզ անուանեսցէ, մի ինչ բարկանար. և եթէ բարկանաս՝ արդարացուցեր զթշնամանողսն, զի 'ի դիւէն է բարկութիւն և ոչ յա̃յ: Ահա և զտէրն դիւահար կոչեցին, և նա ոչ բարկացաւ, այլ հեզութեամբ ետ պատասխանի՝ եթէ յիս դև ոչ գոյ: Թշնամանեաց ոք զքեզ և արհամարհեաց, այլ առաւել ևս զտէրն թշնամանեցին և արհամարհեցին: Կոփեաց ոք զքեզ և ապտակեաց, ահա և զտէրն կոփեցին և ապտակեցին, այլ և չարչարեցին և խաչեցին, որ քո չև ևս ընկալեալ: Արդ զայս ա̃մ ած զմտաւ 'ի ժամ ցասմանն յուզելոյ:

Շատ է մեզ սատանայ թշնամի, զեղբարս մեր մի՛ արասցուք մեզ թշնամի. այլ փութասցուք հաշտեցուցանել ընդ մեզ, զի զպսակ նահատակութեան ընկալցուք ընդ կանխելոյ և անկանելոյ առաջի եղբօրն: Վ՝անզի պսակք և պարգևք կան 'ի միջի ոսոխացն և կագոյն. և որ ոք յառաջագոյն նահատակի և խոնարհի եղբօրն աղաչանօք ածել զտրտմեալ եղբայրն 'ի հաշտութիւն, նա յափշտակէ զպարգևս և զպսակս վասն նախախոնարհ նահատակութեան իւրոյ. զի զչար թշնամին սատանայ վիրաւորեաց 'ի խոնարհելն իւրում, և զինքն և զեղբայրն իւր զերծոյց 'ի ձեռաց նորա, և փրկեաց 'ի յաւիտենական 'ի մահուանէն: Յաղագս այնորիկ ընդունի համարձակութեամբ վարձս բազումս, և զվայելչութիւն անանց բարութեանց:

Եւ արդ մի՛ վասն սակաւ մի խոնարհութեան կորուսանիցեմք զյաւիտենական փափկութիւնսն. զի բազումք վասն յաւիտենական կենացն զանձինս և զինչս արհամարհեցին, զսէրս ամուսնութեան և զգութս որդւոց իւրեանց. զանազան տանջանաց համբերեցին և հրոյ մատնեցան, զի միայն զարքայութիւնն ա̄յ ընկալցին: Իսկ քեզ ոչ հուր կայ առաջի և ոչ սուր, և ոչ զանազան տանջանաց համբերել. այլ միայն խոնարհել եղբօրն տրտմելոյն, և աղաչանօք հաշտեցուցանել, և զնոյն պսակս նահատակութեան ընդունել: Ընդէ՞ր ծանրացուցանես զսիրտ քո աղաչել զեղբայրն. չես 'ի հուր գնել, այլ 'ի խոնարհութիւն իջանել: Դու նախ փութա անկիր աղաչանօք առաջի ընկերին, և առ զպսակն լուսոյ և պարծանաց նահատակութեան, և զերկնից արքայութեանն զանբաւ վայելչութիւնսն:

Արդ զայս ամենայն լսելով զտրտմութիւնսն ցածուսցուք, զբարկութիւն շիջուսցուք, զաղաղակ դադարեցուսցուք, զսէր սիրեսցուք, զխոնարհութիւն ստասցուք, զհնազանդութիւն ընկալցուք, և ընդ հաշտել ընկերին յառաջ ընթասցուք. զի համարձակութեամբ զերկնից բարութիւնսն ժառանգեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից:

ԺԳ

## ՎԱՍՆ ՈԽԱԳԱՀԱՑ ԵՒ ՔԻՆԱՀԱՆԱՑ

Ահեղ անօրէնութիւն և սաստիկ չարութիւն անտանելիք զոխապահացն և զքինահանացն քան զամենայն զմեղաց անօրէնութիւնս. զի ամենայն մեղք և անօրէնութիւնք երբեմն սաստկացեալ բորբոքին և երբեմն դադարեն: Իսկ չարաչար քինահանութիւն եթէ բան ինչ ընդդիմութեանց յընկերէն ինչ լուիցէ, մշտաբորբոքի յանօրէն 'ի խորամանկացն խորհուրդս: Այլ յամենայն ժամ անշիջանելի վառի բոցն նախանձու 'ի միտս նոցա, և հանապազ զսիրտն քինախնդիր ոխապահացն կսկծեցուցանէ. և 'ի միտս իւրեանց հալին և մաշին և չարչարին. և ոմանց գոյնք իսկ երեսացն եղծանին 'ի չար խորհրդոցն և 'ի նենգութենէ սրտին: Այլ շրթի ընդ մարդկան խօ խորամանկս, իբրև զԹոյնս իժի բարձեալ կրեն զնենգութիւն սրտին. և հանապազ վանք և օԹեվանք են սատանայի միտք նոցա. և զոր ինչ ասէ սատանայ՝ լսէ նմա, և զոր ինչ կամի՝ վաղվաղակի կատարէ զկամս նորա. 'ի տեսս մարդ երևի, և բարիւք իբրև չարաժանի ինչ գազան: Աստի 'ի հրապարակս իբրև զմարդ, և խորամանկութիւնք չար դիւէն են 'ի խորհուրդս նորա: Մտանէ յեկեղեցին իբրև զքրիստոնեայ, և պիղծ են աղօԹք նորա քան զպղծութիւն զոհից. քանզի ոչ ելանեն ոխապահացն աղօԹքն առ Ած, զի չարութիւն է 'ի սիրտս նոցա, և անօրէն նենգութի խորհին հանապազ:

Թէպէտ և ինչս բազումս յողորմութի ծախեսցէ այնպիսին, Թէպէտ և հսկեսցէ և պահեսցէ, և զանձն սաստիկ ճգնութեամբ ցամաքեցուցանիցէ, յամենայնի ոչինչ օգտիցի՝ յորժամ ոխս ընդ ընկերին պահիցէ, և զչարիսն 'ի սրտին Թաղեալ ունիցի: Աստի հանապազ, և խորհի պատահարս չարեաց և դիպուածս փորձութեանց նախան-

տպանամսեն , և երբեմն դադարեն . իսկ ոխապահն չա-րայուշ ոչ երբէք դադարէ 'ի ատանութենէ : Նա և 'ի զքօսանս իւր մարդասպան է , զի զոխս ընկերին 'ի սըրտին ունի . նա և յանկողինս իւր մարդասպան է , յորժամ զոխս ընկերին յիշէ . նա և 'ի տան մարդասպան է , նա և յեկեղեցւոջ մարդասպան է , և 'ի հրապարակս մարդասպան է . այլ և 'ի ճանապարհի , 'ի տուէ և 'ի գիշերի և յամենայն ժամու մարդասպան է , զի զոխս նախանձուն հանապազ 'ի սրտի իւրում կրէ : Եւ արդ անօրէն ամբարշտութիւնք ոխապահացն աճեցուցեալ 'ի քինահանութիւնս յօժարեցուցանէ սատանայ՝ առնուլ վրէժս 'ի զրկողէն . Թէպէտ և փոքր են զրկանք նորա , այլ սատանայ 'ի մեծս յօժարեցուցանէ զնա , մինչև հարուածս այգեաց և անդաստանաց տալ գործել . և 'ի զօրանալ ամբարշտութեանց սատանայի , առաւել ևս յանօրէնութիւնս յանգգնեցուցանէ զնա , մինչև տանց և բերդից վնասել հրդեհիւք .

Արդ որպիսի՞ անդունդք գեհեննի սպառնայցեն այնպիսի անօրինելոց . որպիսի՞ հուր և աղջամղջին խաւար . որք այնչափ ամբարշտեցան՝ մինչև զտունս բնակութե մարդկան հրդեհել , և դողալ և սարսել 'ի ձեռաց մահուցն . այլ և զծերս և զտղայս առ հասարակ սատակել անողորմ և անակնածելի : Եւ արդ ո՞ր անօրէնութիւնք քան զայս ամբարշտագոյն իցէ , և կամ ո՞ր մեղք չարաչարք քան զայս չարագոյն կայցէ , և կամ զո՞ր չարիս քան զայս չարագոյն ոք կարծիցէ , և կամ ո՞վ 'ի մարդկանէ իցէ՝ որ այսչափ յանօրէնութիւնս կործանեցաւ , և յահեղ ամբարշտութիւնս : Ո՛ չար և անօրէն սատանայ՝ որ յայսչափ խորխորատս ընկղմես զմարդիկ , մինչև այսպիսի ահեղ անօրէնութիւնս գործել , և հեղուլ արիւնս բազումս . և այսչափ յիմարութիւնս մոլորեցուցանել զխրատս մարդկան , մինչև միանգամայնս զամենայն ստացուածսն ապականել , զտունս հրդեհել , և զբնակիչսն առ հասարակ չարաչար անողորմ և աններելի մահու սրով սպանանել : Այս և անօրէն հեթանոսացն հիանալի է : Զայս և ոչ 'ի կռապաշտիցն և 'ի բարբարոսացն ոք գործէ . այսպիսի մահս բազումս և վնասս մարդկան միանգամայն ո՞վ գործիցէ , որպէս գործի յանօրէն քինահանացն մոլորութենէ : Թէպէտ և ապրեսցին 'ի հրոյն 'ի

մահուանէն բնակիչք նորա, սակայն նա մնաց և գործովք զամենեցուն զպարտութիւնն կատարեաց, և զարիւնս նոցա եհեղ. և տալոց է համարս և պատիժս տանջանաց ընդ ամենեցուն սպանութեանցն ։

Արդ զինչ գործես, ով թշուառական և անօրէն անձն, որ յայսպիսի խորս ամբարշտութեան կործանեցար. եղեր գործակից սատանայի, և քան զդեւս մոլորեցար, և չնաս անօրէնս գործեցեր, և բազմաց արեանց եղեր պարտական ։ Զի եթէ Կայէն վասն միոյն սպանութեան յայնչափ պատիժս տանջանաց դատապարտեցաւ, իսկ որչափ առաւել հնոցք և հրեղէն գետոցն հոսանք քեզ սպասեսցեն ։ Քանզի առաւել ճշգիւ պահանջէ ած 'ի ձեռաց առն զարիւն ընկերի իւրոյ, և մանաւանդ զայնպիսի սպանութեանց՝ որ փոխանակ կսկծելի և աղեզ ինչ բանից և կամ վասն սակաւ ինչ պարտուց՝ քինահանութե ոք չնաս մեծամեծս և ահեղ արիւնս հեղու ։ Այլ արդ ած զմտաւ, ով թշուառական, զյիմարութիւն անօրէնութեանդ քո. և 'ի սնավայրակ անօրէնութեան քո ահա այրեցան համբարքն, և հրդեհեցան տունքն, մեռան բնակիչքն, կորեան ինչքն, և ամենայն ստացուածքն ապականեցան ։

Այլ արդ զինչ շահեցար զսատանայական անօրէնութիւնս կատարելով. բայց միայն զտուգան ոգւոց և զերկիւղ գեհեննին ստացար, հուր և խաւար և տանջանս յաւիտենականս ։ Զնոսա շիջանելի հրովս չարչարեցեր, և քեզ պահին անշէջ հնոցք բորբոքեալ, ուր հուրն խաւարային 'ի ներքոյ վառեսցի, և գետք հրեղէն 'ի վերայ հոսեսցեն նոցա ։ Որժամայն մի ցաւեցուցեր, և ըզքեզ ահեղ ախտիցն կսկիծք և դառնութիւն որդանցն թիւնաւորաց միշտ հանապազ անհնարին ցաւօք կսկծեցուցանեն, ուր լալ աչաց է անդադար, և կրճել ատամանց անհանգիստ, և ամենեւին ներումն ինչ անհնարին վարմանացն ոչ գտանես. փոխանակ զի ընդ սակաւ ինչ զրկանաց մեծամեծս գործեցեր ։ Զի եթէ զրկեցար ինչ 'ի նմանէ, և ցաւեցոյց զքեզ, քեզ պարտ էր անսալ վրէժխնդիր իշխանին, և դատաստանի մեծին այ, և ոչ անձամբ ինչ պահանջել քինահանութեամբ. զի ծառայ որ զլծակիցն իւր նեղիցէ, և նա ժուժկալեալ համբերիցէ վասն ահի տեառն իւրոյ, տէրն դատի ըզ-

նարհեսցի ընկերին . զի եթէ ես յառաջ խոնարհիմ, ասէ, զիս վնասակար ոք կարծիցէ, և զնա անմեղ համարիցին . վասն այսորիկ գազանացեալ անհնազանդի ։

Քանզի յորժամ միանգամ զխորհուրդս ըմբռնէ անօրէն ախտն բարկութեան, յափշտակէ զմիտսն 'ի նըմանէ, և գազանացուցանէ, և ամենևին չտայ իմանալ զերկիւղն ա̃յ, և ոչ զահ ահեղ դատաստանին . այլ հեռացուցանէ յիրաւանց, և զդատաստանն ոչ երբէք ածէ զմտաւ, և ոչ յիշէ զօր մահուանն իւրոյ և զարհաւիրս սոսկալի բեմին . այլ ախտեալ մտքաւն՝ զկամս անձին իւրոյ կատարեալ ։ Եւ ոչ ամօթ եղբարցն, և ոչ խրատ վարդապետաց, ոչ հրամանք պատուիրանաց, և ոչ երկիւղն ա̃յ, ոչ փափագանք արքայութեանն, և ոչ արհաւիրք տանջանացն զնա ոչ պատկառեցուցանեն 'ի զեղջ և յապաշաւ ։ Այլ և ժտի ևս յեկեղեցին մտանել, և աղօթս առ ա̃ծ կատարել՝ որ ոչ ընդունի, և առ ա̃ծ ոչ ելանեն ։ Քանզի ինքն տէրն ասէ . « Եթէ հանեալ իցես զպատարագն քո 'ի վերայ սեղանոյն, և անդ յիշեսցես եթէ եղբայր քո ունիցի խէթ զքէն, թող զպատարագն 'ի վերայ սեղանոյն . երթ նախ հաշտեաց ընդ եղբօր քում, և ապա եկեալ մատուցանիջիր զպատարագն քո », և ընդունելի է ։ Եւ իւրաքանչիւր ուրուք աղօթքն են պատարագք . և անընդունելի են ա̃յ, եթէ ոչ նախ երթեալ հաշտի ընդ տրտմեալ եղբօրն, և ապա եկեալ աղօթէ առ ա̃ծ, և ընդունելի է ։ Այլ և ասէ . « Արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ » . զի մի դևքն եկեալ 'ի գիշերին յարուցանիցեն զսիրտ քո առ վաղիւն չհաշտել ընդ ընկերին, և խորհուրդս չարս, ոխս և նախանձս, և ազգի ազգի նենգութիւնս արկանիցէ 'ի միտս քո ։ Այլ մինչ չև գիշերոյն հասեալ իցէ՝ երթ հաշտեա ընդ եղբօր քում ։ Մինչ դեռ յաշխարհի ես, հաշտեա ընդ ոսոխի քում . մի գուցէ մատնիցեն դատաւորին, և դատաւորն դահճաց, և ոչ ելանիցես ։ Նոյնպէս և դու մինչ դեռ որ առաջի կայ, փութա հաշտել ընդ ընկերին, և 'ի վաղիւն մի յապաղեր, զի աներևոյթ են ելք մեր յաշխարհէ, և ոչ գիտեմք՝ թէ ունիմք զվաղիւն ժառանգել՝ թէ ոչ . սակայն ժառանգեմք զվաղիւն, և ոչ փութամք հաշտել ընդ եղբօրն ։ Ընդ հեթանոսս համարեալ եմք, զի անընդունելի իցէ առանց հաշտութեան ընդ եղբօրն և ընդ ընկերին ։

Իսկ որպիսի՛ զատն տանջանօք դատեցին՝ որ խիղճ ինչ թշնամութեան ընդ ընկերին ունիցին, և 'ի սուրբ խորհուրդն մերձենայցեն. որպիսի հուր, և որպիսի գեհեննք խաւարայինք նոցա սպասիցեն։ Մարմնոյ տեառն հաղորդիս, և զնա՛ գողանալ կամիս՝ թաքուցանելով զթշնամութիւն քո ընդ ընկերին։ Այս և Կայէն գողանալ կամէր զնա՝ թաքուցանելով զեղբօրն սպանութիւն. և արդ տես զերերումն տատանմանն նորա՝ զչար խորհրդոյն զպտուղն։ Որ 'ի մարմինն տեառն մերձենայ, և թշնամութիւն ընդ ընկերին ունիցի, ոչ մարմին կենարար է նմա, այլ հուր կիզանող, զի դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ։ Այլ ոմանք ոչ եթէ վասն փափագելոյ սրբոյ խորհրդոյն փութան 'ի հաշտութիւն ընկերին, այլ աւուրք բազումք հեռանան 'ի սուրբ խորհրդոյն, և զաղաչելն և զհաշտելն ընդ եղբօրն ծանր համարին քան զհեռանալն և զչընդունելն 'ի սուրբ խորհրդոյն՝ 'ի մարմնոյն և յարենէն Քրիստոսի. վասն խոնարհելոյ ընկերին արհամարհէ զխորհուրդն տերունական. հրաժարելով 'ի նմանէն՝ կարծէ պատիւ համարել ա՟յ չմերձենալ 'ի խորհուրդն։ Իսկ ոչ իմանայ՝ եթէ առաւել ևս արհամարհէ չփութալով 'ի հաշտութիւն ընկերին վասն սիրոյ փափագելի մարմնոյն Քրիստոսի, զոր և Պաւղոս ասէ, թէ ո՛վ մեկնէ զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի. նեղութիւն թէ մահ, և որ 'ի կարգին է՝ ոչ կարեն մեկնել զմեզ 'ի սիրոյն Քրիստոսի։ Իսկ ըզքեզ սակաւ ինչ թշնամութիւն ընդ ընկերին մեկնեաց 'ի սիրոյն Քրիստոսի, և 'ի սուրբ խորհրդոյն մերժեալ հեռացոյց։ Ո՛չ թէ թշնամանեաց ոք զքեզ, և դու խոնարհեցիր վասն պատուիրանին ա՟յ, մի՛թէ վնասեցա՞ր ինչ. այլ վարձս մեծամեծս ընկալար։ Արդ և արհամարհեալ ոք զքեզ անուանեաց. այլ դու հող և մոխիր ես ասա զանձն քո։ Գձուձ և ցնոտաւոր[1] ոք ըզքեզ կոչեաց. այլ դու ասա. մերկ իսկ եկի յաշխարհս, և մերկանդամ անդէն դառնալոց եմ։ Այսպիսի խոնարհութեամբ կապեցեր զլեզուս անօրինաց, խցեր ըզբերանս թշնամանողաց, լուծեր զլիրս սատանայի, ցրեցեր զխորհուրդս նորա, և ամենևին ոչ ոք ինչ քեզ կա

[1] Օրինակ մի՝ ցնոտ. այլ որ. ցրտոտ։

րէ փախչել ՚ի թշնամանողաց, եթէ միայն առողջ միտս ունիցիս: Ահա բազումք թշնամանեցան և համբերեցին. այլ և աղօթս ևս ՚ի վերայ թշնամանողացն արարին: Ստեփաննոս աղօթէր ՚ի վերայ քարկոծողացն իւր. Մովսէս, Սամուէլ, Դաւիթ և Քրիստոս որդին Այ թշնամանեցաւ, և առ հայր վասն նոցա աղօթս մատուցանէր: Եւ արդ լեր դու նմանող արանցն երևելեաց: “Լռեա ՚ի բարկութենէ, և հանգիր ՚ի սրտմտութենէ, և մի նախանձիր ընդ չարս” ասէ մարգարէն. զի ուր բարկութիւն և սրտմտութիւն մտանէ, անդ շնորհք հոգւոյն ոչ մտանեն, և ոչ խորհուրդք արդարութեան ելանեն ՚ի բարկացող սրտէ. որպէս և ասէ. “Բարկութիւն մարդոյ զարդարութիւն Այ ոչ գործէ”:

Է և ցասումն արդար, և բարկութիւն արդարութեան, յորժամ զվրէժս ինչ պատուիրանացն Այ խնդրեսցես իբրև զՍամուէլն և զՓենեհէսն, կամ վրէժխնդրութիւն եղբօրն զրկելոյ: Իսկ որ աւելի քան զայս առաւել ինչ բարկանայցէ, կամ վրէժ անձին իւրոյ խնդրեսցէ, այն է ՚ի տարապարտուց բարկանալ, զոր և Քրիստոս ասէր՝ պարտաւոր եղիցի ՚ի գեհենն և ՚ի հուր: Քանզի տարապարտուց բարկութիւն՝ ճանապարհ է բազում ինչ ախտից. զի բարկութիւն է և աղաղակ և կռիւ, ատելութիւն և թշնամութիւն, նախանձ և ոխակալութիւն, քինահանութիւնք և սպանութիւնք, և բազում այլ ևս չարութիւնք: Եւ որ բարկութեանն յաղթէ, այս ամենայն իջեալ դադարէ իբրև զհուր առանց նիւթոյ. զի յորժամ բարկանայցէ ոք, և դու համբերութեամբ տանիցիս, շիջուցեր զբարկութիւն: Այլ թէ դիւահար ոք զքեզ անուանեսցէ, մի ինչ բարկանար. և եթէ բարկանաս՝ արդարացուցեր զթշնամանողսն, զի ՚ի դիւէն է բարկութիւն և ոչ յԱյ: Ահա և զտէրն դիւահար կոչեցին, և նա ոչ բարկացաւ, այլ հեզութեամբ ետ պատասխանի՝ եթէ յիս դև ոչ գոյ: Թշնամանեաց ոք զքեզ և արհամարհեաց, այլ առաւել ևս զտէրն թշնամանեցին և արհամարհեցին: Կոփեաց ոք զքեզ և ապտակեաց, ահա և զտէրն կոփեցին և ապտակեցին, այլ և չարչարեցին և խաչեցին, որ քո չև ևս ընկալեալ: Արդ զայս ամ ած զմտաւ ՚ի ժամ ցասմանն յուզելոյ:

Շատ է մեզ սատանայ թշնամի, զեղբարս մեր մի արասցուք մեզ թշնամի. այլ փութասցուք հաշտեցուցանել ընդ մեզ, զի զպսակ նահատակութեան ընկալցուք ընդ կանխելոյ և անկանելոյ առաջի եղբօրն: Քանզի պսակք և պարգևք կան 'ի միջի ոսոխացն և կագոյն. և որ ոք յառաջագոյն նահատակի և խոնարհի եղբօրն աղաչանօք ածել զտրտմեալ եղբայրն 'ի հաշտութիւն, նա յափշտակէ զպարգևս և զպսակս վասն նախախոնարհ նահատակութեան իւրոյ. զի զչար թշնամին սատանայ վիրաւորեաց 'ի խոնարհելն իւրում, և զինքն և զեղբայրն իւր զերծոյց 'ի ձեռաց նորա, և փրկեաց 'ի յաւիտենական 'ի մահուանէն: Յաղագս այնորիկ ընդունի համարձակութեամբ վարձս բազումս, և զվայելչութիւն անանց բարութեանց:

Եւ արդ մի վասն սակաւ մի խոնարհութեան կորուսանիցեմք զյաւիտենական փափկութիւնսն. զի բազումք վասն յաւիտենական կենացն զանձինս և զինչս արհամարհեցին, զտէրս ամուսնութեան և զգութս որդւոց իւրեանց. զանազան տանջանաց համբերեցին և հրոյ մատնեցան, զի միայն զարքայութիւնն այ ընկալցին: Իսկ քեզ ոչ հուր կայ առաջի և ոչ սուր, և ոչ զանազան տանջանաց համբերել. այլ միայն խոնարհել եղբօրն տրտմելոյն, և աղաչանօք հաշտեցուցանել, և զնոյն պսակս նահատակութեան ընդունել: Ընդէ՞ր ծանրացուցանես զսիրտ քո աղաչել զեղբայրն. չես 'ի հուր դնել, այլ 'ի խոնարհութիւն իջանել: Դու նախ փութա անկիր աղաչանօք առաջի ընկերին, և առ զպսակն լուսոյ և պարծանաց նահատակութեան, և զերկնից արքայութեանն զանբաւ վայելչութիւնսն:

Արդ զայս ամենայն լսելով զտրտմութիւնսն ցածուսցուք, զբարկութիւն շիջուսցուք, զաղաղակ դադարեցուսցուք, զսէր սիրեսցուք, զխոնարհութիւն ստասցուք, զհնազանդութիւն ընկալցուք, և ընդ հաշտել ընկերին յառաջ ընթասցուք. զի համարձակութեամբ զերկնից բարութիւնսն ժառանգեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից:

## ԺԳ

## ՎԱՍՆ ՈԽԱԳԱՀԱՑ ԵՒ ՔԻՆԱՀԱՆԱՑ

Ահեղ անօրէնութիւն և սաստիկ չարութիւն անուանեալք ոխապահացն և քինահանացն քան զամենայն զմեղաց անօրէնութիւնս. զի ամենայն մեղք և անօրէնութիւնք երբեմն սատակեցեալ բորբոքին և երբեմն դադարեն: Իսկ չարայուշ քինահանութիւն եթէ բան ինչ ընդդիմութեանց յընկերէն ինչ լուիցէ, միշտ բորբոքի յանօրէն 'ի խորամանկացն խորհուրդս: Այլ յամենայն ժամ անշիջանելի վառի բոցն նախանձու 'ի միտս նոցա, և հանապազ զսիրտն քինախնդիր ոխապահացն կեղծեցուցանէ. և 'ի միտս իւրեանց հալին և մաշին և չարչարին. և ոմանց գոյնք իսկ երեսացն եղծանին 'ի չար խորհրդոցն և 'ի նենգութենէ սրտին: Այլ շրջին ընդ մարդկան իբր խորամանկին, իբրև զթոյնս իժի բարձեալ կրեն զնենգութիւն սրտին. և հանապազ վանք և օթեվանք են սատանայի միտք նոցա. և զոր ինչ ասէ սատանայ՝ լսէ նմա, և զոր ինչ կամի՝ վաղվաղակի կատարէ զկամս նորա. 'ի տեսս մարդ երևի, և բարուք իբրև չարաժանի ինչ գազան: Նստի 'ի հրապարակս իբրև զմարդ, և խորամանկութիւնք չար դիւին են 'ի խորհուրդս նորա: Մտանէ յեկեղեցին իբրև զքրիստոնեայ, և պիղծ են աղօթք նորա քան զպղծութիւն զոհից. քանզի ոչ երբեք լինեն ոխապահացն աղօթքն առ ա՟ծ, զի չարութիւն է 'ի սիրտս նոցա, և անօրէն նենգութ̅ի խորհին հանապազ:

Թէպէտ և ինչս բազում յողորմութ̅ի ծախեաց այնպիսին, թէպէտ և հսկեսցէ և պահեսցէ, և զանձն սաստիկ ճգնութեամբ ցամաքեցուցանիցէ, յամենայնի ոչինչ օգտիցի՝ յորժամ ոխս ընդ ընկերին պահիցէ, և զչարիսն 'ի սրտին թաղեալ ունիցի: Նստի հանապազ, և խորհի պատահարս չարեաց և դիպուածս փորձութեանց նախան-

ապանանեն, և երբեմն դադարեն. իսկ ոխապահքն չա-բայուշ ոչ երբէք դադարէ 'ի ատելութենէ: Նա և 'ի զբօսանս իւր մարդասպան է, զի զոխս ընկերին 'ի սըրտին ունի. նա և յանկողինս իւր մարդասպան է, յորժամ զոխս ընկերին յիշէ. նա և 'ի տան մարդասպան է, նա և յեկեղեցւոջ մարդասպան է, և 'ի հրապարակս մարդասպան է. այլ և 'ի ճանապարհի, 'ի տուէ և 'ի գիշերի և յամենայն ժամու մարդասպան է, զի զոխս նախանձու հանապազ 'ի սրտի իւրում կրէ: Եւ ապա անօրէն ամբարշտութիւնք ոխապահացն աճեցուցեալ 'ի քինահանութիւնս յօժարեցուցանէ սատանայ՝ առնուլ վրէժս 'ի զրկողէն. Թէպէտ և փոքր են զրկանք նորա, այլ սատանայ 'ի մեծս յօժարեցուցանէ զնա, մինչև հարուածս այգեաց և անդաստանաց տայ գործել. և 'ի զարանալ ամբարշտութեանց սատանայի, առաւել ևս յանօրէնութիւնս յանդգնեցուցանէ զնա, մինչև տանց և բերդից մտանել հրդեհիւք.

Արդ որպէ՞ս անդունդք գեհենի սպառնայցեն այնպիսի անօրինելոց. որպէ՞ս հուր և աղջամղջին խաւար. որք այնչափ ամբարշտեցան՝ մինչև զտունս բնակութե մարդկան հրդեհել, և դողալ և սարսել 'ի ձեռաց մահուցն. այլ և զծերս և զտղայս առ հասարակ սատակել անողորմ և անակնածելի: Եւ արդ ո՞ր անօրէնութիւնք քան զայս ամբարշտագոյն իցէ, և կամ ո՞ր մեղք չարաչարք քան զայս չարագոյն կայցէ, և կամ զո՞ր չարիս քան զայս չարագոյն ոք կարծիցէ, և կամ ո՞վ 'ի մարդկանէ իցէ՝ որ այսչափ յանօրէնութիւն կործանեցաւ, և յահեղ ամբարշտութիւնս: Ո՜չար և անօրէն սատանայ՝ որ յայսչափ խորխորատս ընկղմես զմարդիկ, մինչև այսպիսի ահեղ անօրէնութիւնս գործել, և հեղուլ արիւնս բազումս. և այսչափ յիմարութիւնս մոլորեցուցանել զսիրտս մարդկան, մինչև միանգամայնս զամենայն ստացուածս ապականել, զտունս հրդեհել, և զբնակիչսն առ հասարակ չարաչար անողորմ և աններելի մահու սրով սպանանել: Այս և անօրէն հեթանոսացն հիանալի է: Զայս և ոչ 'ի կռապաշտիցն և 'ի բարբարոսացն ոք գործէ. այսպիսի մահս բազումս և մտաց մարդկան միանգամայն ո՞վ գործիցէ, որպէս գործի յանօրէն քինահանացն մոլորութենէ: Թէպէտ և ապրեսցեն 'ի հրոյն 'ի

մեծահռչակեալն բնակիչք նորա, սակայն նա միօք և գործովք զամենեցուն զսպանութիւնն կատարեաց, և զարիւնս նոցա եհեղ. և տալոց է համարս և պատիժս տանջանաց ընդ ամենեցուն սպանութեանցն:

Արդ զի՞նչ գործես, ով Թշուառական և անօրէն անձն, որ յայսպիսի խորս ամբարշտութեան կործանեցար. եղեր գործակից սատանայի, և քան զդեւս մոլորեցար, և վնասս անօրէնս գործեցեր, և բազմաց արեանց եղեր պարտական: Օ՜հ եթէ Կայէն վասն միոյն սպանութեան յայնչափ պատիժս տանջանաց դատապարտեցաւ, իսկ ո՞րչափ առաւել հնոցք և հրեղէն գետոցն հոսանք քեզ սպասեսցեն: Քանզի առաւել ճշգիւ պահանջէ ած 'ի ձեռաց առն զարիւն ընկերի իւրոյ, և մանաւանդ զայնպիսի սպանութեանց՝ որ փոխանակ կսկծելի և տգեղ ինչ բանից և կամ վասն սակաւ ինչ պարտուց՝ քինահանութեամբ ոք վնասս մեծամեծս և ահեղ արիւնս հեղու: Այլ արդ ած զմտաւ, ով Թշուառականդ, զյիմարութիւն անօրէնութեանդ քո. և 'ի սնավաստակ անօրէնութեան քո ահա այրեցան համբարքն, և հրդեհեցան տունքն, մեռան բնակիչքն, կորեան ինչքն, և ամենայն ստացուածքն ապականեցան:

Այլ արդ զի՞նչ շահեցար զսատանայական անօրէնութիւնս կատարելով. բայց միայն զտուգանս ոգւոյ և զերկիւղ գեհենին ստացար, հուր և խաւար և տանջանս յաւիտենականս: Զնոսա շիջանելի հրովս չարչարեցեր, և քեզ պահին անշէջ հնոցք բորբոքեալ, ուր հուրն խաւարային 'ի ներքոյ վառեսցի, և գետք հրեղէն 'ի վերայ հոսեսցեն նոցա: Առժամայն մի ցաւեցուցեր, և ընդ քեզ ահեղ ախտիցն կսկիծք և դաժանութիւն որդանցն Թիւնաւորաց միշտ հանապազ անհնարին ցաւօք կսկծեցուցանեն, ուր լալ աչաց է անդադար, և կրճել ատամանց անհանգիստ, և ամենևին ներումն ինչ անհնարին վարանացն ոչ գտանես. փոխանակ զի ընդ սակաւ ինչ զրկանաց մեծամեծս գործեցեր: Օ՜հ եթէ զրկեցար ինչ 'ի նմանէ, և ցաւեցոյց զքեզ, քեզ պարտ էր անսալ վրէժխնդիր իշխանին, և դատաստանի մեծին այ, և ոչ անձամբ ինչ պահանջել քինահանութեամբ. զի ծառայ որ զլծակիցն իւր նեղիցէ, և նա ժուժկալեալ համբերիցէ վասն ահի տեառն իւրոյ, տէրն դատի ընդ-

դատաստան նորա ։ Ապա եթէ վրէժխնդրութեան և դատաստանի տեառն ոչ անսայցէ, այլ ինքն իւրովի առնուցու վրէժ 'ի ծառայակցէն իւրմէ, զարթուցանէ զբարկութիւն տեառն իւրոյ, զոր և դատաւորք աշխարհիս ճշդիւ պահանջեն ։ Եթէ ոք 'ի զրկելոցն ոչ անսայցէ վրէժխնդրութեան դատաւորին, այլ արհամարհեալ զպատիւ իշխանութեան նորա՝ իւրովին խոյ վրէժ 'ի զրկողէն առնուցու, տես թէ քանի բարկութի ածէ 'ի վերայ նորա դատաւորն. սոյն և առ դատաստանին այ ։

Եթէ ոք զրկիցի 'ի զօրաւորէն, և համբերիցէ երկիւղիւ այ, և վրէժ զրկանաց ոչ խնդրիցէ 'ի զրկողէն, նորա տէր է վրէժխնդիր, և հատուցանէ նեղչացն նորա նեղութիւն, և չարչարողաց նորա չարիս, և պահանջէ 'ի զրկողէն զվրէժ նորա հրով գեհեննին և զանազան տանջանօք ։ Եւ նա որ վասն երկիւղին այ զրկանացն համբերէ, ընդունի զկատարեալ համբերողացն զպսակս, և զյաւիտենական զբարութիւնս սրբոց և արդարոց ։ Իսկ որ ոչ թողու յած զվրէժխնդրութիւն զրկողին, և ոչ անսայցէ միայն դատաստանի նորա, այլ յափշտակէ զիշխանութիւն վրէժխնդրութեան այ ; և զքէն զրկանաց իւրոց ինքն պահանջէ, զարթուցանէ 'ի վերայ անձին իւրոյ զսաստիկ սրտմտութիւն ահեղ բարկութեանն այ՝ չարչարել և տանջել զնա անողորմ և անհնարելի տանջանօք հրով գեհեննին և անշէջ խաւարաւն, ուր բազում որդովք և դառն տանջանօք կծեսցի և լացցէ զահեղ աղէտիցն զնեղութիւնս, և ամենեւին ոչ ինչ օգտիցի. փոխանակ զի դատաստանին վրէժխնդրութեանն այ ոչ հաւանեցաւ, այլ արհամարհեաց զպատիւ դատաւորութեան այ, և զդատաստանն այ ինքն դատեցաւ՝ քինահանութեամբ վնասելով զզրկողն իւր ։ Եւ որպէս դատեցաւ զզրկողն, առաւել ևս բազմապատիկ տանջանօք դատելոց է յայ. զի զրկողն ըստ սակաւ ինչ զրկանաց է դատելոց. իսկ քինահանն ըստ անթիւ ինչ կորըստեան, և ըստ բոլոր ստացուածոցն ապականութեան, և ըստ բազում արեան հեղման է դատելոց անհնարին տանջանօք ։ Զի թէպէտ և ինչք և տուն և բնակիչքն այրեցան 'ի հրոյն ապականութենէ, սակայն նա զանօրէնութիւն անձին իւրոյ կատարեաց. և զոր ինչ կորու-

սանելն կամեցաւ , ընդ ամենայնի է պարտապան պատժոց պատուհասից և անհնարին տանջանաց ։

Արդ մի ոք յանդգնեսցի յահեղ անօրէնութիւնս քինահանութեան , և մի զանձին վրէժս պահանջիցէ , այլ անսալ դատաւորին այ . զի “ Իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից՝ ասէ տէր ,, ։ Բայց դու մի չար փոխանակ չարի հատուսցես . այլ թէ քաղցեալ իցէ թշնամին քո , հաց տուր նմա . և եթէ ծարաւի է , ջուր . և զչարեացն զհատուցումն ես հատուցից՝ ասէ տէր ։ Դու արդ որովհետև տէր է վրէժխնդիր և հատուցանող զրկողացն և զրկելոցն , ոչ ոք պարտի զվրէժ անձինն խնդրել , և ոչ զքէն զրկողին պահանջել . զի այս անօրէնութիւն առաւել ևս զանցուցանէ զհեթանոսական ամբարշտութեամբք , յորմէ ամենայն զգուշութեամբ հեռասցուք , զի մի 'ի խորխորատ կորստեանն ընդ սատանայի իջեալ այրեսցուք , և անլոյծ կապանօք կապեսցուք , և անհրաժեշտ տանջեսցուք յանշէջ խաւարին ։ Այլ փախիցուք յորոգայթից սատանայի . անարգեսցուք ըզհրամանս նորա . մերժեսցուք 'ի չարայուշն ոխակալութենէ , և փարատեսցուք զկսկիծ սրտից՝ զոր սատանայ 'ի մեզ իբրև զհուր լուցանէ , և իբրև զբոց 'ի վեր բորբոքէ՝ կատարել զքինահանութիւն անօրէնութեան ։

Զայս արհամարհեսցուք , և ընդ զրկողին խաղաղութիւն արարէք . զթշնամիսն սիրեսցուք , զատելիսն օրհնեսցուք , չարարարին բարի արասցուք , և զամենայն ինչ ըստ հաճոյից այ արասցուք . զի եղիցուք կատարեալք որդիք հօրն երկնաւորի , և ժառանգեսցուք զանանց բարութեանցն վայելչութիւնսն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր . որում փառք յաւիտեանս . ամէն ։

## ԺԴ

## ՎԱՍՆ ՍԱԿԱՒ ԳՈՂՈՒԹԵԱՆ ՈՐ ՈՉ ԱՊԱՇԽԱՐԵՆ

Յանկարծակի գողանայ և աներևոյթ յափշտակէ ըզմիտս բազմաց սատանայ, և մոռացուցանէ զպատուիրանս այ. և իբրև ըմբռնէ զամենայն խորհուրդս նորա և զզայարանս նորա, և պատրուակէ 'ի ճշմարտութենէ զմիտս նորա, և սերմանէ զորոմն անօրէնութեան 'ի խորհուրդս նոցա, և զոր ինչ մեղանչեն 'ի պատուիրանս այ՝ փոքր կարծեցուցանէ 'ի սիրտս նոցա ։ Լուաք 'ի պատուիրանաց այ՝ եթէ յովտ մի, որ է գրանկես, ոչ կորիցէ յամենայն պատուիրանաց այ և 'ի մարգարէից. և ընդ դատարկ բանից և անպատեհ խորհրդոց և ընդ մըտածութեան եմք դատելոց ։ Իսկ զինչ արասցեն որ ընդդէմ պատուիրանացն այ գործեսցեն և սակաւիկ ինչ կարծիցեն, մինչև յայտնի գողունիս փոքր և սակաւ համարեսցեն, և առ ոչ ինչ կարծելով զասկալին՝ անապաշաւ թողուցուն, և ոչ բեկեալ սրտիւ և ցաւագին անձամբ խոստովանեսցեն, և բազում պաղատանօք ապաշխարիցեն. այլ չարին խորհրդովք յամենայն ինչ անխտիր մերձենան և ոչ ինչ համարին, և ասեն՝ եթէ փոքր ինչ գողունիս առտնին և կամ արտաքուստ ոչ խնդրէ և կամ դատի ած ։ Ամբարիշտ և սատանայական է այս բարբառ, և լի բազում անօրէնութեամբ ։ Եւ եթէ ողորմածն ընդ ուղիղ կամացն միայն զարքայութիւնն ընդունի, և ընդ բաժակի միոյ ջրոյ վարձս բազումս, զիարդ զյայտնի մեղս անհամար թողուցու ։

Արդ մի այդպիսի կարծեցուցանիցէ զքեզ սատանայ. այլ և եթէ միով դանկիւ չափիցին յանցանքն՝ հատեր և կոխեցեր զհրամանս այ, և զամենայն պատուիրանս նորա արհամարհեցեր. զի որ միով ինչ պատուիրանացն այ գթիցէ, եղև ամենայն օրինացն պարտապան ։ Զի ոչ եթէ չափք ընչիցն չարացուցանեն զմեղս

մեղացն , այլ հրամանահատութիւնն [1] կորուսանէ ըղ-պատուիրանազանցսն : Զի որ զհրովարտակս ոք արքունի պատառէ , ոչ միայն զքարտն փոխանակ քարտին պահանջեն 'ի նմանէ , զի զայն և սակաւ ինչ լումայիւք մարթ էր վճարել , և կամ ըստ չափոյ քարտին պատժել , այլ ընդ արհամարհելոյ զհրամանս թագաւորին են տանջանք զանազանք և մահք դառինք : Սոյնպէս և Ադամայ ոչ եթէ մեծ էին գողանքն , այլ հատումն միոյ ինչ մրգոյ . և արդ տես զբազում հոյլս պատուհասիցն , զանիծիցն և զմահուցն , ոչ միայն 'ի վերայ Ադամայ , այլ և ամենայն ծննդոց Ադամայ . զի ոչ եթէ գողումն մրգոյն եղև պարտապան , այլ հրամանացն արարչին և բանի բերանոյ նորա . զի որ ասացն՝ եթէ մի սպանա-ներ , նոյն ասաց՝ եթէ մի գողանայցես : Նաև ոչ եթէ փոքու և մեծի մեղաց խնդիր իցէ , այլ պատուիրանա-զանցութեան և հրամանահատութե՛ . զոր և ինքն իսկ ասէ , եթէ և յետի նաքարակիտն խնդրեսցի . և եթէ լուծցի մի ինչ 'ի պատուիրանացն այ՝ փոքր կոչեսցի յար-քայութեան : Զի զոր ինչ և է 'ի վերս մեղաց , և փոքր համարեսցի և ոչ ապաշխարեսցէ , այն են մեղք մա-հուչափ :

Տես զի փոքրիկ է հատ մանանխոյ , և ապա աճէ և ծառանայ . սակաւ է և խմոր , և զամենայն զանգուածն իւր նմանեցուցանէ . նուազ է և փայլակն կայծակի , այլ 'ի նիւթ ինչ մտեալ՝ զբազում վայրս հրդեհէ . նեղ և նուրբ է և խայթոց օձի և սուր ինչ վէրք նորա , այլ դաժանութիւն թիւնից նորա դառնատեսիլ մահ գոր-ծէ . աներևոյթ է և հարուած կայծի , այլ սաստիկ ընդ ամենայն մարմինն կսկիծ արկանէ մինչև 'ի ոսկրն : Ո՛ր-չափ ևս առաւել հրաման բանի բերանոյ այ դառնամահ տանջանօք տանջէ զարհամարհիչս իւր : Ահա փոքր հա-մարեցաւ Քամ զանպատկառութիւնն 'ի հօրէն , և եղև յանէծս և 'ի ծառայութիւն ամենայն զաւակօք իւրովք : Փոքր համարեցան և որդիքն Ահարոնի զեղ-ծանութիւն սպասաւորութեան իւրեանց , և հուր օ-տար եկեր զնոսա : Փոքր համարեցաւ Կայէն զանըն-տիրան մատուցանել պատարագ , և խառնել անարգել եւ

1 Մի օրին . հրամանացն [illegible] :

յերեսացն այ ։ Փոքր համարեցաւ և մարգարէն զհրամանն հացին չուտելոյ, և առիւծ 'ի ճանապարհին եբեկ զնա ։ Եւ ամենայն որ փոքր համարեցաւ զհրամանս պատուիրանացն այ՝ պատիժս մեծամեծս ընկալաւ, ոչ միայն յաւիտենական տանջանօքն, այլ յանցաւորս և յառժամանակեայս ևս պատժի ։ Զի որպէս յողորմութիւնն երկու լումայիւք զբոլոր ողորմութեանն զվարձս ընկալաւ, սոյնպէս և 'ի պատուիրանազանցութեանն թէ և հաւասար ոք երկու լումայիւ մեղիցէ և ոչ ապաշխարիցէ, զբովանդակ պատիժս և զտանջանս պատուիրանազանցութեանն ընդունի ։ Զի որ զքծուար երկաթոյ գողանալ մտաբերէ, նա թէ և ոսկւոյ պատահէր՝ ոչ ակն ածէր ․ քանզի ինքն իսկ Յիսուս ասէ ․ “Որ 'ի սակաւուն անիրաւ է, և 'ի բազմին անիրաւ է ․ որ 'ի սակաւուն հաւատարիմ է, նա և 'ի բազմին հաւատարիմ է ” ։ Զի թէպէտ և թուին ոմանց սպանութիւնք մեծամեծք և փոքունք, այլ մի է հրամանն այ՝ եթէ մի գողանար, մի շնար, և մի սպանաներ ․ ահա մի է հրամանատուութիւն սակաւուն և մեծին ։ Զի որ սպանանէ զթագաւոր ոք, նոյն սպանութիւն է և որ զաղքատն սպանանէ, և նոյն սպանութիւն ծերոյն և տըղայոյն ․ և որ շնայ ընդ թագուհւոյն, նոյն շնութիւն է և որ ընդ աղքատին ․ սոյնպէս և որ գողանայ ոք ոսկի, նոյն գողութիւն է և պատուիրանահատութիւն և որ զկապարն գողանայ ։

Այլ առաւել ևս մեղադրելի է՝ որ վասն ոչընչին ըզհրամանն այ արհամարհեաց ․ զի որ վասն բազում ոսկւոյ զոք սպանանէ, թերևս ասէ ոք՝ թէ յոսկւոյն խաբեցաւ ․ իսկ որ միոյ լումայի զոք սպանանէ, առաւել ևս տանջանս ընդունի ։ Սոյնպէս է և որ սակաւուք զպատուիրանս այ արհամարհէ, եղկելի է և թշուառական և արժանի բազում տանջանաց ։ Եւ ևս առաւել չարագոյն է՝ որ ընտանւոյն և ջերմին մեղանայ ․ և չար է սպանութիւն զոր անձին ոք առնէ քան օտարին ․ զի այնչափ բորբոքեցաւ ախտ ընչասիրութեան՝ մինչև առ ընտանիս և մերձաւորին եւս մեղանչել ։ Եւ արդ մի ոք ասիցէ՝ եթէ յընտանեաց անտի հատանեմ, և այս ոչ ինչ վնասէ ․ այլ գողութիւն է, և առաւել ևս մեղանչական է քան եթէ յօտարացն գողանայցեն ․ քանզի ընտանեաց և սի-

ըՆլեաց մեղանչեն, որպէս վերագոյն ասացի՝ եթէ չար է անձնամահութիւն քան զօտարսպանութիւն ։

Այլ արդ զայսպիսի մտախաբ կեղծաւորութիւն 'ի բաց արասցուք, և բազում զգուշութեամբ զպատուիրանս այ պահեսցուք. զի ոչ եթէ յակամայ կամաց բռնադատէ զմեզ ած գործել զբարին, այլ թողու յանձնիշխանութիւն կամաց մերոց ։ Այլ եթէ ոչ երկիւղիւ պահիցեմք զհրամանս նորա, պահէ զամենայն յանցանս մեր 'ի մեծ օր ահեղ դատաստանին և սոսկալի բեմբին յանողորմութեան՝ յորժամ աթոռ դատաստանին դնի, և հին աւուրց նստի, և գետք հրեղէնք յորդեալ եռանեն, հնոցք բորբոքեալք և տարտարոսք խաւարայինք, լալումն աչաց և կրճտումն ատամանց և սուգ անմխիթար մեղաւորաց ։ Արդ զայս ամենայն զմտաւ ածելով զընդվայրաբանութիւնս[1] մեր դադարեցուսցուք, և զծուլութիւնս մեր 'ի փոյթ դարձուսցուք. հրամանաց նորա զգուշասցուք, և զոգիս մեր մաքրեսցուք. սրբութեամբ զաւուրս մեր անցուսցուք, և անմեղութեամբ զվախճանն կատարեսցուք. զփափաքելի դրախտն ժառանգեսցուք, և յանմահ բարիսն վայելեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

1 Մի օր. զընդվայրաբանեալ բանախօսութիւնս մեր ։

# ԺԵ

## ՎԱՍՆ ՉԱՐ ՍՈՎՈՐՈՒԹԵԱՆ ԵՐԴՄԱՆ

Յայժ չար են սովորութիւնք չարին ամենայն ուրեք. այլ առաւել ևս չար ախտ և սովորութիւնք անօրէնութեանց են երդմունք. և այնչափ յիմարեցուցանէ 'ի սովորութիւն ախտին՝ մինչև յընդելական սովորութենէն և չարիքն չարիք իսկ ոչ երևին: Որպէս և այժմ զբազումս տեսանեմք զոր սովորեցոյց սատանայ յերդմունս անօրէնս. և 'ի միտս իւր ոք ոչ երկնչի՝ եթէ մեղս ինչ անօրէնս գործեացէ: Թէպէտ և ասաց 'ի Հնումն՝ եթէ 'ի տէր Ա՟ծ քո երդնուցուս, ոչ եթէ հրամանս ինչ երդման հաստատեաց, այլ զտղայական միտս նոցա յանուանցն 'ի կռոցն երդմանէն հեռացուցանել կամեցաւ: Քանզի ոչ եթէ անդէն և անդ զամենայն կատարելութիւնս կարէին ընդունել, այլ ընդելացուցանէր որպէս յովանակս տրմուղս: Եթէ ասացեալ էր թէ ամենևին մի երդնուր, թերևս և չերդնուին իսկ. այլ եթէ երդնուցուս, 'ի տէր Ա՟ծ քո երդնուցուս: Իսկ 'ի նորումն Քրիստոս զամենայն հրամանս կատարելութեանն պատուիրեաց, և ամենևին 'ի բաց եբարձ զերդմունս սատանայականս: Եւ ասէ Մովսէս՝ թէ “ամենևին մի երդնուցուս սուտ. այլ ես ասեմ. ամենևին մի երդնուցուս, մի յերկինս՝ զի աթոռ է Ա՟յ, մի յերկիր՝ զի պատուանդան է ոտից նորա, և մի յԵրուսաղէմ՝ զի քաղաք է արքայի մեծի, և մի 'ի գլուխ քո երդնուցուս՝ զի ոչ կարես մազ մի սպիտակ առնել կամ թուխ”:

Եւ արդ տես զառաւելութիւն նորոյ պատուիրանիս: Մովսէս ասաց թէ սուտ մի երդնուցուս. այլ ես ասեմ, ամենևին մի երդնուլ, մի սուտ և մի արդար. զի երդումն արդար երբէք ոչ է, այլ 'ի սատանայէ է. զի ինքն Քրիստոս ասաց, եթէ որ քան զայոյն և քան զոչն աւելի է՝ 'ի սատանայէ է: Եւ արդ եթէ յաթոռն Ա՟յ չհրամայէ երդնուլ, իսկ քանի՞ գեհենի և ահեղ հրոյ

մեծատնիցն որք յանձ երդնուցուն. և եթէ 'ի պատուանդանն չհրամայէ երդնուլ, իսկ յո՞ր խաւար երթիցէ՝ որ 'ի խաչն երդնուցու և 'ի չարչարանս նորա. և եթէ 'ի գլուխն չհրամայէ երդնուլ, յայտ է՝ թէ ոչ ես իշխան 'ի վերայ գլխոյ քո, այլ այն՝ որ սպիտակացուցանէ. և եթէ գլխոյդ ոչ ես իշխան, ո՞րչափ ևս առաւել ընկերին: Իսկ որպիսի՞ տանջանօք դատապարտեսցին որք 'ի մարգարէս և յառաքեալսն և 'ի մարտիրոսս երդնուցուն. և եթէ յԵրուսաղէմ չհրամայէ երդնուլ, յայտ է՝ եթէ և ոչ 'ի սուրբ բնակիչս նորա. և եթէ յերկինս չհրամայէ երդնուլ, յայտ է՝ եթէ և ոչ յերկնաւորն: Արդ ո՞ւր է արդար երդնուլ, յորժամ ասիցէ՝ եթէ ամենևին մի երդնուլ, մի յանձ, մի յերկինս, մի յերկիր, և մի որ ինչ 'ի նոսա է. ամենևին արգել և եբարձ զսովորութի սատանայական երդմանց: Իսկ զի՞նչ. եղիցի ձեր բանն այոն այո, և ոչն ոչ. և որ քան զայն աւելին է երդումն, այն 'ի սատանայէ է: Արդ ո՞ւր է արդար երդնուլն, յորժամ ասացն՝ եթէ որ քան զայոն և զոչն աւելի ոք ասիցէ՝ 'ի չարէն է:

Այլ արդ որ զերդումն ոք արդար ասիցէ, յայտ է եթէ զսատանայ արդարացուցանէ: Քրիստոս զերդմունս ամենայն՝ ծնունդ սատանայի ասաց. բայց միայն զայս երդումն՝ որ հրամայեացն զայոն և զոչն. զոր և ինք իսկ 'ի կիր արկեալ երդուաւ Աբրահամու, և ասէ. "Այո օրհնելով օրհնեցից զքեզ": Այլ այլուր ասէ. արդարև ասեմ ձեզ. և 'ի միւսումն ասէ. ամէն ամէն ասեմ ձեզ: Այս է երդումն զոր հրամայեաց մեզ, և այսպիսի երդմամբք հաստատին, և վստահանային ամենայն հաւատացեալք: Իսկ չարք և հակառակողքն 'ի սատանայական երդմանցն առնուն զվճիռ հաստատութեան, որպէս և Պաւղոս ասէ՝ եթէ ամենայն հակառակողացն հաստատութեան վճիռ երդումնն է. հակառակողաց և ոչ քրիստոնէից հաւատացելոց: Իսկ հաւատացելոցն՝ այոն այո է հաստատուն, և ոչն ոչ. և ոյ պաշտօնեայն որ քան զայոն և զոչն աւելի երդնուցու, թէ և քրիստոնեայ անուանի վասն մկրտութեանն, այլ ոչ հաւատացեալ, բայց հակառակող: Որպէս քրիստոնեայք են և գողք, քրիստոնեայք են և պոռնիկք, նոյն քրիստոնեայք են և հակառակողք, երդմնահարք և երդմնա-

կերք : Իսկ հաստատելոց այս պատուիրանապահութիւն է որ վասն երդմանս է, զոր և առաքեալն Յակոբոս եղբայր տեառն յայսմանէ զգուշացուցանէ ասելով. "Յառաջ քան զամ ինչ մի երդնուցուք, մի յերկինս, և մի յերկիր, և մի յայլ ինչ երդումն" : Եւ վասն այսորիկ ասաց, եթէ յառաջ քան զամենայն, զի երդումն է անօրէնութիւն առաւել քան զամենայն ամբարշտութիւնս մեղաց :

Ահա մեղս և անօրէնութիւնս գործեցին որդիքն Իսրայէլի, ոմանք չարաչար սպանութիւնս և պոռնկութիւնս, իսկ ոմանք զհայր և զմայր սպանին . ոմանք զկանայս ընկերաց յափշտակեցին . ոմանք զուստերս և զդստերս իւրեանց զոհեցին դիւաց . ոմանք թողին զած, և կուոց երկիր պագին . և այսու ամենայնիւ ոչ զարթեաւ սրտմտութիւնն այ ՚ի վերայ նոցա՝ որպէս յորժամ երդուան և ստեցին . քանզի որթ կտրեցին ՚ի տաճարին, և անցին ընդ մէջ քահանայքն և թագաւորն Սեդեկիա, և երդուան արքային բաբելացւոց, եթէ ոչ ապստամբեմք և ապստամբեցին : Եւ ասէ ած՝ թէ Սեդեկիա որ երդմանն իմում ստեաց, ասէ՝ ահա ես հանից ընդ կառավին նորա : Ապա յարոյց ած զարքայն բաբելացւոց ՚ի վերայ Երուսաղեմի, և եկին պատեցան զօրքն զնովաւ քաղդէացւոց, զքաղաքն հիմն ՚ի վեր արարին, ըզտաճարն աւարեցին, զաչս թագաւորին խաւարեցուցին, զորդիս նորա փողոտեցին, զմեծամեծս նորա սրով սատակեցին, և զժողովուրդն ՚ի գերութիւն վարեցին : Այս են երդման անօրէնութիւնք առաւել քան զամենայն ամբարշտութիւնս . որպէս և գրեալ է՝ թէ "Արդարացաւ ապստամբութիւնն Իսրայէլի առ ուխտազանցութեամբն Յուդայ" : Ապստամբութիւնն Իսրայէլի կռապաշտութիւնն էր, և ուխտազանցութիւնն Յուդայ՝ երդումն Սեդեկիայ . և վասն առաւել երդմանն Յուդայ՝ կռապաշտութիւնն Իսրայէլի որպէս թէ արդարութիւն համարէր : Զի որպէս որ սակաւ ինչ ցաւ ունիցի, և ապա յետոյ սաստիկ կսկիծք ինչ ՚ի վերայ հասանիցեն, առ աղէտս վերջին ցաւոցն զառաջինն որպէս առողջութիւն համարիցին, նոյնպէս և առաւել մեղացն և չարութեան երդմանն այլ անօրէնութիւնք որպէս եթէ արդարութիւն համարէին :

Եւ արդ ՚ի չար սովորութենէ ախտիս այսորիկ ամե-

նեւթին իսկ մեղս չարաչարս և անօրէնութիւնս որ ոչ համարի. այլ իբրև զհուր վառեալ 'ի բերանն զերդման սովորութիւնն այրեն հանապազ և ոչ զգան, այլ և 'ի հրապարակս երդնուն հանապազ: Նա յորժամ յեկեղեցին երթան մտանել 'ի ներքս 'ի յերդնուլ զարթնութեան և խորհի. ընդէ՞ր. զի յերդուեալ երթամ, ասէ. և որ արտաքոյն երդուաւ, բազում անգամ զայն ոչ իմանայ, և ոչ համարի ինչ առ ընդելական սովորութեանն: Ո՛չ եթէ 'ի ներքս բաւանդակեալ է ա̃ծ, և արտաքոյ ոչ. այլ նա արտաքոյ է և ներքոյ. և ամենայն որ մեղս և անօրէնութիւնս առնէ, եթէ արտաքոյ գործէ և եթէ 'ի ներքս, առաջի ա̃յ է: Նա դու զհրապարակին երդումն մի՛ փոքր ինչ և ընդվայր համարիր: Ի միտ առ զոր ասեմս. ամենայն սպանութիւնք եթէ արտաքոյ է, եթէ ընդվայր ինչ, սպանութիւն գործեցաւ. և ամենայն գողութիւք եթէ արտաքոյ և եթէ 'ի ներքս, և եթէ ընդ խաղ ինչ և եթէ ընդվայր, գողութիւն գործեցաւ. և ա̃մ պոռնկութիւն եթէ արտաքոյ և եթէ 'ի ներքս, և թէ զինչ օրինակաւ է, պոռնկութիւն գործեցաւ: Նոյնպէս և երդմունք ամենայն եթէ արտաքոյ երդնուն և եթէ 'ի ներքոյ, և կամ ընդ խաղ ինչ ընդ վայր, և եթէ զինչ օրինակաւ և իցէ, չարութիւն երդմանն կատարի: Ո՛վ զայս փոքր կարծեցուցանէր. եթէ սուտ երդուար և անդ, եթէ սուտ ստեցեր ա̃յ և անդ, եթէ սուտ ուրացար և անդ և ամենայն ուրեք երդուար, առաջի ա̃յ երդուար, առաջի ա̃յ ստեցեր, առաջի ա̃յ ուրացար:

Արդ զինչ արասցուք զահեղ ամբարշտութիւնս ախտիս այսորիկ. զի իբրև զհուր հոսեցաւ ընդ ամենայն երկիր, և լցան բերանք ամենայն բոցով անօրէնութեան ախտին: Որք 'ի հրապարակս և երդմունք 'ի բերանս. մանկունք 'ի զբօսանս և երդմունք 'ի բերանս. վաճառականք վաճառեն և երդնուն. թշնամանողքն թշնամանեն և երդնուն. դատախազողն դատախազէ և երդնու. և ամենեցուն քան զխօսս բերանոյն սատանայական երդումն յառաջէ. և ամենայն ցոփաղեացն և աղալեզուացն[1] չև խօսք 'ի սրտին՝ երդումն 'ի լեզուին կայ պատրաստ: Նա արդ ո՞ զայսպիսիս մարդ անուանեսցէ.

1 Այսպէս յօրինակին. որ և փոքր մի զկնի աղաւալեզուացն գրէ, զոր ուղղելի է աղաւաղլեզուացն: Ճառընտ. ասէ միայն աղաւաղ լեզուացն:

չէ և չէ լոկ ասել մարդ, այլ օձ չար և չարին սատա-նայի սպասաւոր: Պիղծ է բերան այնպիսւոյն, և հուր ժանդահոտ ցոլացեալ ելանէ 'ի բերանոյ նորա հանա-պազ: Ընդէ՞ր հանապազ առաջի ա̃յ հայհոյես, երդնուս և ուրանաս: Ընդէ՞ր հուր առեր 'ի բերանդ այրել ըզ-քեզ հանապազ: Ընդէ՞ր սուր սրեալ 'ի լեզուիդ ունիս՝ անդադար զքեզ խոցոտել. ո՞չ գիտես՝ եթէ երդումն տէգք սրեալ են սատանայի, և հանապազ որչափ երդ-նուս՝ ցցին 'ի սրտիդ քում: Երդումն կապանք սատանայի՝ կապէ զմարդիկ, և լուծումն ոչ գոյ: Երդումն խեղդ ան-ձին՝ որով խեղդէ զմարդիկ 'ի ժամ մահուն, և առեալ տանի 'ի դժոխս:

Այլ արդ եղբարք, երկիցուք յերդմանէ քան յամե-նայն մեղաց և քան յամենայն անօրէնութենէ. զի քան զամենայն մեղս հեռացուցանէ յա̃յ: Վասն զի գիտաց անիծեալ թշնամին՝ թէ 'ի ժամ մկրտութեանն երդ-մամբ հրաժարեն յինէն, և երդմամբ ուրանայցեն զիս, երդմամբ հեռասցին յինէն ասելով՝ թէ հրաժարեմք 'ի քէն, սատանայ, հրաժարեմք 'ի պաշտամանէ քումմէ, հրաժարեմք 'ի հրեշտակաց քոց, հրաժարեմք յամե-նայն խաբէութենէ քումմէ. և դարձեալ երից ան-գամ երդուան և հաւատացին 'ի սուրբ երրորդութիւնն ասելով՝ հաւատամք 'ի հայր, հաւատամք յորդի, հա-ւատամք և 'ի սուրբ հոգին, և կնքեցին զինքեանս եր-րորդական զօրութ̃բ հօր և որդւոյ և սուրբ հոգւոյն, և զսուրբ խաչն 'ի վերայ մատանի եդին: Այլ ես յոր-ժամ հայիմ յերեսս նոցա, և տեսանեմ զնշան խաչին որոյ դրոշմեալ 'ի վերայ երեսաց մարդոյն, յետս եր-թամ 'ի սուրբ նշանէն և փախչիմ և հեռանամ, և չը-կարեմ ինչ առնել: Խորհեցաւ և ասէ. զի՞նչ արարից, և կամ զի՞նչ գործեցից, իւ կարացից հեռացուցանել զքրիստոնեայս 'ի մեծութ̃է և հիմանէ հաւատոց սուրբ երրորդութեանն, և 'ի զօրութենէ և 'ի պահպանու-թենէ սուրբ խաչին: Այլ ասէ. գիտեմ զի՞նչ արարից. զի երդմամբ ուրացան զիս, և երդմամբ հեռացան յի-նէն, ուսուցից և ես առ հասարակ ամենայն մարդկան՝ թագաւորաց և իշխանաց, եպիսկոպոսաց և քահանայից, մանկանց և ծերոց, արանց և կանանց երդնուլ սուտ 'ի հրապարակս, 'ի վաճառս, 'ի տունս, յեկեղեցիս,

յարեգակն և 'ի լուսին և յաստեղս և 'ի գլուխ իւրեանց և յաչս և յա͞ծ ինքն գլխովին և 'ի սուրբ խաչն Քրիստոսի, որ է կատարեալ ուրացութիւն և հեռանալ 'ի քրիստոնէութենէ և 'ի զօրութենէ սրբոյ խաչին, և ապա կարասցեն յաղթել ամենայն մարդոյ : Եւ արդ ո՞չ երկնչիցիմք յահագին և 'ի կործանիչ և յանկանգնելի չարեացս այսոցիկ. ո՞չ դողայցեմք և ընդ երկրաւ մտանիցեմք՝ որ հանէ զմեզ յերեսաց ա͞յ, և տայ 'ի ձեռս սատանայի :

Այլ երդմանք հաստատեն զբերանս, զի առանց երդման ոչ հաւատայ : Չէ այդ հաստատութեան, այլ սատանայական սովորութեան. քանզի զբանն միտք առաքինիք ընտրեն, և ոչ երդմունք. զի առաքինեացն երկիւղածիցն Թէ և չերդնուն՝ հաւատան. իսկ ցոփագնացն և ազատալեզուացն Թէպէտ և բիւր անգամ երդնուն՝ ոչ ոք հաւատայ. զի ամենայն ոք 'ի մտացն հաստատութիւն և յառաքինութիւն հայի, և ոչ յընդվայրած լեզուին աղութիւն : Քանզի մեծ առաքինութիւն այս է՝ եԹէ մտօք ոք 'ի բանս կամ յերդմունս հաստատուն կայցէ, քան զողորմութիւնս և զպատարագս մատուցանել. այն յընչիցն ձեռնհասութենէ է, բայց 'ի բանս և յերդմունս հաստատուն կալ՝ մտացն առաքինութիւն է. և որոյ միտքն առաքինիք են, երդումն ոք 'ի նմանէն ոչ պահանջէ : Իսկ երդմանց սովորութիւնք յաներկիւղածութենէ է, և յանընտրող յիմարութենէ. հանապազ կապէ զբանս իւր երդմամբք, և կապէ զհոգին իւր ընդ հուր գեհենին :

Եւ արդ զայս ամենայն իմացեալ Թափեսցուք զԹոյն բիւր յիմարութեան մերոյ. երկիցուք յահէ ահաւորի մեծին ա͞յ, և բազում զգուշութեամբ պահեսցուք ըզհրամանս պատուիրանացն ա͞յ՝ ամենաքննող և ճշմարիտ ահեղ դատաւորին, և զչար սովորութիւն 'ի լեզուաց մերոյ 'ի բաց արասցուք, և առաւել փութով հեռասցուք 'ի սատանայական և 'ի սատակիչ ախտիցն երդման. և մի վայրապար ընդ ա͞յ յուխտ մտցուք և զսուրբ անունն ա͞յ ընդ երդմանն կապեսցուք. այլ վստահացուսցուք ըզմարդիկ յոչն և յայոյն մեր հաստատել. զի այս են երդմունք քրիստոնէից հաւատացելոց. և ամենևին ոչ նեղել զոք և զրկել, և ոչ հակառակութեամբ երդմունս

սատանայական յեկեղեցի այ մուծանել ։ Այլ զի եւկ գտան , աւա՜ղ , դատաստանք 'ի մէջ քրիստոնէից . ընդէ՞ր ոչ դուք զրկիք և նեղիք 'ի նոցանէն , այլ դուք զրկէք և նեղէք զնոսա , որ ոչ էք 'ի քրիստոնէից հաւատացելոց , այլ յանօրինաց հեթանոսաց ։ Արդ 'ի բաց արասցուք զայս ամենայն , և դիցուք սանձս լեզուի և կապ բերանոյ զերկիւղն այ . զի ըստ հաճոյից նորա խօսեսցուք , և զկամս նորա արասցուք . կացցուք առաքինութեամբ , և վախճանեսցուք հաւատով , և անդ երթեալ զերկինս ժառանգեսցուք , և 'ի խոստացելոց բարութեցն վայելեսցուք 'ի Քրիստոս Յիսուս . որում փառք և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։



## ԺԶ

## ՎԱՍՆ ԱՐԲԵՑՈՂԱՑ ԱՆՕՐԷՆՈՒԹԵԱՆՑ

Մեծ սգով և ցաւագին արտասուօք պարտ է պատմել զմիոյ ճառիս, և ցուցանել զանզեղջ չարութիւնս արբեցողացն, զանապաշաւ անօրէնութիւնս բամբասողաց՝ որ միշտ որովայնի իւրեանց պաշտօնեայք, և չար դիւին արբեցութեանն կան 'ի հարկի։ Այս են հանապազ հայհոյողք և արհամարհողք և թշնամանողք պատուիրանացն Աստուծոյ. զոր և Պաւղոս իսկ լալով ողբայր ըզթշնամիս խաչին Քրիստոսի. որոց կատարածն, ասէ, կորուստ է. որոց ած որովայնն իւրեանց է, և փառք ամօթն. որք զերկրաւորս միայն խորհին, և ոչ զվերս աւաքինութեանն՝ զոր յերկինս վայելեմք. և մեծաւ ըզգայութեամբ նմանեն անասնոց անմտից՝ յամենայն ժամ խոտաճարակ, զի թշնամիք խաչին են և չարչարանացն Քրիստոսի որկորեայքն և արբեցողքն՝ որ միշտ զորովայնն պաշտեն և ոչ զՔրիստոս, և անհնարին անզգայութեամբ զկեանս անցուցանեն. որոց և յայտնի իսկ բաղդէ մարգարէն՝ եթէ անզգամք և անմիտք կորիցեն։

Այլ ո՞ւր ուրեք այնչափ անզգամագոյն անմտութիւնք կայցեն, և ոչ կարասցեն գիտել՝ եթէ մեծ պակասութիւն է կուրն որ զրկեալն է 'ի լուսոյ արեգական։ Այլ եթէ այս պակասութիւն է, պարտ է գիտել՝ թէ որչափ ևս առաւել մեծագոյն ևս պակասութիւն է և անհնարին կուրութիւն այնոցիկ՝ որ խաւարեալքն են 'ի լուսոյ պատուիրանացն, և վրիպեալք 'ի գրոց տեղեկութենէ. և ոչ կարեն որոշել զչարն 'ի բարւոյն, և ոչ հաւատար միմեանց իմանալ։ Նայեսցուք ինչ է զոր ասեմս. որպէս թէ ումեք դիպեսցին երկու օձք չարաթոյնք, և զմինն թիւնաւոր կարծիցէ և փախիցի 'ի նմանէ, և 'ի միւսն աներկիւղ մերձենայցէ՝ որ զնոյն չարութիւն մահաբեր թիւնիցն ունիցի, և չարամահ սպանանիցէ։ Այսպիսիք

են՝ որ զմի 'ի պատուիրանացն լսեն և պահեն երկիւղիւ, և զհաւասարն նորուն արհամարհեալ անարգեն, և նովին չարաչար կորնչին: Այլ արդ այս է որով կորնչին. լուաք 'ի Պաւղոսէ, մանաւանդ եթէ 'ի Քրիստոսէ իսկ որ ասէ, թէ "Գողք և պոռնիկք և արբեցողք և բամբասողք զարքայութիւնն այ ոչ ժառանգեն":

Այլ արդ ո՞ւր կայցէ այսպիսի յիմարութիւն կուրութեան՝ որ զայս ամենայն ընդ մի չարութիւն ոչ համարիցի: Այն յոմանց զգուշանայ և պահէ, և զոմանս արհամարհեալ անարգէ, և աներկիւղ մերձենայ՝ որ ունի զնոյն չարութիւն: Արդարեւ իսկ անզգամք և անմիտք են այնպիսիքն, և նման կուրացն մոլորելոց որք ընդ խաւարն խարխափիցեն. այնպէս և նոքա յամենայն ինչ անխտրութեամբ մերձենան, և լքեալք 'ի սաստիկ ծուլութենէն, և աներկիւղ գործեն զարգելեալսն 'ի պատուիրանացն: Զի եթէ արգել զպոռնկութիւնն և ըզգողութիւնն, արգել և զարբեցողութիւնն և զբամբասանս. զի միապէս հաւասար միով հրամանաւ արգել զամենայն: Իսկ դու ընդէ՞ր 'ի համանման հաւասարացն յոմանց իբրև 'ի չարէ աներկիւղ հեռանաս, և յոմանց իբրև 'ի բարի անկասկած մերձենաս. զի եթէ պիղծ է գողութիւնն և պոռնկութիւն, պիղծ է և բամբասանք և արբեցութիւն. ընդէ՞ր զպոռնկութիւն զզջաս և ապաշխարես, և վասն է՞ր զարբեցութիւնդ անփոյթ արարեալ արհամարհիցես, որք միապէս վիրաւորեն, և երկոքեան սպանանեն: Զի եթէ օրէնսդիրն հաւասար չարութիւն ցուցանէր և համանմանս պղծութեամբ, և որ ասացն եթէ գողք և պոռնիկք զարքայութիւն այ ոչ ժառանգեն, անդէն ասաց՝ նոյնպէս բամբասողք և արբեցողք զարքայութիւն այ ժառանգել ոչ կարեն:

Այլ արդ եթէ չար է պոռնկութիւն, չար է և արբեցութիւն. իսկ ընդէ՞ր չերկնչիս և խորշիս յարբեցութենէն իբրև 'ի պոռնկութենէն. այլ աներկիւղ մերձենաս, և անկասկած կատարես զարբեցութեանն պղծութիւնս: Ո՞չ լուար 'ի Պաւղոսէ՝ զի միով պատժովք պատուհասէր զպոռնիկն և զարբեցողն: Իսկ որ համարինն եթէ զպոռնիկս դատի ած, և զարբեցողսն ընդ նմին ոչ, այսպիսիքն յիմարեալք և կուրացեալք են մտօք. զի նոյն հուր և նոյն վայումն և նոյն տանջանք են

արբեցողին որպէս և պտանկին. և որպէս և մարգարէն զվայումն գեհենին նշանակելով ասէր. «Վայ հզօրացդ ձերոց՝ որ ըմպէն զգինին, և իշխանաց՝ որ խառնեն զցքին». զի գինին իսկ, ասէ, այրէր զնոսա անչափութեամբ և արբեցութեամբ:

Այլ և ամենք զայրեն իսկ ոչ իմանան. զօձից չարաթունից բուռն հարկանեն, և զդառնահամ սատակումն որ անտի է՝ ոչ իմանան: Որոց ոչ միայն զոգւոյն տանանեն արբեցութեանն զեղխութիւնք, այլ և զմարմինն փետեն և ապականեն գինւոյն նեխութիւնք, և հանապազ զախտն տաղտկացուցանեն, և նեղեն նողկալովն և շմալովն, և որովայնին փքալովն. և զողորմելի ոգին միշտ նեղէ և չարչարէ իբրև զթշնամի, և արգելեալ պահէ 'ի մթի և 'ի խաւարի՝ յորժամ մթերք կերակրոցն և ըմպելեացն 'ի ներքս ամբարիցին, և ընդ ցիխ աղբոյն և տղմոյն որդունքն զուղիցին, և զկարգս աղեացն տղողիցեն, և զաղբաբոյն որովայնն փտեալ ապականիցէ: Նա միշտ հեծէ և հանապազ թառանչէ յորովայնին ծանրութենէ, և զժահահոտ զգայութիւքն նեխութեանն զմերձաւորսն զազրացուցանէ, և 'ի կարկառակոյտ աղբոյն յաճախութենէ զառ 'ի վեր փոխածք ելանեն, և զառ 'ի վայր խողխողանք արձակին, և շոգին աղտեալ ընդ երեան մտանէ, և ընդ օդսն տարածանին, և ազգի ազգի ցաւս 'ի մարմինն արկանէ. զախտն մեղկէ, զմարմինն թուլացուցանէ, զատամունսն խանգարէ, զուղիղն ապականէ, զտեսանելիսն գիջացուցանէ, և զամենայն անդամսն ջրգողեցուցանէ. այլ և 'ի նեխութենէ լճացեալ աղբոյն զեռունք զեռան, և ձիձիք ծնանին. որոց բազում անգամ զախտն նեղեալ յանկարծահաս սատանեն: Արդ այս և այսպիսի ցաւք և աշխատութիւնք են մարմնոյ 'ի զեղխութենէ արբեցութեանն:

Իսկ զոգւոցն ցաւոցն զի՞նչ ասացից, և կամ ո՞ր բերան բաւական է պատմել զանհնարին աղէտիցն ցաւոց՝ որ 'ի դատաստանի մեծի ահեղ աւուրն յայտնեսցի. տոկումն բեմբին, արհաւիրք դատաստանին, դառն դատաստանն, աննողորմ տանջանք, աններելի պապակումն գեհենին անջամջելին, տարտարոսք ներքին և հնոցք վառեալք, յոր հուրն հոսեալ իջանէ յորդահոս գետոցն հրեղինաց, որ կան և պահին 'ի պահանջումն ամենայն մեղաւորաց և

արբեցողաց ։ Այլ եթէ մարթ էր ցուցանել յանդգնման, ամենայն իսկ 'ի տանջանս և 'ի դատապարտութեան ցուցանէր զոգիս արբեցողացն, զի միշտ 'ի մթի և 'ի խաւարի պահէ արբեցութեանն թմբրութիւնն, և իբրև 'ի յանդունդս ինչ աղջամղջին անկեալ գնի 'ի մարմինն. և միշտ ննջեալ 'ի գինւոյն գիջութենէ՝ թաղեալ կայ հանապազ իբրև մեռեալ 'ի գերեզմանի կիսամահ և արխուր. և արշաւի 'ի մարմինն թանձրութիւնն յաւելու, նոյնչափ և ոգին 'ի տկարութիւն իջանէ ։ Այլ արդարեւ իսկ յիրաւի են յայսպիսի խաւարի արբեցողացն հոգիք, որք զտիւն ամենայն յարբեցութեան ծախիցեն, և զգիշերն ողջոյն 'ի քուն հանիցեն, և այգուցն յարուցեալք ծանրարթունք իբրև զխելագարս դանդաչիցեն, և չև երեկուն թմբրութիւնն թափեալ՝ անդէն 'ի նոյն զառնայցեն, և զՃառս երկիւղի այ և փառաց պաշտօնութեան ոչ ճանաչեն ։

Արդ չիցե՞ն յանլոյս խաւարի այնպիսիքն. չիցե՞ն 'ի միգի և 'ի մոլորութեան մեռեալք և թաղեալք 'ի բարեաց, և չարեացն միայն կենդանիք. որք վասն արբեցութեանն շուայտանաց մտացածին են բանիւք անօրէնութեան բանս եւ յօդեն և ասեն, թէ որ յարբեցութեանն ոչ գողանայ և ոչ պոռնկի և կամ սպանանէ, արբեցութեամբ միայն ոչ մեղանչէ ։ Այս 'ի մտաց թափելոց են բարբանջք, որք և զարբեցութեանն անուն ոչ իմանան ։ Զի ամենայն որ արբենայ և սպանանէ, երկուք են չարիքն, սպանող է և արբեցող. նոյնպէս և որ արբենայ և պոռնկի, պոռնիկ է և արբեցող. իսկ անառակ՝ արբեցողք միայն են ։

Պղծնեսէրք են որք յանդուգն ցանկութեամբ զհետ գինւոյն շրջիցին, և 'ի նմին յամիցեն, և զանէծս ոչ պատուիրանապահացն ժառանգեսցեն ։ Որպէս և Սողոմոն ասէ՝ թէ ո՞ւմ է վայ, ո՞ւմ է խռովութիւն. եթէ ոչ այնոցիկ՝ որք յամեն 'ի գինւոջ, և որք դիտեն ուր գիներբուքն լինիցին, և անչափութեամբ գինւոյն զեղխեալ յիմարին և թմբրին իբրև զանբան անասունս՝ ոչ գիտելով թէ ած իմաստուն բանաւոր արար զքեզ, և դու յանառակ արբեցութեանդ թմբրիս և յիմարիս և 'ի մտաց անկանիս, և չես 'ի մարդկան համարի, այլ 'ի վայր եւ քան զանասուն՝ անզգայացար յիմարութեանդ

և անդամալուծութեամբք, և ամենևին իսկ իբրև զփայտ և զքար անզգայացեալ 'ի գինւոյն զեղխութենէ: Ո ի թշեալէտ և մարմին է արբեցոյն, ձեռքն 'ի գործոյն են դադարեալք, ոտքն 'ի գնացիցն են պարաւանդեալք, լեզուն 'ի խօսելոյ համրացեալ, լսելիքն 'ի լսելոյ են խըցեալք, աչքն 'ի տեսութենէն կուրացեալք, սիրտն յիմաստութենէն է յիմարեալ, և ամենայն անդամքն է 'ի խաւարի՝ խելացնոր և մոլեկորոյս:

Այս են չարիք և անօրէնութիւնք արբեցութեան՝ որք զարքայութիւնն այ ոչ ժառանգեն, այլ ընդ պոռնիկս և ընդ սպանողս դատին. զի զիմաստութիւնն աստեղծեալ այ՝ 'ի յիմարութիւն փոխեցին ցանկութեամբ գինւոյն արբեցութեան: Եւ ուր ենն և ուր երթանն և ուստի գան՝ ամենևին իսկ ոչ իմանան, զի ըմբռնեալ ունին զզգայութիւնս նոցա գինւոյն թմբրութիւնք, որ յիմարեցուցանէ զիմաստութիւն, թուլացուցանէ զզօրութիւնն, քայքայէ զխորհուրդսն, և լուծանէ 'ի յուժոյ արութեանն գինւոյն զեղխութիւնն: Եւ արդ ո՞չ է այս արժանի մեծի տանջանաց և ահեղ բարկութեանն 'ի վերուստ. զի զխօսունն և զբանաւորսն անբան անասունս եցոյց արբեցութեանն զեղխութիւն: Վասն որոյ Պաւղոս պատուիրէ՝ եթէ "Մի՛ արբենայք գինւով, յորում զեղխութիւն է": Օ՜ ի եթէ որք 'ի խորանն մըտանէին 'ի հնումն՝ գինի ամենևին իսկ ոչ ճաշակէին, որչափ 'ի նորումս պարտ է պարկեշտութեամբ եւս մտանել առաջի այ, զի մի՛ յարբեցութենէն զեղխեցիմք, և յանդիմանեալ դատապարտիցիմք իբրև զորդիսն Ահարոնի, որ վասն զեղխութեանն հուր օտար եկեր զնոսա, որ եղև յօրինակ անառակ քահանայիցն: Վասն որոյ գիրն ասէ՝ եթէ անառակ է գինի, և թշնամանող է արբեցութիւն, և որ խառնակի ընդ նա՝ չէ իմաստուն. զի իմաստնոյն և ջուրն միայն բաւական է 'ի դադարումն ծարաւոյն, և 'ի պէտս խելացն զուարթութե. քանզի զուարթ են, ասէ, խելք ջրարբաց, և առողջ են մարմինք ուծակերաց. զի և տէրն ամենայն արարածոց այսպիսի սեղանովք յագեցուցանէր զժողովուրդն յանապատին, և զգինի ամենևին ոչ յիշեաց. զի օրինակ ամենայն աշխարհի էր լինելոց ճաշն Քրիստոսի:

Բայց գիտեմ զի ասես իսկ, եթէ ընդէ՞ր ապա արար

զգինին՝, զի զըմպելն արգել։ Ոչ եթէ զըմպելն արգել, այլ զարբենալն. որպէս արար զկին վասն անուանութե, և զպոռնկութիւնն արգել. արար և զերկաթ վասն երկրագործութե, և զսպանութիւնն արգել. արար և զգինի վասն մերոյ տկարութեան, և զանչափն կարճեաց։ Ոչ եթէ զըմպելն խոտէ, այլ զարբենալն պատուհասէ։ Բայց և գինի իսկ 'ի պէտս հիւանդաց է և օգտաւորաց, և մեծի խորհրդոյն. որպէս և ասէ՝ եթէ գինի օգտաւորաց, և ուրախութի այնոցիկ որ 'ի տրտմութեանն իցեն։ Իսկ որ զկենդանութե զպէտս վճարէ, հաց է և ջուր և հանդերձ. բայց այլն ամենայն ցանկութիւնք են և ոչ կարևորք, ընդ որ ոմանք սովորութեամբ և կամօք կապեն, և ոմանք կամաւ և սովորութեամբ հեռանան։ Այլ արդ մեք մի սովորութեամբ իսկ կապեսցուք ընդ չար դիւրին արբեցութեան. այլ կամօք հեռասցուք յորկորստութենէ կերակրոց և յանառակ արբեցութենէ, որով զօրէնս նորա ընկալցուք. զվարս յարդարեսցուք, և զառաքինութիւնս յօրինեսցուք, և զսէր սուրբս սիրեսցուք, 'ի պահս պնդեսցուք, յաղօթս պարապեսցուք, յողորմութիւնս յորդորեսցուք, և 'ի պարկեշտութիւն յօժարեսցուք, զանձինս արդարասցուք, և զոգիս մեր ապրեսցուք. զվախճանն բարի ընկալցուք, զի յանանց 'ի կեանսն փառաւորեսցուք, և ընդ հոգեղէնսն դասակցեսցուք. զփափագելի դրախտն ժառանգեսցուք, և յանմահ բարիսն վայելեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ԺԻ.

## ՎԱՍՆ ԱՆՕՐԷՆ ԹԱՏԵՐԱՑ ԴԻՒԱԿԱՆԱՑ

Ո՜ւր երթեալ դադարեցից և լացից զահեղ անօրէնութիւնս որ զիս ձմլեցուցանէ. և կամ ո՞ւր լուեալ զօղեցից թախծեալ մեղօքս, և մաշեալ յամենայն զազրալի և չարալուր համբաւոյս՝ որ միշտ զտխուր իմ գելու, և գալարեցուցանէ զաղիս իմ և զորովայն իմ ողբալով, և հանապազ հալէն և հեղձուցանեն զիս տրտմութիւնքս. զի յամենայն ժամ զանապակ պղծութիւնս լսեմ, և զանօրէն անբարշտութիւնս տեսանեմ: Այլ 'ի բազում թախանձանաց սրտի իմոյ կցեցաւ ոսկր իմ 'ի հող, և մարմին իմ յերկիր քանցեցաւ. զի 'ի լռութենէ բազում մնաց յուզութեանց եղև իբրև զխաւ չորացեալ, և իբրև զպատկեր ինչ առանց շնչոյ. և յափշութենէ մնաց իմոց զիմ սխալանս յետոյ ընկեցեալ մոռացայ, և զձերդ քննեմ հանապազ: Վասն զի լուր չար և համբաւ զազրալի 'ի լսելիս մեր հասեալ հնչէն հանապազ. յորմէ բուրէ սաստիկ ժանտութիւն և չարանեխութեան և փտութեան. և հոտ չարահոտ 'ի վեր ցոլացեալ տաղտկացուցանէ զսուրբ եկեղեցիս, ընդ որ անձինք ամենայն արդարոց ահիւ հիացեալ ողբան զանօրէնութիւնն:

Այլ ես լի ամենայն յանցանօք միշտ զգոյն հառաչեմ և ողբամ. զի 'ի զազրալի անօրէնութեանց ձերոց յամենայն ժամ թատերք սատանայականք ցնծան խայտալով, և եկեղեցիք Քրիստոսի միշտ ողբան զաւանդապետս: Քանզի առեալ զմանկունս սուրբ եկեղեցւոյ՝ իւր ընծայեցոյց սատանայ, պղծեալս և պղտորեալս յանառակ թատերս տեսարանաց: Որ միշտ հանապազ կամի հեռացուցանել զմարդիկ յողորմութենէն այ̄, և յամենայ պայծառ անանց բարութեանց, և տանել առնել բաժանորդս իւրոյ ահեղ աղէտիցն տանջանաց: Վասն որոյ զի-

մոյ բաղում յանցանացն անտես արարի , ձերոյ վշտացդ լինիմ վշտակից , և ողբամ զանհրեւոյթ վէր բեկման անձին ձերոյ . զի մերժեալ արհամարհեցէք զպատուէրս պատուիրանացն իմ , և առ ոտն հարեալ կոխեցէք զհաւատս առաքելական եկեղեցւոյ . և առ ոչ ինչ համարեցայք զսրբութիւնս մարմնոյ և արեանն Քրիստոսի , զոր հանապազ ընդունիք յահաւոր և 'ի սոսկալի սեղանոյն :

Այլ արդ յոյժ ընկղմեալ էք 'ի դիւական մոլորութենէդ , և գերեալք և գրաւեալք 'ի խորհրդոց սատանայի . փութացայք անկանել 'ի դառնամահ որոգայթս նորա , երթեալ մտանել յապականիչ թատերն խաղուց , լսել զձայնս աղտեղիս խաբարան ականջաց , 'ի զազրացելոցն և պղծեցելոցն յանօրէն և 'ի չարալլուկ կատաղեաց գուսանաց , որք միշտ զշնորհս հոգւոյն սրբոյ հալածեն , և զմահաբեր պիղծ խորհուրդ սատանայի 'ի սիրտս և 'ի խորհուրդս ձեր սերմանեն . յորմէ վառեալ բոցանի հուր ցանկութեանց , և բորբոքեալ տոչորի բոցն ազգի ազգի ախտիւք 'ի մարմինս հնազանդելոցն , որք իբրև զփուշս և զտատասկս թաղեալ զանձինս վիրաւորեն , և մթերեալ կուտեն բեռինս դժուարակիրս 'ի վերայ ոգւոցն կորուսելոց : Այլ հուր այրիչ և սուր սատակիչ անձանց իւրեանց ստացեալք ելանեն 'ի թատերս պղծութեանց՝ եղեալ կարեվէրս և հատատախոց 'ի գաղտնի նետից սատանայի՝ որ չարաչար զոգիս վիրաւորէ , և փոքր կարծեցուցանէ զմեծամեծ անօրէնութիւնս . յորմէ պարտ էր սարսել և դողալ հանապազ , և փախչել և հեռանալ բաղում երկիւղիւ : Ո՜հ չար է տկարութիւնն , չար էն և յորդորիչք նորա՝ գինի և գուսան և սատանայ , և միտք մոլորեալք ցոփագնացութեամբք և յափրանօք վաւաշոտութեմբք , որք կանխօժար և դիւրահաւան ընդունին զչար սերմանս սատանայի , մանաւանդ թեթեւամիտ և շուայտաբարոյ ազգն անհամեստից կանանց , երագալուր և դիւրահաւան և վաղապատիրք [1] . որք յափրանօք պաճուճեալք միշտ 'ի թատերան փութան աներկիւղ 'ի տեսիլ անօրէն խաղուցն և սատանայական հրապարակին , ելեալ 'ի վեր 'ի դիտակ տեղիս նստին , խորհին և դիտեն զնմանիսն իւրեանց 'ի չարիս .

1 Երկու օր . ընդհանրապետիկ . . . 'ի Վենետիկեան ձեռագրի :

որ թէպէտ և գործոյն անօրէնութեան ոչ պատահեն առժամայն, սակայն զնետս սատանայիցս հարեալ տանին ’ի սիրտս, յորմէ պարտ է առ յաւէս մեռանել: Որպէս և զգազան ինչ վիրաւորեալ ’ի նետից որսորդաց, որ թէպէտ առժամայն ’ի հաղբիցն զերծաւ, սակայն զնետսն տարեալ մեռանի:

Դու արդ իւ խելք զաղաղակեցուցանէք զահեղ տոչորումն ցուցեալ բոցոյն այնորիկ. և կամ իւ հնարս բժշկութեան աներեւոյթ վիրացն գտանել մարթասցուք. և կամ օրինակ իւիք աւարեալ կործանեսցուք զտեղի թատերցն պղծութեան, զորոգայթն մահաբեր, զժողովն բազմաչար, զպարուսանոցն ամենայն ախտից: Ով ի անտի յորդորին կուսանք ’ի պոռնկութիւն, ամուսնացեալք ’ի շնութիւնս. անտի լինին կանայք առնելի արանց, և արք կանանց արհամարհելի. անտի որդիք ’ի հարանց թշնամանին, և ծառայք ’ի տերանց. անտի ծերոց անհամութիւն և երիտասարդաց վաւաշոտութիւն. անտի է պառաւանց յայրատութիւն, և աղջկամարդկացն գիջութիւն, և արանց լկտութիւն, և կանանց կատաղութիւն. անտի են մարդկելուզութիւնք և կնահանութիւնք և մանկասպանութիւնք և այլ զրկութիւնք յաղագս զարդուցն պաճուճանաց. անտի են անփառութիւնք և պղծնութիւնք, և բազում մեքենայք չարաչար ախտից. անտի է և զանազան պղծութիւնք՝ զոր և ասել իսկ աղտեղի է: Այլ և ուսուցանէ անձին լկտութիւն, ոգւոյ մեղկութիւն, մտաց քայքայումն; աչաց յայրատութիւն, լեզուի դատարկաբանութիւն, գործոց հեղգութիւն. և պարապեցուցանէ յամենայն չարիս, որ ուծացեալ հեռացուցանեն ’ի սիրոյն այ, և մերժեալ հանեն ’ի քրիստոնէական կարգէ: Այլ և զայլ ևս ազգի ազգի կերպարանս չարեաց ասել չեմ բաւական, զոր թատերքն ուսուցանեն. զամբարտաւանութիւն, զհայհոյութիւն, զնենգութիւն, զմեխմեխութիւն, զչարակնութիւն, զըննախանձ, զբամբասանս. վասն որոյ զեղուն պատուհասքն այ ’ի վերայ երկրի, որ սաստիկ սրտմտութեամբ ’ի տանջանս դատապարտէ: Ահա զայս ամենայն անօրէնութիւնս սատանայի՝ որք մտանեն ’ի թատերս խաղուցն, և աճեցուցանեն ’ի մարմինս իւրեանց զչար պտուղ սերմանցն սատանայի:

Այս արդ ո՞ր բերան բաւական է ողբալ և լալ զայնպիսի աղտեղեալսն և զպղծեալսն. և կամ ո՞ր լեզու պատմել կարասցէ զանթիւ աղէտիցն բազմութիւնս՝ զոր անտի ստանան. և կամ ո՞ր միտք ցուցանել զանհեդ տանջանացն բազմութիւնն՝ զոր պատրաստեալ է նոցա 'ի հոսանս հրոյ գեհեննին ընդ ա̃ծամարտան սատանայի, որք զխաւարայինսն ախորժելով ընկալան: Այս արդ էր վասն այդպիսի տանջանացդ մտանիցես, և կամ զի՞նչ 'ի պիղծ խաղուցն ընկալար. քրքջանս և ցոփանս և թեթևանս, և օգուտ և ոչ ինչ. այլ անթիւ ահեղ աղէտից բազմութիւն: Ո՜վ թէպէտ և պակշոտելոցն ըղձալի ցանկալի պիղծ թատերցն տեսութի, որք միշտ յախտից ցանկութեամբ ծիւրին և ծորան, այլ առողջիցն երևի տաղտկալի պղծութին և անօթալի վաւաշոտութիւնն:

Կանայք 'ի բարս բոզից կերպարանեալք, և այրք ձիոց մստակախաղաց, որք անօրէն զազրաբանութեամբքն և քան զանասունս ևս 'ի վայր իջանեն, և քան զշանց փսխածն աղտեղագոյնս ևս փսխեն զտաղտկալի բանիցն զգարշութիւնս, յորմէ շարաւ նեխութեան և հոտ զազրալի ելանէ, որ զանձինս երկիւղածացն զզուեցուցանէ, և դիւացն է ցանկալի. զի 'ի մէջ այնպիսի խայտառակելոցն սատանայ զուարճացեալ շրջի 'ի վերայ: Ո՜վ ուր կատակք և զուարճք են և խաղ և ծաղր լկտիք, անդ և դևք ընդ նոսա 'ի պարու անցանեն, և սերմանեն բազում աղտեղութիւնս 'ի միտս զեղխեցելոցն, և առաւել ևս 'ի մոլեգնութիւն բորբոքեն զկուսանսն՝ զպիղծ և ըդհալածողս շնորհին սրբութեան, զբորբոքիչս հրոյն ցանկութեան, զարհամարհողս պատուիրանացն, զկարապետս սատանայի խորհրդոցն, զանօրէնս և զա̃ծամարտս և զթշնամիս ամենայն արդարութեան: Ո՜վ որս պարտ էր խոկ բազում քարամբք քարկոծել և յաշխարհէ հալածել, զնոսա առեալ զեղխելոցն 'ի խաղարանս զբօսանին, յորս մտանեն ողջանդամք, և ելանեն վիրաւորեալք. զՔրիստոս 'ի բաց մերկացեալք, և զսատանայ յանձին զգեցեալք. զհոգին շնորհաց հալածեալ, և լցեալ պիղծ հոգւովն դիւաց: Ո՜վ ամենայն որք հաւատովք և երկիւղիւն մերձենան 'ի Քրիստոս, սուրբ հոգւովն լուսաւորին, և որ ըստ օրէ գործովք առաքինութեամբ 'ի վեր ելանեն, և մեկնեալ հեռանան յամե-

նայն խաբից սատանայի ։ Իսկ որ պղծութեամբ թատերացն առ դեւս հային հանապազ, խաւարին վարիւք միգաւորեալք մթանան, և ընդ պիղծ ոգւոյն սատանայի, և որ ըստ օրէ անօրէնութեամբք ծանրացեալք 'ի վայր կործանին, մինչև ուծացեալ հեռանան յերկնիղէն պատուիրանացն այ, և լինին ամենայն սատանայական խորհրդոցն ։ Իսկ վասն այսորիկ առաւել ախորժելով ընթանան 'ի բանակետեղ դիւաց, փութալ 'ի կոչն սատանայի՝ քան առ Քրիստոսի սուրբ եկեղեցին ։ Զի բանակք դիւաց են թատերքն խաղուց, և ամենայն անառակ և գուսանական գինարբուքն, որք զեղխին և պակշոտին անօրէն և անամօթաբար՝ լուծեալ զամենայն լեզուի և գլխոց բերանոյն արձակեալ ուտեն և շուայտանան համանգամ[1] կերակրոցն, և հոսն հոսեալ 'ի բերանոց նոցա՝ բուրէ բազում ժանտութիւնս ․ և խորհին և խօսին զամենայն կամս սատանայի, և ոչ իմանան զչար նենգս սատանայի ։ Հարկանէ՝ և զվէրսն խաղաղէ, և չտայ իմանալ, զի մի ապաշխարութեամբ բժշկեսցուք ․ վասն զի գող է, և ոչ ընդ յայտնի Ճանապարհն գնայ՝ եթէ զգուշանայցեմք ․ այլ գաղտնի և զհետ արածէ, և անանկնածելի տայ արհամարհել զամենամեծս պատուիրանայն, և փոքր կարծեցուցանէ՝ զի մի զգուշասցուք ։ Գիտէ թէ արգելեալ է 'ի պատուիրանայն զբան տգեղ և զառակ, զբամբասանս և զհայհոյութիւնս ․ և առաւել հեղուն 'ի բերանս վաւաշ գուսանայն և բազում խեղկատակութիւնս և մորոսախօսութիւնս, զարշաբանութիւնս, զատարկաբանութիւնս ։ Արհամարհութիւն, ձաղութիւն և հայհոյութիւն հոսեն 'ի նոցանէն հանապազ ․ զի 'ի ծաղր և 'ի խաղս և 'ի խառնախօսութիւն դեւք փութացեալք հասանեն, և բերեալ ախտս բազում ջամբեն և արբուցանեն՝ որք անդէն շուայտանայցեն ։ Վասն որոյ պարտ է լալ և ողբալ զայնպիսի անառակութիւնս, և մանաւանդ զկատակն մոլեկորոյս՝ որ 'ի մէջ լկտի բազմականացն ․ իբրև զայսահարս յարիլեն, ծափին, գելուն, աքսատեն, և զամենեսեան աղտով բերանոյն զազրացուցանեն ․ զոմանս հայհոյէ, զոմանս բամբասէ, զոմանս թշնամանէ, և զոմանս ձաղէ, խեղութեամբ ամօթով կուրացուցանէ ․ ամենեցուն ստէ, և յար-

1 Երկու օր ․ համանգամայն կերակրովք ։

գանօք մնափառեցուցանէ . իբրև զշուն կատաղեալ զամենեսեան առ հասարակ խածանէ ։

Ո՜վ ինչ գործես, ով թշուառական . ընդէ՞ր ոչ փութաս թափել 'ի չարաչար ամբարշտութենէդ . ընդէ՞ր ոչ սգաս յանզգամութենէդ՝ գալ 'ի միտս քո . ընդէ՞ր ոչ ողորմիս ոգւոյդ կորուսելոյ . ընդէ՞ր ոչ լաս և ողբաս զանօրէնութիւնս . ընդէ՞ր հուր 'ի հուր յաւելուս այրել դառնապէս . ընդէ՞ր 'ի վերայ կայծականց և փշոց գնաս հանապազ . զի՞ ընդ բեռինս մեղաց բեռնաւորիս հանապազ . հեծ քարավէժ և դարահոս լինիս 'ի վախից . վասն էր սուր սրես, և նովին վիրաւորիս . զի ոչ ոք է՝ որ հրով հուր շիջուցանէ, և ոչ չարիւ բարւոյ հանդիպի ։ Ո՞վ է որ փուշ անկէ՝ և խաղող կթիցէ . կամ որոմն սերմանիցէ՝ և ցորեան հնձիցէ . և ոչ անառակ վարուք ոք զՔրիստոս տեսանիցէ և զարքայութիւնն ժառանգիցէ . այլ 'ի հուր գեհենին դատապարտի 'ի մէջ որդանցն թիւնաւորաց ։ Այլ որ այդպիսի անօրէն լկտութեամբ և գինեմոլ զեղխութեամբ կեցցէ, և դիւական թատերօք և ծաղրածու գուսանօք վարիցի, մի ամենևին ակնկալցի այրել 'ի հրոյն տանջանաց ։ Զգուշեա զբանն ասեմ, թէ վայ որ ծիծաղիցեն այժմիկ, զի նոքա սգայցեն . վայ որ խնդան այժմ, զի նոքա լացցեն և ողբասցեն . վայ որ ըմպեն զգինի յարբենալ, և անոյշ իւղօք օծանին . վայ ձեզ մեծատանցդ՝ զի ընկալայք աստէն զհատուցումն բարութեան ձերոյ . զի բազում նեղութբ պարտ է մտանել յարքայութիւնն այ ։ Արդ Քրիստոս լալ և սգալ ասաց յաշխարհիս, և դու ծիծաղիս և ցնծաս, և ոչ զարհուրիս և դողաս յահեղ դատաստանացն այ, որ ճշմարտիւ քննէ զամենայն որ կամաւ և որ ակամայ, զոր 'ի ծուլութենէ և զոր 'ի մոռացմանէ գործէք ։

Արդ փութա մաքրեա զանձն քո յայրատութենէդ, զերծո 'ի դատարկաբանութենէդ, զլուեա 'ի պղծալուր սովորութենէդ, և զմիտս քո 'ի մահաբեր սատանայական խորհրդոց ։ Անկիր առաջի այ և ասա . մեղայ յերկինս և առաջի քո ։ Ո՛վ հեղգար 'ի վաստակս ապաշխարութեան՝ մինչ աւուր կայ . ահա փութա 'ի գիշերն յայն հասանել ահեղ և սոսկալի խաւարին և աղջամղջին ։ Արդ ծանիր զմեղաց քոց բազմութիւն . յիշեա թէ մեռանել ունիս առ վաղիւն . նկատեա զպա-

հանդերձումն հոգւոյդ քո 'ի մարմնոյդ. և ած զմտաւ հանապազ զմեծ ահեղ օր դատաստանին, զհուրն անշէջ, զխաւարն աղջամղջին, զզուքն ապականութեան, և ըղտարտարոս գեհեննին, և զդառն ողբումն մեղաւորաց յահեղ դատաստանայն ահագին դատաւորին. ուր բանք սպառին, և պարծքն թագաւորեն. ուր խորհրդոց և գործոց պահանջումն. ուր դատարկաբանին են խնդիրք, և անդէպ մտածութեան համարք: Արդ զայս ած զմտաւ հանապազ, զայս յիշեա միշտ. յոգւոց հան և ողբա, հեծեա և լաց անդադար, զի թերևս ապրել կարիցես յահեղ աղէտիցն տանջանաց և յաննշոյլ խաւարէն, և հանդիպել անանց բարութեցն խոստացելոց 'ի Քրիստոսէ Յն 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն:

## ԺԸ.

# ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ԿՆԱԹՈՂԱՑ

Տէր մեր Յիսուս Քրիստոս վասն փրկական բանիցն յանդիմանութեան չարչարանօք խաչեցաւ յանձնամարտ ազգէն և յընդդիմակաց ժողովրդենէն ։ Իսկ այժմ նա-քա որք զուղիղ բան և զփրկական վասն փրկական ոգ-ւոց խօսիցին , Թշնամանեալ բամբասին 'ի կարծեցելոցն իմաստնոց ։ Բայց չէ այն իմաստութիւն , այլ իշխանու-թեան անիրաւութիւն , զ՚իմաստութիւն երկիւղ տեառն է . և որ եգիտ զերկիւղն տն , նա եգիտ և զիմաստու-թիւն ։ Բայց թէ իցէ և ս իմաստուն , չէ պարտ զօգնա-կանն իւր արհամարհել ։ Այս իմաստուն էր և Մով-սէս , սակայն լուաւ խրատուն Յոթորայ . հոգևոր էր և Դաւիթ , այլ պէտք եղեն և նմա Նաթանայ յանդի-մանութիւնն . զ՚իմաստունք իմաստնոց լսեն , և խո-նարհք խոնարհաց հնազանդին ։ Զի որք ուղղապէս մտաց աչօք նայիցին 'ի պատուիրանս տն , և հոգևոր վա-րիւք զքաղցրութիւն սրտին ստացեալ ունիցին ազատաբա-րոյ բարուցն հանդարտութեամբ , չէ պարտ արհամար-հել զայսպիսի աղերսաբանութիւնս . քանզի երանելին Պետրոս ասէ՝ եթէ " Որք իմաստութեամբ բնակես-ցեն ընդ կանայս , իբրև տկար անօթոյ արասցեն պատիւ կանանց ,, ։ Իսկ ոչ ատելութեամբ ինչ հեռանալ հրա-մայէ . զի ամենայն , ասէ , որ ատէ զեղբայր իւր , մար-դասպան է . իսկ որ զկինն իւր ատէ , անձնասպան է ։

Բայց թէ վասն չքաւորութեան ոք՝ որդւոյ առնիցէ ատելութիւն ընդ ամուսնոյ իւրոյ , չար է առաջի տն ։ Զինչ օգուտ է որդիս խնդրել , և զորդիս կորուսանել անիրաւ ատելութեամբն ։ Զի ոչ եթէ որդւոց խնդիր է առաջի տն , այլ անարատ ոգւոց ։ Քանզի և մարգա-րէն ասէ վասն անիրաւ որդիս խնդրելոյ . որոյ վարձք իւր առ ած են , այն է պտուղ որովայնի իւրոյ , և զա-

ւանկ սուրբ արձանութիւն նոցա ։ Այլ ոչ գիտէ՝ եթէ վասն անձին յանցանաց արգել ած զպտուղ որովայնին , և կամ վասն այլ բարւոյ չետ . զի բազում որդիք են որ բարկացուցանեն զծնողս , և ընդ արիւն զկեանս նոցա անցուցանեն . և վասն այնորիկ արդեօք արգելու ած ։ Այլ և այլ անիրաւութիւն է , եթէ զնչ ոք գործ 'ի մարդոյ պահանջէ . և անիրաւք , ասէ , զարքայութիւնն այ ոչ ժառանգեն , քանզի անիրաւութեան ռամկաց [1] ։ Իսկ թագաւորաց և իշխանաց անիրաւութեան՝ պատուհասք այ են յանդիմանիչք և արգելիչք ։

Եւ արդ զինչ օգուտ իսկ են որդիք ոգւոց . ահա մարդ , ասէ , և գործք իւր ։ Արդ ած զմտաւ զահեղ զարհուրելի ահագին աւուրն այնորիկ , և մի ընդդէմ ինչ կամացն այ ամբոխեսցես , զորս յետ սակաւուց տեսանելին այնորիկ մատնեսցիս աղէտիցն տանջանաց . զի մի ոք կարծիցէ իբրև զասուտ ինչ չարչարանս՝ զոր երկրաւոր թագաւորք ածեն 'ի վերայ մահապարտացն ։ Այլ անդ դառն լալիւն է , և չարաչար կսկիծք , և աղախարշանք յորդահոս գետոցն հրեղինաց՝ որ 'ի վերայն հոսեսցին , 'ի գուբս հրացան կայծականց հնոցին՝ ուր տանջին և մաշին . մարմինք մեղաւորացն 'ի խորս տարտարոսացն և յանշէջ խաւարն , 'ի մէջ որդանցն թունաւորաց . զորոյ զչարաչար իբրս աղէտիցն բանիւք ոք ոչ կարէ ցուցանել՝ զողորմելի վարմանումնն , և զահեղ ողբումնն աններելի տանջանացն . զոր եթէ աշխարհս ամենայն մեծասգով ողբասցեն , այլ և փայտք ևս և քարինք լայցեն 'ի ձայն ողորմելի աշխարանաց , ոչ կարեն արժանապէս ողբալ և սգալ զայնոսիկ՝ որք այնմ չարատանջ գեհեննին և աններելի աղէտիցն մատնեցան ։ Որ պարտ է աստէն միշտ զմտաւ ածել , և զգուշութեամբ անցանել ընդ ահաւոր և ընդ ծփալի և ընդ մեղսապէտ կեանս աշխարհիս ։ Եւ անբաւ են յաւիտենականքն , պատիր և երազ են երկրաւորքս սիրելի , և տկարագոյն քան զսարդի ոստայն ։ Ահա այսօր և վաղիւ , և այլ ոչ ևս իցեմք . երկաւուրց է հանդիստ աշխարհիս , և յաւիտենական են տանջանք և ամօթ ։ Ահա յայլ երկիր կայ անցանել , և զտէրն փառաց կայ տեսանել ։ Սրտիւ զսիրտս քննես-

1 Թերի է պատրաստութիւն բանիս ։

ցուք, և աստէն մաքրեսցուք. զի յետ սակաւ աւուրց եմք երթալոց առ աՀեղ և անխոտր դատաւորն՝ որում գաղտնիքն մեր յայտնի են, և զխորՀուրդս սրտից յանդիմանէ. յորմէ ոչ ինչ ծածկի ՚ի ճշմարտատեսս և ՚ի քննող ականէն :

Որդ երկիր յաՀեղ աՀեղ դատաստանէն այնորիկ, և մի այլ ևս յերկար անէրևոյթ արածն վիրաւորեր, և չար ՚ի չար յաւելուլ՝ յանձներբեր տրամութիւնն յամեցուցանելով զանդամս քո. վասն որոյ պէտք են յերկար ժամանակի ապաշխարութեան և ընդ այդր՝ եթէ երկեղած իցես յայ : Որդ մի ևս Հասուցաներ ապաշխարութիւն[1] քաՀանայից, և զեկեղեցի տրտմեցուցաներ և այլ ևս ժամանակօք. մերձ է վախճանն Հասարակաց, փութա մերձենալ առ ա՟ծ, և ա՟ծ մերձեսցի առ քեզ : ՈՀա գող է օրն մաՀու, գուցէ Հասանիցէ տարաժամ. արթուն լերուք, ասէ, զի ոչ գիտէք զօրն և ոչ զժամն, որ յանկարծակի անակնկալ անկանի ՚ի վերայ քո իբրև զորոգայթ :

Որդ երկիր դու յօրէն յայնմանէ. փութով զղջացիր զոր գործեցերդ մինչ դեռ մերձ է ժամանակս. մի պատաղիր[2] երկրաւորօքս, զի ՚ի մէջոյ փոխելոց եմք ՚ի վերին քաղաքն, և միայն աստէն ժողովեալքս յաշխարՀիս. զի ոչ բերաք ինչ յաշխարՀս, և ոչ տանել ինչ կարասցուք աստի. այլ մերկ մտաք յաշխարՀս, և մերկանդամանդրէն դառնալոց եմք : Վասն որոյ միշտ ըղմտաւ ած զերկիւղ աՀագին աւուրն այնորիկ, և մի մոռանար զգոյն՝ որ ոչ երբէք շիջանի. և փութա խոտորել ՚ի ձախոյն սատանայի, և լինի ա՟ծ ընդ աջմէ քումմէ. լուր Հոգւոյն սրբոյ, և ա՟ծ լուիցէ քեզ յաՀեղ աւուրն տագնապի : Մի խնդրեր ՚ի բարեխօսութիւն ըղբանս շքեղ երեսաց և զպատիւ նախաթոռոյն, յորմէ և վարձս սակաւ ընդունիս : Այլ յիշեա եթէ գոն գատաստանք, կան տանջանք, լինի յարութիւն և խնդիրք ամենայն գործոց. և այսու երկիւղիւ Հնազանդեա, զի և վարձս մեծամեծս ընկալցիս :

Մեծ է լսել ձայնի աւետարանին ՚ի բարեխօսութիւն մաՀկանացու մարդկան : Լուր մարգարէական Հրամա-

1 Թերևս ապաշխարութիւն : 2 Ցօրինակին . պաղատիր :

նին և առաքելական պատուիրանացն քեզ 'ի բարեխօսութիւն, և հնազանդեա ա̃ծային պատգամիս. ած ըզմտաւ և զմեղաց քոց զբազմութիւնս ։ Մ՛ի զսակաւն ուրուք պահանջեր. 'ի միտ առ զահագին բողոքումն պատուիրանաց՝ որ քեզ վկայեցին ։ Ծանիր զի և ընդ բանիցն իցէ դատումն և ընդ խորհրդոյ և ընդ սակաւիկ ինչ քինի պահանջումն ։ Հայեաց 'ի կեանս աշխարհիս՝ զի իբրև զստուեր անցանեն, և փութա յօր ահագին դատաստանին ։ Երկիր 'ի սոսկալի բեմբէն և յահագին դիմաց դատաւորին, և եկ 'ի զգաստութիւն. դողա 'ի դառն դատաստանէն և յանտանելի ամօթոյն, և փութա զնա հաշտեցուցանել. զարհուրեա 'ի չարաչար տանջանացն և յանշէջ խաւարէն, և եկ 'ի լուսոյն ճանապարհ. փափագեա անբաւ բարութեանցն և անյագ փափկութեանն, և հան հալածեա 'ի քէն զհոգեկորոյս խորհուրդս սատանայի. հնազանդեա հոգւոյն սրբոյ հրամանաց, և բանիւ բերանոյ նոյ՝ որ առաջաւ քեզ 'ի թղթիդ, զի և վարձ քում հնազանդութեանդ զարքայութիւնն երկնից շնորհիցէ հանդերձ անբաւ բարութեամբքն. և յաստիս առողջ մարմնով պահէ 'ի ցաւոց, և քաւեալ ոգւովք 'ի մեղաց. և բովանդակ քո ոգի և շունչ և մարմին անարատ 'ի գալստեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի պահեսցէ. որում փառք և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

ԺԹ

## ՎԱՍՆ ԱՆԱՍՆԱՄՈԼԱՑ ԵՒ ԻԳԱՑԵԼՈՑ ԵՒ ԱՐՕՒԱԳԻՏԱՑ

Ողբալով յիս Հոգին իմ հիացեալ զարմանեաւ, և սոսկալի հիացմամբ և դողութեամբ անձն իմ հեծէ անդադար, առ միշտ հանապազ զմտաւ ածելով՝ թէ յորպիսի անդունդս խաւարայինս ախտից սողի իջանէ ժպրհութիւնս մեր. ընդ որոյ ախտիւ տարակուսեալ լեզու իմ տկարանայ առ ոչ բաւել ցուցանել զահեղ ախտիցն պղծութիւնս՝ որ առաւել քան զամենայն բնութիւնս մեղաց զանցուցանէ անօրէնութեամբք. զի քան զամենայն յայտնի ամբարշտութեանցն աւազակութիւն է սա, և քան զգաղտնի գողութեանցն չարութիւնսն, և քան զամուսնացելոցն շնութիւնսն, և քան զկուսանացն պոռնկութեանցն պղծութիւնս, և քան զարիւնահեղ ըսպանութեանցն խողխողումն : Այլ քան զայս ամենայն չար ամբարշտութիւնս մեղաց առաւել ևս ահեղ ամբարշտութիւնք և անհնարին պղծութիւնք այն են՝ զոր արուք ընդ արուս գործեն զազրալի անօրէնութիւնս և դիւական մոլութիւնս, և էգք առ էգս կատարեն զանառակ զցանկութիւնս և զսատանայական կատաղութիւնս. և առաւել ևս այն է՝ յորժամ յանբան յանասունս ոք պղծիցի :

Ընդ այս և վերին զօրութիւնքն հիացեալ զարմանան. ընդ այս և սրբոցն դասքն տխրացեալ սգան. ընդ այս ողբան և անձինք ամենայն արդարոց, զի զարարիչն արարածոց թշնամանեալ արհամարհեցին անօրէն պղծութեամբք : Ի սմանէ և հոգին սուրբ զարշի և փախչի և հեռանայ, և այլ ոչ դառնայ 'ի սա. և այսպէս բնակարան լինի սատանայի և դիւաց, և ողորմելի ամենեցուն : Քանզի և ոչ մի ինչ ամբարշտութիւն հաւասարի ախ‑

տես այսորիկ. այլ քան զամենայն դիւահարս միշտ անզգայացեալ են անձինք նոցա՝ որք մոլեկան ցանկութիւնք 'ի միմեանս կատաղեն, արուք վաւաշոտեալք զարուացն զարուական բնութիւնն իգացուցանեն. և էգքն լըրբեալք և անամօթեալք զիգական բնութիւնն արուացուցանեն: Այլ յանբան անասունս ևս ապականեցան, որ է առաւել քան զամենայն պղծութիւնս:

Բայց հիացեալ զարմանամ ընդ այնչափ ներողութիւնն քո՝ որ ոչ վաղվաղակի փայլատակունս յերկնից իջուցանէ 'ի վերայ այնպիսի ամբարշտելոցն, և ոչ զերկիր միանգամայն հերձանէ և ընկղմէ զչարս տղմոմքն զազրացեալսն. զի արտաքոյ օրինացն պղծեցան, և քան զամենայն սահմանս մեղաց անօրինեցան: Զի ոչ բաւեմ ցուցանել զդառն ողբալի ախտին զեղխութիւնսն. և առաւել ևս ընդ այս զարմանամ և հիանամ՝ յորժամ և կանայք ևս զայսպիսի մոլեկան կատաղութիւնս գործեն, և զանբանական զպղծութիւնս կատարեն: Զի 'ի սկզբանէ այլն այր ստեղծաւ 'ի պէտս կանանց, և կինն կին ստեղծաւ 'ի յարանց յօգնականութիւն. իսկ անօրէն պակշոտութիւնքն անզգայական ախտիցն զԱստուածադիր զսահմանս փոխեցին ամբարշտութեամբ. և զպէտս բնականս զոր պարտ էր արանց 'ի կանանց ընդունել, և կանանց յարանց, նոքա և յայլ աղտեղութիւնս փոխեցին, և յանհնարին պղծութիւնս այլակերպեցան՝ որ է տաղտկալի ամենայն լսողաց, զոր և պատմել՝ յիս հիացումն արկանէ:

Արդ և դուք 'ի բանէս ինչ լսելով գարշեսջիք. այլ երանի թէ յիրացն տաղտկացեալ նողկայիք, զի քան զամենայն ախտս զազրագոյն է: Զի առ այնպիսւոյն ոչ է օրէն բնակել, և ոչ ճաշակել ընդ նմա. այլ իբրև 'ի գիւէ փախչել. զի պիղծ է ամենայն՝ յոր ինչ հասանէ ձեռն նորա, և քան զամենայն պղծութիւնս առաւել ևս պղծագոյն է, և արժանի մեծաց վրիժուց, և բազում չանթից հրոյ 'ի վերուստ: Այլ առաւել ևս բազում մահօք իբրև զպոռնիկս դատին այնպիսիքն աններելի ահեղ տանջանօք: Զի պոռնկութիւն թէպէտ և անօրէն է և դիմադարձ Աստուածային հրամանին, սակայն ըստ բնութեան է մեղացն խառնակումն. իսկ անասնամոլացն և իգացելոցն և արուագիտացն պղծութիւնք առաւել են քան զամենայն չարաչար անօրէնութիւնս, և

զարթուցանեն զանարգութիւնն ոչ և զսաստիկ սրտմտութիւնն ։ “ Զի ամենայն մեղք , ասէ , արտաքոյ մարմնոյ են . բայց որ պոռնկէն , յիւր մարմին մեղանչէ ”։ Իսկ որչափ զազրալի է և դժնեալ այս մոլութիւնս , և անհնարին պղծութիւն քան զամենայն պոռնկութեանց. և արդարացուցանէ զամենայն չարաչար անօրէնութիւնս մեղաց ըստ առաւելութեանն իւրոյ ամբարշտութեանն ։ Որպէս և գրեալ է՝ եթէ “ Արդարացաւ կռապաշտութիւն Իսրայէլի առ ուխտազանցութեամբն Յուդայ ”, նոյնպէս առաւել զեւս այս ամբարշտութիւնս քան զամենայն չարութիւն անօրէնութեան ախտից , զոր և բանիւ բերմամբ չէ հնար 'ի մէջ կացուցանել զպղծութիւնս նոցա . վասն զի չփոթեալ փոփոխեցին զբնութիւն իւրեանց , զառնացին լինել կանացի , և զկանացին արանցի . և առաւել տղեալք յանբան անասնոց ապականեցան . անօրէն ահեղ անօրէնութիւնք , և արհաւիրք և դողումն սոսկալիք 'ի միտս բանիս ։

Արդ զինչ ասացից , և կամ որպիսի բանիւք ծանուցից զչար ախտիս դառնութիւնս . զի անդունդք ժանտահոտք բանման յախտէս , որում ոչ կարէք հանդարտել լսելեօք ։ Զի եթէ հաւաստեաւ զբնութիւն ախտին բանիւ մերկացեալ ծանուցից առ 'ի քոյդ 'ի միտ առնուլ , զլեզուս իմ աղտեղեալ ապականեմ և տղմով չաղախեմ. կամ եթէ զգուշացեալ ընդ պատրուակով ասացից , ծածկի չարութիւն մոլեկան ախտիս ։

Բայց արդ անցից ընդ պատմութիւն ախտիս ըստ ձերում լսելեացդ հանդարտելոյ , և մնասցէ 'ի միտս իմաստուք զազրալի ախտին , և մի զամենայն նեխութիւնս բանիւ ցուցանել , զի մի և դուք տաղտկացեալք նողկայցէք առ 'ի չհանդարտելոյ լսելեաց . քանզի իմաստնոյն և մի բան բաւական է առ 'ի խրատ և 'ի զգուշութիւն հոգւոյ ։ Զի զայնպիսի մոլեգնութիւնս զոր անասնասէրքն պղծին , կամ էգք առ էգսն կատարեն և արուք ընդ արուս , որ ընդ միտս անգամ անցուցանէ՝ պղծութիւն է ոգւոյ , իսկ որչափ ևս առաւել գործն արեացէ . զի եթէ արդարն հազիւ կեցցէ , իսկ ամբարիշտն մեղաւորն ուր գտանիցի ։ Զի հուր անշէջ վառեցաւ 'ի մարմինս նոցա , և 'ի վեր բորբոքեալ ապականեցաւ յաննման բնութիւնս . զի այրն այր էր՝ և ախորժեաց ըն-

նել կին, և զայրն լինել կորոյս. և կինն կէս էր՝ և կամե-ցաւ լինել այր, և զկինն լինել կորոյս. զորս պարտ է հա-լածել յարանց և 'ի կանանց, զի Թողին զբնական պէտս և յաբնականս մոլեցան. զոր և Պաւղոս ողբալով ասէր՝ Թէ "Էգք նոցա փոխանակեցին զպէտս բնականս 'ի պէտս անբնականս. Նոյնպէս և արուացն Թողեալ զբնա-կան պէտս իգուԹեանն, բորբոքեցան ցանկուԹեամբ իւ-րեանց 'ի միմեանս, արուք ընդ արուս զխայտառակու-Թիւն գործէին": Արդ պիղծ խորհրդովք զչար ցան-կուԹիւնս լցուցեալ 'ի մարմինս իւրեանց և յանբան ա-նասունս բորբոքեցան, և զեղան յամենայն չարուԹիս. և առաւել ևս պղծեցան քան զսեղանակապուտն և զգե-րեզմանակրկիտսն, և չար ևս քան զմարդասպան անօ-րինեցան. զի մարդասպանն միայն զմարմինն սպանանէ, և զայն՝ աստ միայն. իսկ սոքա զհոգին և զմարմինն սպա-նանեն յաւիտենական տանջանօքն:

Այս և քան զհեԹանոսուԹիւնս ամբարշտագոյն է. և վասն այսորիկ բարկուԹիւնք ահեղ հեղուն 'ի յերկ-րի. վասն այսորիկ երկինք կամ փակին չորաչոր, և կամ բանին խառուԹեամբ. վասն այսորիկ մահք տարա-ժամք և զանազան պատուհասք. վասն այսորիկ Ջրհե-ղեղքն համօրէնք զտիեզերս հեղձեալ կորուսին. վասն այսորիկ և հրացան անձրևք կայծականց տարածեալ թե-ղեաց 'ի վերայ Սոդոմայ և հրակիզեաց զամենայն սահ-մանս նորա վասն արուամոլ գիջուԹեանցն և իգական կատաղուԹեանցն: Ո՜վ անօրէն մոլորուԹիւն. ո՜վ սաս-տիկ կուրուԹի՜ և միգապատ յիմարուԹիւն. զի 'ի սկզ-բանէ սատանայ սանու, և դա ահիս միջօք յիմարին, և ոչ կարեմ զբանս բովանդակել: Ո՞վ ետես, կամ ո՞վ լուաւ այսպիսի ահեղ արհաւիրս և անօրէն ամբարշ-տուԹիւնս և զազրալի պղծուԹիւնս: Ո՜վ սատանայ և 'ի սկզբանէ մարդասպան, յո՞ր խաւար կամ յորպիսի խորս անօրէնուԹեան իջուցեր զմարդն, մինչև արուա-մոլս և անասնամոլս և իգացեալս գործես:

Եւ արդ զինչ անուանեսցուք զնոսա, որք զայնպիսի մոլեգնուԹիւնս մոլեգնեցան. զի մարդ չէ, և չէ իսկ: Իսկ անասուն կոչեսցուք. այլ և նա քան զանասունս ա-ռաւել ևս անմտագոյն գտանի, քանզի ոչ երբէք տեսա-նեմք զանասունս 'ի մարդոյ բնուԹիւն ախորժեալ: Իսկ

շունս կատաղեալս անուանեսցուք. այլ և քան զշունս առաւել անամօթացեալք կատաղին: Զի շունք յիւրեանց նմանութեանն ախորժին, և մերձենան ըստ իւրեանց օրինաւոր բնութեանն. իսկ իգացեալքն և արուագէտքն և անօրէն անասնամոլքն առաւել քան զշունս կատաղին, և զանցուցանեն զչարութիւնս իւրեանց քան զչարութիւնս դիւաց:

Ո՛վ ահեղ երկայնմտութիւն այ. ո՛վ մեծի սիրոյն և անբաւ երախտեաց բարերարին, որ ոչ զերկինս 'ի վայր կործանէ յայսպիսի ամբարշտելոցն վերայ, և ոչ զերկիրս 'ի ներքոյ հերձանէ և ծածկէ զապականեալսն և զծանրացեալսն, և ոչ սաստիկ փայլատակունս իջուցանէ 'ի վերուստ, և շանթիւք հրոյ խանձատէ. այլ երկայնամտեալ ներէ մինչև 'ի ժամանակս վրէժխնդրութեան, և յօր ահեղ դատաստանին: Նա արդ քանի գեհենք և հնոցք հրացանք իցեն բաւական այնպիսի անձանց. քանի տարտարոսք ներքինք և աղջամուղջք խաւարի ընդ այնպիսի անօրէն զեղխութեանն. քանի դուրք որդնալիցք սպառնացեալ են և բազմութիւնք տանջանաց, զոր և ասել չեմ բաւական զհրեղէն գետոցն ընդյորդութիւն, որ հոսեալ իջանեն յամբարշտութեանցն վերայ, ուր են ահեղ արհաւիրք և լալ և ողբալ անդադար:

Արդ զինչ առնիցես եղկելիդ և թշուառականդ ընդդառնութիւնդ սաստիկ յիմար[1] կուսանացն յաւուր չարաչար քո վախճանիդ, յորժամ պահանջիչք ոգւոյդ քո անողորմք եկեալ ահագին կերպարանօք 'ի վերայ քո հասանիցեն փութանակի տագնապաւ զոգիդ քո յափշտակել ընդ մարմնոյն, և տագնապեալ ոգիդ վարանեալ ահագին դողմամբ անդրէն 'ի ներքս դառնալ ջանայ, և զօղեալ ընդ յարկաւ մարմնոյդ, և ոչ հանդարտեալ հայել ընդ դէմս եկելոց հրեշտակացն, որք սաստիկ սպառնալեօք զոգիդ 'ի մարմնոյդ հանեալ ձգիցեն. և յայնժամ պատիցեն զքեզ արհաւիրք սոսկալի ահեղ ատենին, և երկիւղ տարակուսանաց չարաղէտիցն տանջանաց:

Նա արդ զահն զայն ո՞չ զմտաւ ածեալ լայցես դառնապէս, և անդադար ողբալով հառաչիցես զբազմութիւն չարաչար քո ամբարշտութեանդ. թերևս երկայնամտեալ

1 Այլք փարախտասանացն:

գթացի ածէր 'ի ջերմեռանդն արտասուս վշտագնելոյ որդի քո, և գորովագութ ողորմութեամբ ընկալցի ըղ-պաղատանս քոյոյ հեծութեան : Արդ վաղվաղեա յապաշխարութիւն մինչ դեռ է մեր ժամանակս, զի մի եկեալ օրն յափշտակեսցէ, և ոչ ոք իցէ՝ որ փրկեսցէ : Այլ փութա զերծանել 'ի պղծութենէդ՝ ապաւինեալ 'ի մարդասիրութիւնն ա̃յ : Թէպէտ և անթիւ են անօրէնութիւնք քո, այլ անբաւ են մարդասիրութիւնքն ա̃յ . Թէպէտ և չարաչար գլորեցար, այլ վաղվաղեա աղաչեա զՔրիստոս՝ որ կանգնեսցէ զգլորեալս : Թէպէտ և գեռաթաթախ աղտով զազրացար, այլ ունիս աղբիւր արտասուաց՝ որ մաքրէ և լուանայ : Թէպէտ և յաններելի աղտեղութիւնս մեղացն կործանեցար, այլ մի ևս յամեր և մնար 'ի կործանմանդ, և գտանես թողութիւն և փրկութիւն : Թէպէտ և նկրկեալ նեխեցար 'ի սևաթոյր ամբարշտութիւնս քո, այլ մերձեցիր առ Քրիստոս ջերմեռանդն արտասուօք, և լուսաւորեալ պայծառացուցանէ զքեզ : Թէպէտ և սաստիկ բարկացուցեր յամերով յապականեալ 'ի գնացս քո խաւարայինս, այլ կանխեա խոստովանութեամբ, և ընդունիս որպէս զանառակ որդին : Թէպէտ և կարեվէր վիրաւորեցար յոտից մինչև 'ի գլուխ, այլ կարող ես բժշկել ողորմութեամբ և գթով անանկից : Թէպէտ և կապեցար 'ի շղթայս սատանայի, և շաղեալ պատեցար 'ի հաղբանս նորա, այլ պնդութիւն պահոց և ջերմութիւն աղօթից քոց ցրուէ զտասունս մեղաց կապանաց սատանայի : Թէպէտ և յանդունդս խաւարայինս և 'ի խորխս իջուցին զքեզ ահեղ անօրէնութիւնք քո, այլ հայցումն և հառաչումն կամաւոր ապաշխարութեանդ քո հանէ 'ի խորին խաւարէն, և բարձրացուցանէ 'ի կամարն երկնաւոր՝ ուր արդարոցն են բարութիւնք : Թէպէտ և ժանտահոտ պղծութեամբ եղեր բնակարան խաւարայինն դիւաց, արդ սրբեսցիր 'ի զազրալի նեխութենէդ, խորգով և մախով և պաղատանօք ել 'ի տաճարն ա̃յ : Թէպէտ և չար են չարիքդ քո, այլ յաղթող են մարդասիրութիւնք նորա : Թէպէտ և պղծագոյն քան զոհեալն և զմեռելոտին, այլ կարող ես մաքրեալ վարուք առաքինութեամբ և հաճոյանալ ա̃յ : Թէպէտ և տաղտկալի աղտովն մեղաց չարանեխ փետեցեր զմարմինդ քո, և շաղախեալ ծըր-

դեալ կաս յանօրէնութեանդ, բեկեալ անձամբ, խոնարհեալ սրտիւ ընծեա 'ի քէն զանօրէնութիւնս քո, և վաղվաղակի շնորհօք սուրբ հոգւոյն լուսաւորիս ։

Բազումք մոլորեցան 'ի ճշմարտութենէն, և ապա դարձին ճանապարհս փրկութեան ։ բազումք գլորեցան չարաչար, և միւսանգամ կանգնեցան ։ բազումք 'ի նահատակացն խոցեալ կիսամահ վիրաւորեցան, և դարձեալ յաղթութի գործեցին ։ բազումք աղքատացեալք 'ի նուաղեկութենէ՝ դարձեալ մեծացան ։ բազումք 'ի խորս չարեաց ընկղմեցան, և միւսանգամ արդարացան ապաշխարութեամբ ։ բազումք 'ի հիւանդաց յետ անյոյս լինելոյ բժշկեցան ։ բազում ծանրաբեռինք մեղօք ընդմեռանդ ապաշխարութեամբ թեթևացան ։ Արդ և դու մի յուսահատիր յողորմութենէն մարդասիրին այ ։ յիշեա զի բազում մաքսաւորք արդարացին, բազում պոռնիկք որբեցան, բազում աւազակք արդարացան և բացին զդրունս դրախտին ։ և դու փութացիր կանգնեա 'ի գլորմանէդ, և ընկեա 'ի քէն զանօրէնութիւնդ, և հասանես փրկութեան ։ Մի նմանիր ստահակեցուցն անզգջութեամբ քով, զի մի ընդ նոսին հրակիզեալ այրիցիս 'ի հուր գեհենին ։ այլ Նինուէի նմանեա ապաշխարութեամբ, և դարձիր 'ի չար ճանապարհէն ։ Ահա դեռ ևս բնակեալ է 'ի քեզ թշնամին անօրէն, և խոստացուցանէ զօրէն քո չզգաստանալ 'ի զղջումն ապաշխարութեան ։ արդ ծանիր զգաղտնի նենգս սատանայի, և փութա զերծիր յորոգայթից նորա ։ Ահա պատրաստեալ կան զքեզ անթիւ բանակք դիւաց, և տարածեալ պաշարեն զխորհուրդս քո՝ չխոստովանել և չապաշխարել ։ այլ դու արի 'ի միջոյ նոցա փախիր 'ի հրոյ կայծականց, և փութա անկիր յողորմութիւնն այ ։ աղաչեա ասելով ։ Հայր, մեղայ յերկինս և առաջի քո ։ մի մերժեր յողորմութենէ քումմէ ։ յորմէ լուեալ 'ի ձեռն մարգարէին ; թէ՝ թողեալ լիցին քեզ մեղք քո ։ Որում ողորմութեամբ և մեք արժանի լիցուք շնորհօք և մարդասիրութեամբ հօր և որդւոյ և սուրբ հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ։ ամէն ։

Ի

## ՎԱՍՆ ԶԱՌՆԵԼՈՅ ՍԷՐ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԵԱՆ ԸՆԴ ԹՇՆԱՄԻՍՆ ԱՍՏՈՒԾՈՅ

Հանապազ զմտաւ ածեալ զարհուրիմ յահեղ յանցանացս այսորիկ, և անդադարական խորհուրդք իմ յուզին. սիրտ իմ հիացեալ երկնչի, զի հանապազ վիրաւորիմ յախտակս յայսմանէ. զի յընդելական սովորութենէն և վէրքն իմ վէր ոչ երևի: Զարեօքն չարաչար խոցոտիմք, և անհոգ եմք իբրև զառողջս. ընդ միշտ հիացեալ զարմանամ և ողբամ հանապազ, քանզի գտանեմ զկիրսն չարութիւնն, գտանեմ լիով զկիրացն ծուլութիւնս: Վասն այսորիկ պարտ է առաւել ողբալ դողալով, և անդադար ողբալ զկուրութիւնս յիմարութեանս մերոյ. քանզի գիտեմ թէ ահեղ բանդք և կապանք մեծամեծք և պատիժք զանազան տանջանաց կան արհամարհողաց բանից և թագաւորաց աշխարհի: Իսկ մրջափ ես առաւել հուր ահեղ տանջանաց բազմութեան այնոցիկ մնացէ՝ որ ընդհրաման Հոգւոյն և զպատուիրանն ա̃յ արհամարհեն, և թշնամեաց ա̃յ բարեկամք լինիցին, որք հանապազ զհոգին սուրբ հայհոյեն և տրտմեցուցանեն անօրէն գնացիւք, և ոչ դառնան և զղջան, այլ կան 'ի նմին հանապազ. յորոց պարտ է ա̃ծապաշտաց և քրիստոսասիրաց 'ի բաց հեռանալ ըստ բանին Պաւղոսի որ ասէ. "Եթէ եղբայր անուանեալ կամ պոռնիկ իցէ, կամ ագահ, կամ արբեցող, կամ բամբասող, կամ յափշտակող, ընդ այնպիսւոյն և հաց մի ուտել„: Եղբայր անուանեցաւ՝ որ աւազանին ծննդեամբն և սրբոյ սեղանին հաղորդութեանն լուսաւորեցաւ. և զի անսուրբ վարիւք և անապաշաւ անօրէնութեամբք պղծեաց և կորոյս զսուրբ աւազանին զսրբութիւնն, և հեռացեալ մերժեցաւ 'ի մէնջ և 'ի սուրբ հաւատոյ քրիստոնէութեանն, կամ

պղծեցաւ ընդ անօրէնս շնութեամբ աղտեղեալ, և կամ զազիր և գարշելի անկողնեօք ամուսնութիւն կասկելով[1] զօրէն խոզի ընդ ցեխ և ընդ տիղմ թաւալեալ, այնպիսին եթէ եղբայր եւս իցէ և կամ քոյր, կամ որդի, կամ դուստր՝ նզովեսցի և մերժեսցի ՚ի սիրոյն և ՚ի խնամոյն և ՚ի բարեկամութենէ. և ընդ այնպիսումն և հաց մի ուտեր, փոխանակ զի դարձաւ յետս ՚ի Քրիստոսէ, և եթուք յաւազանն, և հաւատաց անօրէն խաբէութեան սատանայի:

Որդ ո՞յր են հրամանքս, ո՞յր են պատուիրանքս. ո՞չ ապաքէն միածնին այ և թագաւորին թագաւորաց՝ զոր պատուիրեաց հոգւովն սրբով ՚ի բերանոյ առաքելոյն: Այլ արդ թշնամանեալ արհամարհին պատգամք հոգւոյն սրբոյ և պատուիրանք այ վասն չհրաժարելոյ մեր նախ յանօրինացն սիրոյն և յանարժան խնամութենէն, որ է հանապազ պոռնկութիւն: Այլ արդ որո՞ւմ նմանելոց և թողութեան արժանի լինիցիմք, զի զհրամանս և զպատուիրանս այ կոխան արարաք. նա ընդ ագահի և ընդ արբեցողի չհրաժարեցաք առնել բարեկամութիւն, և մեք ընդ հրեայս և ընդ հեթանոսս և ընդ հերձուածողս առնեմք բարեկամութիւն և խնամութիւնս: Այլ յոր խաւար երթայցեմք, և կամ ո՞ւր սուզանիցիմք վասն անհնարին ծուլութեանս և չարաչար սովորութեանս, որ արհամարհեմք զպատուիրանս այ. և կամ ո՞ր պատասխանատուութիւն կայցէ յաւուր ահեղ դատաստանին՝ յորժամ յանդիմանեալ կշտամբիցիմք առաջի ահեղերական հրապարակին. զի՞նչ ասիցեմք, չլուա՞ք երբեք յումեքէ ասեմք, կամ չուսո՞յց ոք: Նա Պաւղոս քարոզէ և ասէ. եթէ եղբայր ոք ագահ իցէ, կամ արբեցող և կամ բամբասող և կամ յափշտակող, ՚ի նոցանէ, ասէ, որոշեա և ՚ի բաց հեռացիր. ընդ այնպիսումն և հաց մի ուտեր. այլ ելէք ՚ի միջոյ նոցա, և մեկնեցարուք ՚ի նոցանէն. մի ճաշակէք, մի հուպ լինիք, զի հանապազ թշնամանողք են այ, և արհամարհողք պատուիրանացն նորա: Զայս յամենայն ժամ լսեմք ՚ի Պաւղոսէ, մանաւանդ ՚ի հոգւոյն սրբոյ՝ եթէ չէ պարտ թշնամեաց այ լինել բարեկամ: Նա և մարգարէն ասէ՝ եթէ

1 Այսպէս յօրինակին:

«Զատեալս քո տէր՝ ատեցի, և վասն թշնամեաց քոց տրտմեցայ. ատելութիւն կատարեալ ատեցի զնոսա, և եղէ նոցա թշնամի, զի զօրէնս քո ոչ պահեցին»: Ահա մարգարէն ուսուցանէ թէ պարտ է ատել զթշնամիս այ, և ոչ եթէ բարեկամութիւն ընդ թշնամիս այ առնել: Նոյն և միւս մարգարէն ասէ, եթէ «Դու վասն այսորիկ խորտակեաց զնաւս քո, զի թշնամեաց այ բարեկամ եղեր»: Ահա և սա զնոյն քարոզէ՝ եթէ չէ պարտ ընդ թշնամիս այ առնել բարեկամութիւն և խնամութիւն և լինել ատելի և թշնամի այ: Զայս և այլ մարգարէ ասէ. «Որ ամբարտաւանն էր աչօք և ագահ սըրտիւք, ընդ նմա և հաց ոչ ուտէի. և ոչ բնակէր 'ի մէջ տան իմոյ, որ առնէր և գործէր զանօրէնութիւն»:

Արդ զայս գիտելով և մեք հեռացուք 'ի թշնամեաց այ. զի չէ պարտ քրիստոսասիրաց և ածապաշտից ընդ ատելիս այ և ընդ թշնամիս Քրիստոսի սէր ինչ և բարեկամութիւն առնել. այլ ատել և իբրև զթշնամիս համարել: Զի որ եթէ զայլոյն իւր թշնամանեալ տեսանիցէ, ոչ միայն թշնամի թշնամանողին լինի, այլ և քինանայ ևս ընդ նմա և ոխայ. մեք վասն Քրիստոսի չատեմք իսկ երբէք և չքինանամք ընդ գողս և ընդ պոռնիկս և ընդ բամբասողս և ընդ ամենայն թշնամիս այ, որ յամենայն ժամ բարկացուցանեն զնա անօրէն գնացիւք: Որդի զանարգիչս հօր իւրոյ անարգէ և թշնամանէ. և մեք զթըշնամիս այ հօր մերոյ սիրեմք և պատուեմք, և առնեմք բարեկամութի՛ն ընդ նոսա: Բազում ծառայք 'ի վերայ տերանց իւրեանց մեռանին, և մեք վասն այ հօր մերոյ և արքայի մերոյ ատելի ևս թշնամեաց նորա չկամիմք լինել: Դու զիա՞րդ անուանիմք ածասէրք և ածապաշտք, և ակն ինչ յաւիտենականն կենացն ունիցիմք. և կամ զիա՞րդ սիրեցիմք 'ի նմանէ՝ որք ոչ պտուիք զնա սիրեցեմք. զի որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ: Զի եթէ կոչէք զիս հայր՝ ասէ, և զոր ասեմն ոչ առնէք, որդիս կոչեցից և ես, և 'ի ժառանգութենէ իմմէ հեռի արարից: Ընդէ՞ր տէր և վասն է՞ր. զի զթշնամիս իմ սիրեցիք, և զատելիս իմ բարեկամ արարէք:

Դու այժմ ոչ ինչ համարիմք զայն բազումք. այլ խառն և անխտիր ընդ թշնամիս, ընդ շունս և ընդ գողս և ընդ պոռնիկս և ընդ ագահս և ընդ յափշտակողս ուտեմք, և

ընդ բամբասողս և ընդ զրկողս, և խնամով 'ի տունս մեր մուծանեմք, և պատուեմք զթշնամանողս Այ, և զոգիս մեր միասնեալ կորուսանեմք: Այլ որ ևս աւաղին անօրէնութիւնք են քան զամենայն չարիս, և հաւասար կռապաշտութեան, որք քրիստոնեայքն լինին, և ընդ անօրէնսն խառնակին, ամուսնանան ևս և հաւատար անամանագիտաց անուանեն զանձինս իւրեանց, և զհոգին սուրբ հալածեն յինքեանց և 'ի տանց իւրեանց և 'ի ծնողաց և յեղբարց և յազգատոհմից իւրեանց, և ոչ խնայեն և զղջանան, և ոչ դառնան և ապաշխարեն. և աստանւոյ զայն փոքր կարծեցուցանէ, և չտայ իմանալ՝ եթէ այս են մեղք որ մահուչափ են: Վասն որոյ ոչ է պարտ յայսպիսիսն յարել և հաղորդել ընդ նոսա. այլ իբրև յօձից փախչել 'ի հաղորդութենէ նոցա, զուցէ ոք ուսանիցի զգործսն: Իսկ եթէ ընդ չարակն չհրամայէ հաց ուտել, որչափ ևս առաւել ընդ չարագործեքն՝ որով ոգիք մեր ապականին: Զի թէ 'ի պոռնիկ ամուսնոյն հեռանալ հրամայէ, որչափ ևս յոտար պոռնկէն, որք զմեզ յԱյ հեռացուցանեն: Զի եթէ 'ի դատարկէն փախչել հրամայէ, որ դատարկ և անգործ և սնահաւ շրջի, որչափ ևս առաւել փախչել 'ի բամբասողաց և յարբեցողաց: Զի եթէ ընդ բարկացող առն չհրամայէ բնակել՝ կուցէ ուսանիցիս զճանապարհս նորա, որչափ ևս առաւել 'ի նոցանէն հեռանալ՝ որք զմեծ բարկացուցանեն հանապազ:

Ընդէ՞ր օտար չարեօքդ չարչարիցիմք, և ընդ այլոց մեղացն դատապարտիցիմք. տես որ զհանդերձս մաքուրս ոք ունիցի; և առաւել չփիցի ընդ ոյնոսիկ՝ որ աղտեղիցեն շաղախեալք, ոչ ապաքէն և նա ընդ նոսա շաղախեալ ապականիցի. նոյնպէս և որ սրբութիւն իցէ ստացեալ, և ընդ ագահս և ընդ յափշտակողս և ընդ ամենայն շաղախեալս մեղօք սէր և բարեկամութիւնս առնիցէ, 'ի պղծոցն պղծութենէ զսրբութիւնն իւր ապականէ: Ապա եթէ ոք նեխեալ և փտեալ և չարահոտ վիրօք զոք տեսանիցէ, չկամի և ոչ 'ի մահիճն յարել. իսկ մեք ընդ անօրէնսն և անկծունքսն խառնակիմք, և ընդ հերձուածողսն՝ որ ևս չար քան զնեխութեան և փտութեան 'ի նոցանէ բուրէ մեղացն ծանրութիւն՝ որ զմարմինս մեր և զոգիս պղծեալ ապականէ; և հանէ

յորքայութենէն, և սատանայի և դիւաց առնէ ժառանգակից, որ զՔրիստոս բարկացուցանեն յանօրէն անկողնոս պղծելով։ Իսկ քրիստոնեայք նոքա են՝ որք զհրամանն Քրիստոսի պահեն և առնեն հանապազ։

Այլ քրիստոնեայքն միշտ ամերզք որք ընդ անօրէնս վաւաշին, և քան զհեթանոսս առաւել են դատապարտին։ «Վայ, ասէ, որ գիտէ զկամս տեառն իւրոյ, և ոչ առնէ, արբցէ գան սաստիկ»։ Եւ Պաւղոս ասէ. «Զի եթէ եղբայր ոք անուանեալ՝ կամ պոռնիկ իցէ, կամ կռապաշտ, ընդ այնպիսումն և հաց մի՛ ուտել»։ Ար-հաւատովն ընդ կռապաշտս համարի զայնոսիկ երանելին Պաւղոս՝ որք ընդ անօրէնս կամօք յարաժամ պառնկին, և անմտութիւնս համարին. զթշուառութիւնն պատուեն, և զաւազակն և զլուսաւորութիւնն Քրիստոսի անարգեն. և ոչ խմանան թէ չէ՛ նմանութիւն լուսոյ ընդ խաւարի, և ոչ Քրիստոսի ընդ սատանայի, և ոչ բաժին հաւատացելոյն ընդ անհաւատին։ Արդ եթէ սիրելի ես Քրիստոսի, ատեա զթշնամիս նորա. եթէ բարեկամ ես Քրիստոսի, թշնամի լեր ատելեաց նորա. զի ամենայն որ անօրէնութիւն գործէ, արհամարհէ զպատուիրանս նորա, և թշնամի է նմա Այ. որ արտաքս մեծապաշտ է՝ մերժի և հեռանայ 'ի նմանէ որպէս 'ի թշնամոյ, թէպէտ և կարի սիրելի ոք է, և կարեւոր յընտանեաց։

Մեծ առաքինութիւն է որք նահատակին և մերժին յարհամարհողացն Այ, և լինին թշնամիք թշնամեաց նորա. ընդ որոց կան հատուցմունք մեծամեծք և պարգեւք զանազանք և պատիւք ընդ մերձաւորս Այ։ Ապէ հարց ընդ թագաւորս աշխարհիս, եթէ զոք 'ի ծառայից տեսանիցէ՝ որ թշնամի թշնամեաց նորա լինիցի, տես քանի վայելչութեամբ պատուով փառաւորէ զնա առաջի մեծամեծաց իւրոց։ Իսկ եթէ լսէ եթէ ծառայ ոք թագաւորին սէր ընդ թշնամիս նորա առնիցէ, և բարեկամութիւն ընդ նոսա դնիցէ, 'ի միասին թէ քանի զանիւք և բանդիւք և զանազան տանջանօք մաշեսցէ, և չար մահուամբ յաշխարհէս բառնայցէ։ Իսկ մեք որքան նախատելոյ և թողութե արժանի լինիցիմք, եթէ սէր և բարեկամութիւն ընդ թշնամիս Այ առնիցեմք; որք հանապազ անօրէն գնացիւք հայհոյեն և թշնամանեն զնա։

Որոց պարտ է բազում երկիւղիւ զգուշանալ 'ի սեղանոյ և 'ի սիրոյ նոցա. քանզի յանօրէնութենէց են կերակուրք յափշտակողաց և գողոց. պիղծ են կերակուրք պոռնկաց և բամբասողաց. աղիղ յաւիտենական տանջանացն են արբեցողացն խրախճանք, և մարդասպանիցն արեամբ շաղ-ղախեալ են ապարանացն սեղանք, և են անսուրբք, և ապա-կանիչ են կերակուրք ամենայն անօրինաց և ապստամբա-ղաց յԱյ, յորոց և Պաւղոս պատուիրէ հեռանալ. զի թէ մատուցողն պիղծ է, առաւել զոհն նորա պիղծ է. և որոց վարքն անսուրբ է, անսուրբք են և կերակուրք նո-ցա: Այլ դու եթէ սրտիւ ես Ածապաշտ, մերժեա և հե-ռացիր 'ի սեղանոյ և 'ի սիրոյ նոցա: Տես զի և դատաւորք աշխարհիս զող և ընդ գողս և ընդ սպանողս դատանեն, ընդ նոսին և դատին, մանաւանդ զպարեկամս և զվա-նատուրս նոցա: Վասն որոյ և մեք հեռացուք 'ի նոցա-նէն զոր Ած է դատեալ. զի մի և մեք ընդ նոսին դա-տեսցուք յահեղ հուր գեհենին և աններելի տանջանօքն:

Այլ արդ զայս ամենայն խնացեալ 'ի բաց եղիցուք 'ի բազմեկանութենէ Հրէից և հեթանոսաց և հերձուա-ծողաց, գողոց և սպանողաց, պոռնկաց և բամբասողաց, յարբեցողաց և յագահաց և յափշտակողաց. և ես առա-ւել յայնցանէ՝ որ յանապաշաւ չարիսն կցեն զաղրեալ և ընդ անօրէնս՝ ամենևին 'ի բաց մեկնեսցուք. զի չէ միաբանութիւն արդարոյն ընդ անօրինին. զի թշնամի է արդարութիւն ընդ անօրէնութեան: Ո՞ր ինչ միաբա-նութիւն է լուսոյ ընդ խաւարի, և կամ զի՞նչ կայ հա-ւատացելոյն ընդ անհաւատին. զի հաւատացելոց տէր է բաժին, և անհաւատիցն հուր է ժառանգութիւն: Այլ կամ զի՞նչ նմանութիւն է տաճարի Այ և մեհե-նաց. զի քրիստոնեայն տաճար է բնակութեան Այ, և անօրէնն բագին է դիւաց: Այնպէս և ամենայն անօրի-նեալք մեղօք մեհեանք սատանայի են և բնակարան դի-ւաց: Ահա այս են բաժինք և սահմանք և օրօշմունք, և զատուցանեն զմեզ յանօրինաց սիրոյ: Ո՞ւր է զի ա-ղաւնիք ընդ ագռաւս բնակեսցեն, և գառինք ընդ գայլս մակաղեսցեն, և կամ խառնուրդք միաբանութեան դի-ւաց պղծոց և լուսեղէն հրեշտակաց լինիցին: Այլ սուրբք զսուրբս խնդրեն, և անօրէնք յանօրէնս յա-րին. զի ամենայն հաւ, ասէ, յերամս իւր իջանէ, և

մեծարող զնմանիս իւր խնդրէ ։ Վասն որոյ և մեք զսուրբս խնդրեսցուք և 'ի սուրբս յարեսցուք . զսուրբս պատուեսցուք , զառաքինեալս սիրեսցուք և բարեխօս արասցուք , և 'ի շնորհաց և յողորմութենէ և յաղօթից մեր զանդրիտեսցուք . և արժանի լիցուք ընդ նոսին խառնացեալ անձայնին բարութեանցն 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր . որում փառք յաւիտեանս . ամէն ։



# ԻԱ.

## ՎԱՍՆ ԱՀԵՂ ՀԱՐՈՒԱԾՈՑ ԿԱՐԿՏԻ

Բազում կերպարանք են պատուհասից սպառնալեաց ծ̃յ՝ զոր յօգուտ և գթութիւն մեզ մատակարարէ. զի թէպէտ և դէմք իրացն ցասման են նշանակ, այլ առ մեզ զգութ հայրենի խնամոցն ցուցանէ: Զի յորժամ արհամարհիցեմք զպատուիրանս նորա, և յանցանք ինչ յանցանիցեմք ըստ կամաց անձանց մերոց գնալ, առ սակաւ սակաւ ներէ և երկայնամտէ, ակն ունելով դարձի ապաշխարութեան: Եւ յորժամ ոչ երկիւղիւ գեհենին, և ոչ փափագանօք անանց բարութեանցն չփութամք յապաշխարութիւն, կամի փոքր մի զարթուցանել զդանդաղութիւն ծուլութեան մերոյ 'ի ձեռն սուղ ինչ պատուհասից առ 'ի խրատ և 'ի զգուշութիւն. զի իւրաքանչիւր ուրուք սրտի հանդէս արարեալ՝ ծանիցէ զանօրէնութիւնս գնացից իւրոց, և զերծեալ հեռասցի 'ի չար սովորութենէ մեղացն, և ապրեսցին յահեղ աղէտից տանջանացն: Ապա եթէ զայս ևս արհամարհիցեմք, և ոչ փութանայցեմք զա̃ծ հաշտեցուցանել ապաշխարութեամբ, և զայլ ևս ճաշակս դառնութեամբ պատուհասից տայ մեզ ըմպել, և հեղու թափէ 'ի վերայ մեր զահեղ պատուհասիցն բազմութիւն, և զահագին մրուր բարկութեան իւրոյ արբուցանէ մեզ չարաչար սպառնալեօք. զի յառաջագոյն ոչ փութացաք հաշտեցուցանել զնա 'ի ձեռն խրատոյ գաւազանին:

Զի թէ էր Փարաւոնի առաջին պատուհասին խրատեալ, զտասն ևս հարուածոցն զճաշակն ոչ ընդունէր. և ժողովուրդն Ամովսայ մարգարէին եթէ առաջին պատուհասին էր ապաշխարեալ, զցաւս ատամանց և զդալուկն և զմարախն և զկարկուտն և զսատակ երաշտութիւնն և զսոսկալի սովն և զհարուածս չարաչարս և ըզմահս տարաժամս ոչ ճաշակէր: Վասն որոյ պարտ է

զգուշանալ յիւրաքանչիւր 'ի չար ճանապարհէն, զի մի այլ ևս բազմութիւնք չարաչար պատուհասից յաւելցին 'ի ձեզ: Քանզի յորժամ անօրէնութիւնք մեր առաւելուն, յայնժամ պատուհասքն զեղուն 'ի մեզ: Ըստ նախախնամութեանն այ և զայն ևս խնամով ածէ 'ի վերայ մեր. զի յորժամ մտանայցեմք զերկիւղն այ, և 'ի չարեաց յոլովիցեմք, ոչ անդէն 'ի մեղսն կամի անապաշխարս զոք կորուսանել, այլ հնարէ ժամանակ ապաշխարութեան: Ապա եթէ ոչ ապաշխարեմք, և այլ ևս յանձինս մեր խնայէ վասն դարձի, և հարկանէ զանդաստանս մեր կարկտիւ, կամ մարախով և կամ այլ ինչ պատուհասիւք, զի ծանուցեալ զյանցանս մեր ապաշխարեսցուք: Ապա եթէ և այնպէս ոչ ապաշխարիցեմք, հարկանէ վասն մեր զանասունս մեր պէսպէս հարուածովք իբրև զպատժապարտ, զի մեք 'ի զեղջ եկեսցուք: Ապա թէ և այնպէս ոչ ապաշխարիցեմք, կամ փակէ զերկինս 'ի վերայ մեր դժնդակ երաշտութեամբ, կամ բանայ չարաչար յոլովութեամբ յապականութիւն: Ապա եթէ այնպէս ոչ ապաշխարիցեմք, շարժեալ զերկիր դղրդուցանէ 'ի ներքոյ մեր, և իբրև ձայնիւ բարբառի ծանուցանել զյանցանս մեր. այլ ոչ ընկղմէ վասն դարձի ապաշխարութեան: Ապա թէ և այնպէս ոչ ապաշխարիցեմք, այնուհետև առաքէ յանձինս մեր ախտս չարաչարս, կամ մահս տարաժամս, կամ խեղութիւն մարմնոյ, կամ ցաւս անբժշկելիս, կամ զկուռն դիւական, և պէսպէս ախտաժէտութիւնս, որպէս և Պաւղոս ասէ՝ թէ "Վասն այսորիկ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք, և շատ ևս տարաժամ ննջեցեալք": Վասն որոյ պարտ է ձեզ միշտ պատուհասիւ զանել և ապաշխարել, և մի զհոգս բազումս և չարաչարս ընդունել զպատուհասիցն, և յետ այնորիկ զհաւքն անշէջ և զտանջանսն յաւիտենից:

Այլ արդ իւրաքանչիւր ոք զխեղճ անձին իւրոյ քննեսցէ, և զբազմութիւն յանցանաց իւրոց ծանիցէ, և մի զմեծ անիրաւ ոք կարծիցէ 'ի հեռուլ զցասումն ապստամբութեան իւրոյ. այլ տացէ գոհութիւն նմա և արդար դատաստանութեան նորա, զի զոր ինչ ած գործէ՝ ոչ եթէ բարկութեամբ ինչ նշանակիչ է, այլ ողորմութեան: Ահա Ջրհեղեղն համանմանն ամենայն աշխարհի՝ նշանակ էր

ողորմութեան և ոչ բարկութեան. զի ինքն ոչ կամեցան զղջանալ և ապաշխարել տապանագործ քարոզութեամբն՝ Նոյի, որ ձայնիւ ուրագին հնչեցուցանէր յամենեցունց լսելիս, 'ի ձեռն արարածական մահուն յանթիւ մեղացն կարծեցան. թէպէտ և սաստիկ ամենեքեան ընկալան վասն գործոցն չարեաց, այլ զոր 'ի վախճանին գործել կամէին՝ 'ի ձեռն մահուն ապրեցան. և յայտ է՝ եթէ ողորմութեան նշանակ եղև ջրհեղեղն նոցա, որք ոչն կամեցան զղջանալ և ապաշխարել: Սոյն և առ սոդոմայեցւոցն խնայեր. զի ոչ եթէ 'ի բարեգործութեց ինչ կործանեցան 'ի ձեռն հրացան կայծակաց, այլ 'ի սաստիկ անօրէնութեանցն և 'ի ժանտագործ գնացիցն. զի բանտարգելեալք էին յամենայն բարիութենէ, որք յարագ մահուն ապրեցան 'ի բազմամեղծութեանց:

Այլ 'ի ձեզ ինքն յորդորս մատուցեալ է ած 'ի խրատել 'ի բժշկել, և ոչ վիրաւորել. այժմիկ յայտնել զանօրէնութիւնս ձեր, և ոչ պատճել յաւիտենական անթոյն տանջանաց: Հարկանէ վասն ձեր զանդամատանս ձեր, զի անձինք ձեր 'ի զեղջ եկեսցեն: Այլ թերևս չար ախտիւն ագահութեան ընչաքաղց և օգտաժողով էիք, և կարձել կամեցաւ. և կամ 'ի ցոփացմունս ինչ ցանկութեանց յափրացեալք, և 'ի ձեռն կարօտութեանց ցածուցանել կամեցաւ. և կամ 'ի լրութենէ հացալիցք և մարմնապարար յափրութեամբք յառացեալք ինչ մոռացայք զերկիւղն այ, և արդ 'ի ձեռն սուղ ինչ նեղութեան և կարօտութեան յիշէք, խնդրէք և աղաչէք զնա. և կամ մեղօք ինչ բարկացուցանէք զնա, և զարթոյց զձեզ յապաշխարութիւն. ահա և ձեզ ցասումն պատուհասին նշանակ է ողորմութեան, և ոչ բարկութեն: Այլ ողորմութիւն 'ի դէմ ցասմանն ցուցանելոյ՝ բազմութիւնք մեղաց զաղաղարեն:

Այլ հանդէս արարէք խորհրդոց, և քննեցէք զախտս ձեր, և գտէք զբազմութիւն յանցանաց, վասն որոյ զեղուն յորդութիւնք պատուհասից 'ի վերայ երկրի. զի չարն սատանայ մեղօ 'ի չարիսն յորդորէ, և 'ի միտս մեր փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք. և մեր անմտաբար արհամարհեալ չնչինս ինչ զմեղսն համարելով, դիզեալ կուտէ 'ի վերայ մեր շեղջս շեղջս մեղացն: Ոք ոմանք նեղեն և կարեն զսահմանս անդաստանաց

ընկերին, զորմէ մարգարէն ասէ. "Վայ որ շինէ զտուն սա տան և ոչ իրաւամբք ,,. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցեն: Այլ ունանք ըզ-վարձս վարձկանաց հատանեն, որք ըստ արիւնահեղուն համարին. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցեն: Այլ ունանք զպտուղս եկեղեցւոյ չա-րակնեն և խաբեն զնա, և զընտիր ընտիր՝ խաշանց, ըզ-կալոյ և զհնձանի անձանց իւրեանց չարակնեն, և խա-բեն զնա, և զխոստմանն և զանօգուտն ուխտան մոռա-ցանեն. որում և մարգարէն ասէ. "Ընծեալ կերի մարդն որոյ ընտրեալն կացցէ, և զորատաւորն ուխտան մո-ռացանիցէ ,,. որով և Կայէն անիծեցաւ. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցուք: Այլ ունանք ընդվայրած լեզուօք 'ի բամբասանաց ոչ դադա-րեն՝ զաղտ զընկերէն խօսելով, որոյ և ասէ. եթէ որ 'ի մարմնոյ տեառն հաղորդի, և չար զընկերէն խօսե-ցի, երկնաւոր սուրն շողացի 'ի շրթունս նորա. և սա-տանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարե-ցուք: Այլ ունանք յորկորոստութիւնք ապականեալք, ո-րոց և Պաւղոս ասէ՝ եթէ "Որբեցողք և բամբասողք զարքայութիւն՝ այ ոչ ժառանգեն ;,. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցուք: Այլ ո-ւնանք աներկիւղ և պակասամիտք եղեալ 'ի թատերս նորա-ոին անամօթեալք, և 'ի գինւոյ տեսարանէն անե-րեւոյթ նետիւք վիրաւորին. թէպէտ և ոչ զինորմնուն, սակայն զհոգին պղծեալ ապականեն. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցուք: Այլ ո-ւնանք ոչ երկիւղիւ այ, այլ ըստ սովորութեանն միայն մտեալ յեկեղեցին՝ զանձինս զատարկ բանից պարապե-ցուցանեն, և զպաշտօնեային փառաբանութեանն այ արհամարհեալ՝ և զաղօթսն 'ի մէջս դարձուցանեն, և զնուան դատապարտեալք. և սատանայ զայն փոքր կար-ծեցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցուք: Այլ ունանք ուծա-ցեալք 'ի սիրոյն այ, և մերժեալք 'ի հոգւոյն շնորհաց, կամ պղծութեամբ հաղորդին 'ի սուրբ խորհրդոյն, և կամ ժտութեամբ հեռանան. երկոքեան չարաչար տան-ջանօք դատապարտին. և սատանայ զայն փոքր կարծե-ցուցանէ, զի մի՛ ապաշխարեսցեն: Ամենայն արհամար-հեալ զնորա մկրտութիւնն և զյոյս յարութեան՝ հե-

Թանտապական անյաւսութեամբն գնան, և լան և կոծեն 'ի վերայ մեռելոց, զոր արգելեալ 'ի քրիստոնէից սըրբոց առաքելոցն. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանց թողեալ 'ի բաց ընկեցեալ զհաւատս քրիստոնէութեան և զզօրութիւն խաչին, և 'ի հմայս և յուռութս և 'ի խռիրս և 'ի գիւթս և 'ի գիւաց զառածանս ընթանան, որ է կատարեալ կռապաշտութիւն և մերժումն յածային օրինացն. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանց աներկիւղ յերդումս և 'ի սուտ երդումն սովորեցուցանեն զլեզուս, զոր և Քրիստոս իսկ պատուիրեաց՝ թէ և ամենևին մի երդնուք. այլ եղիցի ձեր այոյն այո, և ոչն ոչ. որ աւելի քան զայն՝ 'ի չարէն է. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք զորբս և զայրիս և զպանդուխտս յաղթահարեն, և տան հառաչել 'ի վերայ զըրպարտողացն. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք զդրացիս իւրեանց նեղեն ընդարձակել զտեղի իւր, և զվիճակ ընկերին սահմանացուցանեն. վասն որոյ ասէ մարգարէն. “Վայ որ յարէ տուն 'ի տուն, և զընկերին հանիցեն”. Եւ սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք թիւրեն զիրաւունս այրւոյն 'ի դատաստանի, և ակն առնուն 'ի շքեղ երեսաց, խոտեալք և արհամարհեալք կաշառօք անօրէնութեան, զոր և գիրն ասէ, եթէ “Ի հրապարակս անէծք եղիցին, և անէծք բնակեսցեն 'ի տունս կաշառառուաց”. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք 'ի տոկոսեաց վաշխից ժողովեն մեծութիւն և լնուն զտունս իւրեանց, զոր և մարգարէն ողբալով ասէ՝ թէ. “Վայ որ ժողովէ զմեծութիւնս անօրէնութեամբ”. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք զվաճառս ճշդեն և կակծեցուցանեն զկիրս գնողացն՝ չհայելով յաղքատակիս վաճառողն. այլ ջանան առնել զսակաւն մեծագին, և զմեծն սակաւագնի. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք չափ արդար և կշիռ արդար ոչ ստանան, այլ առնեն փոքր և մեծ 'ի խաբէութիւն և 'ի զրկումն բազմաց, զոր և մարգարէն

ասէ՝ եթէ «Չափ կրկին պիղծ է առաջի Աստուծոյ»: և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք քինահանութեամբ զանդաստանս ընկերին և զհամբարս ապականեն. այլ առաւել մոլորեալք խորհրդովն՝ սատանայի յանդգնին ահեղ անօրէնութիւն զտաճան բնակութեանց նոցա հրդեհեն, որ են բազում արեանց պարտապան. որ թէպէտ և մարդիկն ապրեցան 'ի հրոյն մահուանէ, սակայն նա որ զհուրն եդ՝ ըստ թուոյ ոգւոյն է պարտական վրիժուց մարդասպանութեան. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք առանց հարկի հոգևոր ինչ պատճառանօք ևեթ ընդ թշնամիսն Աստուծոյ առնել յօժարեն. և առնեն բարեկամութիւնս և խնամութիւնս ընդ անհաւատս, ընդ Հրեայս և ընդ հեթանոսս և ընդ հերձուածողս, զոր և մարգարէն ասէ՝ թէ «Վասն այնորիկ խորտակէ զնաւս քո, զի թշնամւոյ Աստուծոյ բարեկամ եղեր». և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք 'ի պակասամտաց և յաներկիւղածաց Աստուծոյ թէպէտ և ոչ պոռնկութեամբ, այլ չարաչար նախանձու և շուարարոյ զօշոտութեամբ հալեն և մաշեն զամուսինս իւրեանց 'ի կարծիս պոռնկութեան, որ ոչ երբէք դադարեն 'ի մեղաց և 'ի խռովութենէ, այլ անդադար հանապազ մեղանչեն քինու և ատելութեամբ. վայ որ կարծեն, և եղուկ որ կարծիս տան. և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ, զի մի ապաշխարեսցուք: Այլ ոմանք զծնողս տրտմեցուցանեն և ցաւեցուցանեն անարգանօք զծերս նոցա, զորս պատուիրանն պատուել հրամայէ: Այլ ոմանք զորդիս իւրեանց ոչ խրատեն, այլ խրախ և ընդվայրագնաց թողուն. ընդ որոց ծնողքն զպատիժս պատուհասի ընդունին: Այլ ոմանք ծառայք ստահակք զտեարս իւրեանց արհամարհեն, մարդահաճոյ և աչք վաստակօք յանձանց դատապարտութիւն և 'ի տանջանս: Այլ ոմանք յուխտաւորաց՝ որք զխաշինս ընծայս մատուցանեն, անցին զուխտիւն և ստեցին, և զդաշինս երդմանն արհամարհեցին: Այլ ոմանք 'ի կուսանաց՝ որք Քրիստոսի կամեցան հաճոյ լինել հանդերձիւք և կերպարանօք, որ է չարաչար շնութիւն: Այլ ոմանք 'ի կրօնաւորաց ոչ երկիւղիւն Աստուծոյ պարկեշտանան, այլ կերպարանեալք սնոտին առ 'ի մարդկանէ, յիմա-

րեալք ախտիւն սնափառութեամբ զանձ անգիտացուցանեն . ընդ որոց առաւել քան զպոռնիկս և զարբեցողս դատապարտին ։ Այլ ոմանք ախտիւք և խեղութեամբ նախատեն և բամբասեն զեղբարս , որոց թշնամանքն յոյժ ելանեն , զի զգործս ձեռաց նորա հայհոյեն . զի որոց գործն հայհոյի , և գործելին թշնամանի ։ Այլ ոմանք չարակնեն և նախանձին ընդ եղբօրն յառաջադիմութիւնն , և ուրախ լինին և խնդան ընդ անկանելն . և ընդ աղքատանալն նորա , որ են մեղք ահեղք և չարաչար անօրէնութիւնք առաջի այ . և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ , զի մի ապաշխարեսցուք ։

Այլ ըստ սովորութեանն և մարդահաճոյ աղօթեմք, և ըստ սովորութեանն հաղորդիմք , և ըստ սովորութեանն զպաշտօնն կատարեմք , և ոչ ահիւ և երկիւղիւ և սիրով հոգւոյն , և անձանց[1] ամենայն յօժարութեամբ ։ Որոց և աւել և զայլ անթիւ բազում յանցանացն , զամբարտաւանութեանցն , զգողութեանցն , ըզպոռնկութեանցն , զսպանութեանցն, զնենգութեանցն , զկռապաշտութեանցն , և առաւել զարիւնարբու նախանձուէ և զպիղծ ոխակալութենէ և զանհաշտ թըշնամութենէն զընկերին , որ են հանապազորդ սպանողք և միշտ 'ի մեզ . և սատանայ զայն փոքր կարծեցուցանէ , զի մի ապաշխարեսցուք ։

Այլ արդ այս ամենայն բազմութիւնք անօրէնութեանց զեռան 'ի մեզ . և իշխեցեմք ասել արդեօք եթէ ընդէր զեղուն 'ի մեզ ցասմունք պատուհասից այ , զոր վասն ողորմութեանն իւրոյ 'ի բազում ժամանակաց երկայնամտեալ արգել հեղուլ զսրտմտութիւն բարկութեանն իւրոյ 'ի ձեզ՝ ակն կալով դարձի ապաշխարութեան ։ Այլ վասն զի անզեղջ և անապաշաւ մնացէք , արբոյց ձեզ սակաւիկ ինչ ճաշակումն սպառնալեաց իւրոց . զի ծանիջիք՝ թէ գոյ որ դատի զամենայն բազմութիւն անօրէնութեանց մերոց . և ոչ զբարկութիւնն եհեղ ըստ չափոյ մեղաց ձերոց , այլ զմասն մի 'ի բազմաց առ 'ի խրատել զձեզ . զի գիտասջիք թէ գոյ գեհեն և տանջանք յաւիտենականք , որով դատի և զայլ ևս անթիւ զամբարշտութիւնս ձեր ։

1 Ճառընտիրն ամենայն անձնյօժարութեամբ ։

Այլ արդ ահա զփորձ առէք զզօրութեանն իմ, և ծանեայք զանարգափրութիւնն նորա. մի այսուհետև նմանէք ամբարշտութեանն փարաւոնի խստացուցանել ըզսիրտս ձեր. այլ յիշեցէք զանուղղայ զգործս ձեր, և դարձարուք յիւրաքանչիւր ձեր ճանապարհէ, և ուղիղ ճանապարհին խնդիր արարէք աղաչանօք և պաղատանօք. զի և 'ի ձէնջ այլ պատուհասից բազմութիւնք մերասցին, և սպառնալիք ահեղ տանջանացն անցեալ դադարեսցեն. զի և 'ի ցասումն եկելոց պատուհասիցն համարեսցի մեղաց թողութիւն, որպէս և մարգարէն ասէ. “Տէր, տուր մեզ զխաղաղութիւն քո, զի ըստ ամենայն գործոց մերոց հատուցաւ մեզ„: Որպէս և դուք ընկալայք 'ի ձեռանէ տեառն սակաւ ինչ հատուցումն մեղաց ձերոց, որ եղև ձեզ նպաստ փրկութեան՝ զարթուցանել զձեզ յապաշխարութիւն:

Այլ արդ մի սոդոմապէս պանծանալ անզղջութեամբ, այլ նինուէաբար ապաշխարել, լալով և հառաչանօք հաշտեցուցանել ընդ ձեզ զհայրն երկնաւոր՝ որ խրատէ զձեզ որպէս սիրելիս, և ոչ անտես արարեալ արհամարհեաց իբրև զխորթս ատեցեալս: Այլ զխրատն թէպէտ և առ ժամանակ մի տրտմութիւն համարիք, բայց յետոյ ճանաչէք՝ թէ զզղջումն ապաշխարութեան և զթողութիւն մեղաց նովաւ ընկալայք. զի զոր սիրէ տէր՝ զնոսին և խրատէ, զի որբեալք և քաւեալք 'ի մեղաց պահեսցեն: Այլ թէ և գոհանայցէք ևս զարդար դատաստանացն իմ, եթէ յիրաւի յորում գործեցայքն՝ ընկալայք, կարող է ած զսակաւ ինչ մնացորդս պտղոցն անդաստանաց ձերոց իբրև զհինգ հացին բազմացուցանել առ 'ի լիութիւն բաւականութեան ձերոյ: Բայց դուք մի ինչ զարմանաւոր յղփութիւն խնդրէք, այլ խնդրեցէք նախ զթողութիւն մեղաց և զբժշկութիւն հոգւոց ձերոց, և այդ ամենայն յաւելցի 'ի ձեզ: Այլ ած որ մեծն է ողորմութեամբ, տայ սերմն սերմանահանին, և հաց 'ի կերակուր պարգևեսցէ ձեզ, և աճեցուսցէ զարդիւնս արդարութեան ձերոյ: Զեր զամենայն լիութիւնն ընկալեալ և առաւելեալ լիջիք ողորմութեամբքն իմ՝ առ 'ի լնուլ զամենայն կարօտութիւնս ձեր չքաւորաց, որբոց և նեղելոց: Այլ այդ է քաւութիւն մեղաց և ամենայն անօրէնութեանց ձերոց. այդ է ճանապարհ՝

որ տանի զձեզ յօթեվանս արքայութեանն. այդ է նաւ՝ որ տանի 'ի նաւահանգիստն խաղաղութեան. և այդ է դուռն որ մուծանէ զձեզ 'ի փափկութիւնս անուշահոտ դրախտին և 'ի լուսեղէն և յաւիտենական սրբոցն և արդարոցն խորանս : Ընդ որս զմեզ արժանիս արասցէ վայելել 'ի շնորհս փառաց հօր և որդւոյ և հոգւոյն սըրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :



## ԻԲ

## ՎԱՍՆ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԵՐԿԻՒՂԻՒ Ի ՍՈՒՐԲ ԽՈՐՀՈՒՐԴՆ ՄԵՐՁԵՆԱԼՈՅ

Սոսկան ոսկերք իմ դողութեամբ, և սարսափէ անձն իմ հիացեալ՝ յորժամ յիշեմ զմերձաւորութիւն ահագին և մեծ խորհրդին. և յերկուս վարեալ միտք իմ ծփին հանապազ. կամիմ մերձենալ ՚ի փափագելին, և անարժանութիւնս իմ արգելու. մերժել հեռանալ՝ այս կորուստ է հոգւոյս: Քանզի են բազումք՝ որ կամ հալին չարաչար, և կամ հեռանան անօրէնութեամբ, և երկոքեան են սատանայականք. զի մինն զահեղ խորհրդոյն զզօրութիւն ոչ իմանայ, այլ ընդելական սովորութեամբն հարեալ խղճի մտօք մերձենայ, ոչ ՚ի փըրկութիւն՝ այլ ՚ի դատապարտութիւն, ոչ ՚ի թողութիւն մեղաց՝ այլ յաւելումն անօրէնութեան: Իսկ միւսն իբրև զգոյզն ինչ արհամարհեալ հեռանայ՝ ոչ ինչ կարեւոր համարելով, զի զզօրութիւն և զշնորհս մեծի խորհրդոյն ոչ ճանաչէ, և կամ ՚ի պատիւ ինչ խորհրդոյն համարի ՚զոչ ստէպն մերձենալ. որ ոչ ՚ի պատիւ, այլ յիմարութիւն և ծուլութիւն, հեռանալ ՚ի կենաց, և փափագել խաւարի և մահու. զոր տէր ինքնին ասաց՝ եթէ "Ես եմ հացն կենաց. և որ ուտէ ՚ի հացէս յայսմանէ, կեցցէ յաւիտեան. և հացն զոր ես տաց՝ մարմին իմ է, զոր ես տաց վասն կենաց աշխարհիս":

Իսկ արդ ամենայն որ հեռանայ ՚ի մարմնոյ և յարենէ Քրիստոսի, որպէս յաւել ես զամէնն՝ վասն առաւել ես հաստատութեանն, թէ "Ամէն ամէն ասեմ ձեզ, եթէ ոչ կերիջիք զմարմին որդւոյ մարդոյ, և արբջիք զարիւն նորա, ոչ ունիք կեանս յանձինս ձեր": Իսկ որք ոչ ունին զկեանսն յաւիտենից, նոցա խաւարն աղջամղջին և հուր գեհենին է ժառանգութի: Օ՜ի ամե-

նայն որ հեռի է 'ի սուրբ խորհրդոյն, դիւրաւ ընդունի զախտ սատանայական, և օթևվան լինի նմա համապազ։ Պարտ է անձին կամ 'ի շնորհաց հոգւոյն վայելել, կամ 'ի պիղծ հոգւոյն ընդունել։ “ Հոգի տեառն վերացաւ 'ի Սաւուղայ, և նեղէր զնա այս չար ”։ Զի այգւոյ որ ոչ է պարիսպ, գազանք ապականիչք և խոզք անտառի մտեալ ապականեն զնա. և որ սուրբ խորհրդոյն ոչ պարսպին, բնակարան են դիւաց անձինք նոցա. փախուցեալք 'ի հրեշտակական ժողովոյն 'ի բանակս դիւաց անկանին. և դևք դիւրաւ ըմբռնեն զնոսա, և զհոգիս նոցա տանջեն, և զմարմինս նոցա լլկեն չարաչար, երբեմն 'ի հուր, երբեմն 'ի ջուր։ Իսկ արդ տես և զյիմարութիւն քո փարատեա 'ի քէն, զթերահաւատութիւնդ քո ուղղեա, զծուլութիւնդ 'ի փոյթ յորդորեա, և փութա սրբիլ 'ի մեղաց, և մեծաւ փափագանօք փութա 'ի սուրբ սեղանն հոգևոր, զի մի 'ի քրիստոնէական անուանէդ մերժեսցիս։ Զի քրիստոնէութե՟ն հաւատքն են և մկրտութիւն և վայելումն սրբոյ խորհրդոյն. և որ յարամանէ հեռի է և թերի, թերի է 'ի քրիստոնէութենէ. զի ոչ Քրիստոս 'ի նմա բնակէ, և ոչ նա 'ի Քրիստոս. քանզի որ ուտէ, ասէ, 'ի մարմնոյ իմմէ, նա յիս բնակեսցէ, և ես 'ի նմա։

Իսկ արդ որ կամի բնակել 'ի նմա, այնպէս պարտի գնալ, որպէս նայն գնաց։ Իսկ որ ունիցի զայն յոյս թէ ա՟ծ 'ի նմա բնակէ և նա յա՟ծ, այնպէս պարտի լինել սուրբ, որպէս և նայն սուրբ է՝ ըստ մարդկան տկարութեան չափոյ, ապա մերձենալ։ Իսկ որ ոչ այնպէս մերձենայ, յայտ է եթէ 'ի դատապարտութիւն անձին իւրում մերձենայ. զի մերձենալ 'ի սուրբ մարմինն տէրունական՝ սրբոցն լոյս է, և լուսաւորէ հոգւոյն մերձաւորութեամբ. և պղծոցն հուր է, այրէ և ապականէ վասն խղճիւն մերձենալոյ։ Զի յորժամ վկայութիւն մտացն սրբութեան քում ոչ վկայէ, յայտ է եթէ մերձենալն քո 'ի սուրբ խորհուրդն ոչ է ըստ կամացն ա՟յ. որպէս և Պաւղոս ասէ՝ թէ “ Այս են կամք ա՟յ վկայութիւն մտաց ձերոց ”։ Իսկ եթէ միտք քո վկայեն քում սրբութեանդ, ըստ կամացն ա՟յ է մերձաւորութիւնդ։ Ապա եթէ խղճիւ մերձենայցես, գիտեա զի դատապարտեալ եղանես, և անօրէն քան զամենայն անօրէնս. զի սա են

տուաւել անօրինագոյն է քան զարիւնահեղ սպանողացն չարութիւնս ։ Զի մարդ որ զմարդ սպանանէ, մարդասպան անուանի ․ իսկ որ անարժանութեամբ 'ի մարմնոյ տեառն հաղորդի, նա ա͞ծասպան է ․ քանզի վերստին 'ի խաչ հանէ զորդին ա͞յ ։

Այլ արդ տես թէ յոր սեղան անօրէնութեամբ մերձենաս ․ յորմէ վերին զօրութիւնքն սոսկան և սարսեն, և դու պիղծ շրթամբքդ յանդգնեալ մատչիս ։ Զի եթէ հոտ ինչ չարեաց հարկանէր՝ առ թագաւոր ոք չիշխէիր մերձենալ, և զերկնաւոր թագաւորն 'ի հոտեալ հոգիդ ընդունիս, և ոչ մեծաւ ահիւ հիանաս ․ ցխոտ ձեռօք 'ի կերակուրս խղճես մերձենալ, և գեռաթաթախ ոգւովդ անխտիր հաղորդիս ։ Ո՛ խորք անօրէնութեան, ո՛ ահեղ արհաւիրք, ո՛ անամօթ լրբութիւն և սաստիկ ամբարշտութիւն ․ խղճիւ մտօք և աղտեղեալ ոգւով երթեալ մերձենաս 'ի սրբութիւնս մեծի խորհրդոյն ․ և որ քան զայս անօրէնութիւնս յանդգնեալ յանդգնեցի, չէ և չէ իսկ տեսանել ։ Յորժամ մարդոյ, ասէ, մեղանչէ՝ առ ա͞ծ աղաչէ, իսկ որ ա͞յ մեղանչէ՝ զո՞ աղաչեսցէ ․ զի ոչ եթէ արեան մարդոյ եղեն պարտական, այլ և մարմնոյ և արեան որդւոյն ա͞յ ։ Ածէ 'ի միտ առ և տես՝ եթէ որպէս հաղորդիս 'ի սուրբ խորհրդոյն ․ զի եթէ վստահ ես յարքայութիւնն ա͞յ մտանել՝ անխիղճ ընկալ և զհաղորդութիւն խորհրդոյն ․ իսկ եթէ թերահաւատ ես յարքայութենէն երկնից, ապա և անարժան ես և խորհրդոյն նրբութեան ։ Զի չէ հնար սրբոյ խորհրդոյն արժանաւոր լինել, և արքայութեանն ոչ ․ զի երկոցունցն մի սրբութիւն է արժանաւոր լինել ։

Այլ և ոմանք թէպէտ և 'ի խղճէ մտացն ոչ հաղորդին, սակայն կեղծաւորեալք մնան 'ի ներքս, կարծեցուցանելով արտաքնոցն՝ եթէ 'ի հաղորդելոցն իցեն ․ զի ամենայն որ ոչ է արժանի խորհրդոյն, և ոչ 'ի ներքս կալոյ, ոչ աղօթից և ոչ հաղորդութեան ․ այլ ելանել արտաքս ընդ անարժանսն ։ Մի՛ կեղծաւորիր մնալ 'ի ներքս իբրև արժանաւոր, և չհաղորդել իբրև զանարժան ։ Ընդէ՞ր արհամարհես զահաւոր և զմեծ խորհուրդն ․ ո՞չ իմանաս՝ եթէ յորժամ խորհուրդն սուրբ 'ի սուրբ սեղանն ելանիցէ, յայնժամ երկինք բանին 'ի վերուստ, և Քրիստոս իջեալ անդր հասանիցէ, և զօրք

Հրեշտակաց յերկնից յերկիր ծառայեցին, և շուրջ զսեղանովն բոլորին՝ ուր ահագին խորհուրդն է տէրունական, և սուրբ հոգւովն ամենեքեան լնուցուն : Յայնժամ Հարեալքն խղճիւ ոչ են արժանի Հաղորդել յայնպիսի խորհրդոյն, մինչև ապաշխարութեամբ ուղղեսցին : Ուր և զահեղ բողոք քարոզին . մի ոք յերախայից, ասէ, մի ոք ՚ի թերահաւատից, և մի ոք յանյուսից . որ ոչ են պատրաստ սրբութեամբ, զնոսա արտաքս առաքէ . և ՚ի ներքս մնացելոյն աղաղակէ՝ եթէ Հայեցարուք յանձինս ձեր, և զսիրտս ձեր քննեցէք մի խղճիւ ոք և մի նենգութեամբ ; մի խորամանկութեամբ ոք և մի պատրանօք, մի երկմտութեամբ և թերահաւատութեամբ մերձեսցի . զի սրբութիւն խորհրդոյն սրբոց և անարատից վայել է : Այլ զայս լսելով ոչ դողամք և սոսկամք յահեղ և ՚ի մեծ խորհրդոյն, յորմէ սերովբէքն սարսափեն, և քերովբէքն չիշխեն մերձենալ . Հրեշտակք և Հրեշտակապետք սոսկան դողալով, և ամենայն վերին զօրութիւնքն Հիացեալ սարսեն : Իսկ որչափ սաստիկ տանջանօք մաշեսցի, թէ մարդ յանցաւոր խղճիւ ինչ ՚ի նա Հպեսցի . և որպէս խաւիւ ինչ ՚ի Հուր Հպեսցի, որ ՚ի Հրոյն այրի և ապականի . զի իբրև փոքր ինչ Համարելով զՔրիստոսի մարմինն թշնամանեաց :

Արդ մի իբրև ՚ի լոկ Հաց Հայեսցես, և մի իբրև զգինի Համարեսցես և տեսանիցես . զի ոչ տեսանելի է ահաւորութիւն սուրբ խորհրդոյն, այլ իմանալի զօրութիւն . քանզի ոչ ինչ տեսանելի աւանդեաց մեզ Քրիստոս ՚ի խորհուրդն և ՚ի մկրտութիւնն, այլ իմանալի : Զոր տեսանեմք, այլ ա̃ծային բանին Հաւատամք, որ ասէն, եթէ այս է մարմին իմ և արիւն . որ ուտէ ՚ի մարմնոյ իմմէ և ըմպէ յարենէ իմմէ, նա յիս բնակեսցէ և ես ՚ի նմա, և ես յարուցից զնա յաւուրն յետնում : Այլ մեք ճշմարիտ Հաւատով զՔրիստոս իմանամք ՚ի վերայ սեղանոյն, ՚ի նա մերձենամք, զնա տեսանեմք, զնա շօշափեմք, զնա Համբուրեմք, զնա առնումք ՚ի ներքս և ընդունիմք, և լինիմք մարմին և անդամք և որդիք ա̃յ :

Արդ որ այսպիսի Հաւատով ոչ Հաւատայ, և զմարմին որդւոյն ա̃յ ոչ իմանայ, Հեռի է յօգնականութենէն ա̃յ, Հեռի է և ՚ի շնորհաց Հոգւոյն, Հեռի է և ՚ի թողութենէ մեղաց և ՚ի կենացն յաւիտենականաց, ան-

ակնկալ յարութեան, և անդորր փրկութեան, և մեր-ձեալ 'ի քրիստոնէական հաւատոց, որով եղև մեզ փըր-կութիւն հեղմամբ արեանն Քրիստոսի: Այլ արդ մի՝ ոք 'ի նա խղճիւ մերձեսցի, մի ոք 'ի նա թերահաւա-տութեամբ մերձեսցի, մի ոք թուլութեամբ յարեսցի. այլ հաստատեալ ճշմարիտ՝ եթէ 'ի մեծ ահեղ խոր-հըրդին երկինք են եկեղեցին, աթոռ փառաց է սեղան խորհրդին, և Քրիստոս իջեալ դնի 'ի վերայ՝ որ միշտ բաշխի 'ի փրկութիւն ամենեցուն:

Այլ արդ ով մարդ, հայեաց 'ի քեզ և տես, ուր կաս, զո՞վ տեսանես, զո՞վ համբուրես և 'ի ներքս ընդունիս. ընդ երկնային զօրութեանն կաս, ընդ հրեշտակս օրհ-նես, ընդ սերովբէսն բարեբանես, զՔրիստոս տեսա-նես, զՔրիստոս համբուրես, զՔրիստոս ուտես և ճաշակես, և լցեալ հոգւովն որպէս և ա̃ծային շնորհօքն պայծառացեալ զօրանաս հանապազ: Վասն որոյ և դուք քահանայք և սպասաւորք՝ մատակարարք սուրբ խորհըր-դոյն, ահիւ մատերուք, երկիւղիւ պահեցէք, սրբութ̃ սպասաւորեցէք, և զգուշութեամբ մատակարարեցէք. զանձն ունիք արքունի, մեծաւ երկիւղիւ զգուշացարուք պահպանութեանդ. քանզի և ձեզ աններելի տանջանք են՝ եթէ զչարիս ուրուք գիտիցէք, և նա եկեալ յան-դըգնեսցի 'ի սուրբ մարմինն Քրիստոսի, և ակնածիցես ինչ խրատել մերժել և յանդիմանել: Այլ վասն ծու-լութեան և անխնամութեան զսուրբ մարմինն Քրիստո-սի անօրինաց և անարժանից բաշխիցէք, և որպէս շանց և խոզից ընկենուցուք, և զո՞ր ներեալ թողութիւն ու-նիցիք, և քանի՞ պատժոց և աններելի տանջանաց ակա-նիցիք՝ որք մատնիչք և պարտականք տէրունական մարմ-նոյն եղերուք: Ահա վասն Քրիստոսի իշխէք, վասն Քրիստոսի կերակրիք, և զՔրիստոս անօրինացն մատ-նէք, և պիղծ վարիւք անարժանիցն չարչարէք:

Արդ հայեաց յանձն քո՝ քահանայդ, և ծանիր զքեզ՝ զինչ է վաստակ քո քահանայութեանդ, և զինչ գործ ստացեալ ունիս: Ոչ հերկահար ես ժողովրդեանդ, և ոչ արտունձ[1] և կարող, այլ յուսուցանել և 'ի խրա-տել կարգեցար, մերժել և յանդիմանել: Այս է գործ քահանայութեան, և միշտ հարկ հանապազ. զի վասն

1 Նոտրագիր օրինակն արփահունչ:

այնորիկ այսպիսի պատուով պատուեցայք , և իշխէք ամենեցուն , զի զայսպիսին քննեցէք , և յանդիմանեալ մերժեցէք : Իսկ զոր ոչն գիտիցեն քահանայքն՝ նոքա եւս առաւել աններելի տանջանաց են պարտապանք , որպէս և Պաւղոս ասէ , եթէ “ Որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ , պարտական եղիցի մարմնոյ և արեանն տեառն „ : Այլ և բազմաց իսկ զճաշակ դատաստանին արբուցանէ՝ չարաչար ախտիւք և դառնութեամբ հիւանդութեանց տարաժամ հանէ յաշխարհէս , որպէս և ասէ՝ եթէ “ Վասն անարժան 'ի մարմնոյ տեառն հաղորդելոյ են 'ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք , և շատ եւս որ տարաժամ ննջեցին „ : Զի ոմանք վասն անարժան 'ի խորհուրդն մերձենալոյ լլկին մահկան ախտիւք . և ոմանք վասն նորուն խեղք և լածեալք շրջին զամենայն աւուրս . և ոմանք վասն նորուն անկեալկան 'ի հարուածս և 'ի ցաւս անբժշկելիս . և ոմանք վասն նորուն 'ի բանտս և 'ի կապանս մտանեն . և ոմանք վասն նորուն անզգաւակ իսկ յաշխարհէս ելանեն : Այլ և բազում եւս ցաւմունք 'ի հիւթոցս , և աղտղակորութիւնք և մահք տարաժամք մարդոյ և անասնոց վասն անարժան հաղորդելոյ 'ի մարմնոյ և յարենէ տն քսի :

Վասն որոյ բազում երկիւղիւ մերձեսցուք , բազում զգուշութեամբ զսիրտս մեր քննեսցուք . մի վասն ծուլութեան տօնս նշանակեսցուք 'ի հաղորդութիւնս մերձենալոյ . զի յուրբաթու և 'ի կիրակէին և 'ի տօնս պենտեկոստէիցն և զատկացն մի զենումն է , և նոյն խորհուրդ կատարի . և դու 'ի ժամանակ մերձենալոյ՝ սուրբ զմիտս միայն պահեա , և մի ինչ աւուրս յերկարաձիգս : Չէ ինչ յանդգնութիւն սուրբ սրտիւ բազում անգամ մերձենալ , զի առաւել եւս կեցուցանես և նորոգես զագիր . իսկ անարժանութեամբ և խղճիւ թէ յամենայն ժամանակս կենաց քոց մի անգամ մերձեսցիս , կորուսեր զոգիդ : Տես զի մի յանցանս յանցեաւ Կայէն , և կորեաւ . մի յանցանս յանցեաւ Քանան , և կորեաւ . մի յանցանս յանցեաւ Աքար , և կորեաւ . մի յանցանս յանցեաւ Յուդայ , և կորեաւ . և որք զՔրիստոս սպանին՝ մի անգամ սպանին , և կորեան . և դու եթէ մի անգամ յամենայն ժամանակս կենաց քոց անարժանութեամբ 'ի սուրբ խորհուրդն մերձենաս , սպաներ զոգիդ յաւիտենական տանջանացն կորստեամբ :

Այլ ասիցես. 'ի տօնս քառասնորդացն սրբեալ մեր-
ձենամ: Այլ արդ զի՞նչ օգտիցիս մի անգամ 'ի սրբելոյն՝
յորժամ դարձեալ աղտեղանայցես. զի՞նչ օգուտ է
լուանալն՝ յորժամ դարձեալ ցխոտ լինիս. զի՞նչ օգուտ
է շինելն՝ յորժամ դարձեալ քակիցես: Յաւուր տօնին
միայն կամիս առողջ լինել 'ի ցաւոց, և յետ այնորիկ 'ի
ցաւս մաշել. մի որ բժշկիլ 'ի վիրաց մեղացն, և ապա
զնոյն վէրս ստանալ ախորժես. մի որ հեռանաս 'ի դի-
ւէն, և ապա նովին լլկել հանապազ: Այսպիսիք են որ
մի անգամ հաղորդին 'ի սուրբ խորհրդոյն, և ապա 'ի
մեղս մաշին հանապազ: Զի՞նչ օգուտ է մի անգամ
հեռանալ 'ի սրոյն սպանողին՝ յորժամ վաղիւն 'ի ձեռն
նորա մեռանիցիս. և կամ մի օր ընդ Թագաւորի բազմիլ
'ի սեղանն, և վաղիւն դահճաց մատնիլ անողորմ: Նոյն-
պէս չէ ինչ շահ և օգուտ 'ի տօնի զատկին միայն վայե-
լել 'ի սուրբ սեղանոյն, և ապա պիղծ գործովք հեռանալ,
և ընդ սատանայի լինել հանապազ: Զի՞նչ օգուտ է
յաւուր տօնի գտանել ականս պատուականս, և 'ի վա-
ղիւն կորուսանել. և ոչ 'ի տօնին հաղորդելն է օգուտ,
յորժամ դարձեալ անարժան վարուք կորուսանիցես:
Զի՞նչ օգուտ է 'ի Քրիստոս մերձենալ, յորժամ դար-
ձեալ անդրէն 'ի սատանայ յարիցես: Չէ ինչ օգուտ
այսօր 'ի հրոյն զերծանել, և 'ի վաղիւն միայն այրել չա-
րաչար. և ոչ մխիթարութիւն ինչ է՝ մի օր 'ի բանտէ
ելանել և լինել Թագաւոր, և ապա ընդ դատապար-
տեալսն տանջել անողորմ. և ոչ մի օր օգուտ է 'ի խոր-
հրդեն վայելել, և ապա ընդ դատապարտեալսն ար-
տաքս ելանել: Զի յերկուս ոտս կաղաս և յերկուս
միտս տատանեալիս. կամ դիւաց լեր պաշտօնեայ, և կամ
Քրիստոսի խորհրդակից. մի օր օդի սպիտակացեալ
երևիս, և մի օր այծի սևաթոյր. այսօր Դաւիթ հո-
գելից, և վաղիւ Սաւուղ այսահար. այսօր Պետրոս հր-
նազանդ, և վաղիւ Յուդայ ապստամբ. այսօր Քրիս-
տոսի խորհրդակից, և վաղիւ սատանայի կամարար. այս-
օր իբրև զքրիստոնեայ 'ի մարմնոյ տեառն վայելես, և
վաղիւն իբրև զհրեայ հեռանաս 'ի նմանէ. այսօր ընդ
խոստովանողսն, և վաղիւն արտաքոյ ընդ ուրացողսն.
այսօր ընդ հաւատացեալսն 'ի խորհուրդն մտանես, և
վաղիւն ընդ անհաւատսն արտաքս ելանես: Զի՞նչ

զքեզ կոչեցից, կամ զինչ զքեզ անուանեցից. երբեմն գառնացեալ, երբեմն զաղամանացեալ. երբեմն լուսազգեաց, և երբեմն խաւարապատ. այսօր առնուս պատիւ ՚ի Թագաւորէն, և վաղիւն չընդունիս և դարձուցանես զերեսդ: Այսպիսիք են՝ որ ՚ի յաւուրս ինչ հաղորդին խորհրդոյն, և ապա իբրև զերախայս զերեսս դարձուցեալ երթան. Եթէ արժանաւոր ես խորհրդոյն՝ հանապազ վայելեա համարձակ, զի հոգելից և քրիստոսազգեաց և քրիստոսընկալ լինիցիս. և եթէ անարժան ես վարիւք, և ոչ ՚ի տօն զատկին ես արժանաւոր.

Այլ ասիցես՝ եթէ ՚ի քառասներորդ պահոցն սրբեցայ, և ցանկամ ՚ի սուրբ խորհուրդն մերձենալ: Բարւոք է, և ես գովեցից. բայց արդ ընդէ՞ր չմերձենաս հանապազ: Չկարեմ, ասէ, զիս մաքուր ունել հանապազ: Արդ եթէ այդպէս է ՚ի միտս քո՝ եթէ մի անգամ հաղորդիմ ՚ի տօնին և ապա հեռանամ, և ոչ ՚ի տօնին ես արժանաւոր. զի խորհուրդք չարին են ՚ի քեզ: Զինչ օգուտ է ՚ի Քրիստոս մերձենալ, և ՚ի սատանայէ չհեռանալ. զինչ օգուտ է զպատուական դեղն ճաշակել, յորժամ զթոյն ՚ի ներքս ՚ի քեզ պահիցես. զինչ օգուտ է առ բժիշկն երթալ, յորժամ զվէրսն ոչ կամիցիս մերկանալ. և ոչ օգուտ ՚ի հաղորդելոյդ ինչ գտանես, յորժամ ՚ի մեղացն չկամիս հեռանալ. այլ յաւելուս դատապարտութիւն և տանջանս: Զի եթէ լսէր Թագաւորն՝ եթէ իշխան ոք այսօր ընդ նմա ՚ի խորհուրդ մտանէր, և վաղիւն հեռանայր ՚ի նմանէ և Թշնամեացն լինէր խորհրդակից, մի թէ ընդունէ՞ր զնա ՚ի խորհուրդս. այլ կապէր և տանջէր և սպանանէր: Նոյն որչափ ևս առաւել Քրիստոս դատապարտիցէ և տանջիցէ՝ որ այսօր կամի ընդ նմա ՚ի խորհուրդն տէրունական մտանել, և վաղիւն ՚ի խորհրդոյն հեռանալ, և զկամս Թշնամեացն կատարել: Մի թէ այսօր մաքուր ինչ իցես ՚ի մեղաց՝ յորժամ զայդ ՚ի միտս քո խորհիս եթէ վաղիւն հեռանամ, և զկամս անձին իմոյ կատարեմ. այս առաւել ևս չար է առաջի այ: Որ խորհի ոք մերձենալ ՚ի սուրբ մարմինն Քրիստոսի, և ապա հեռանալ ՚ի նմանէն և ՚ի հրամանացն այ, այս է խաբէի մտօք մերձենալ, և այս է երկմտութեամբ ընդունել. այս է նենգութեամբ հաղորդել, և սատանայօք և խա֊

բէութեամբ և թերահաւատութեամբ ճաշակել ։ Այս աղտեղագոյն է քան զամենայն պղծութիւն՝ յորժամ դարձեալ հեռանալ խորհիցես, և միւսանգամ անդրէն յառաջին չարիսն մերձենալ ։ Զի մարդ որ ասէ դառնալ 'ի մեղաց, և միւսանգամ անդրէն շրջիցի, շան նըման է՝ որ յիւր փսխածն դառնայցէ ։

Այլ արդ զայս ամենայն իմացեալ մի արժանաւորութեամբ հեռասցուք 'ի սուրբ խորհրդոյն յերկար ինչ ժամանակս, և մի անարժանութեամբ յանդգնեալ հըպեսցուք յահեղ խորհուրդն սրբութեան. զի պատիժք ահեղք անարժանիցն միայն՝ որք յանդգնեալ խղճիւ մտացն հաղորդին, և պատիժք արժանաւորացն՝ որք հեղգանան և ծուլանան յերկար ինչ ժամանակաւ ։ Այլ բազում երկիւղիւ անձանց զգուշասցուք, և մեծաւ փութով զխաւարն անգիտութեան փարատեսցուք. զանիրաւ զբարկութիւն, զթշնամանողութիւն, զչարայուշ ոխակալութիւն 'ի բաց ընկեսցուք. զխորամանկութի, զքինահանութիւն, զնախանձ մերժեսցուք. զտրտմութիւն և զաւանց բարբառոյ աղաղակն 'ի բաց թօթափեսցուք. յագահաց, 'ի բանսարկողաց, յարբեցողացն և 'ի զեղխեցելոցն փախիցուք. զչարակնութի և զատելութիւն և զգաղտնի նենգութիւն դադարեցուսցուք. ընդ թշնամիսն հաշտեսցուք, զատելեան սիրեսցուք, և զյանցանս միմեանց թողցուք. յամենայն սրտէ միմեանց ծառայեսցուք, միմեանց հնազանդեսցուք, զմիմեանց բեռինս բարձցուք, զմիմեանս սիրեսցուք, զընկերս իւքան զանձինս համարեսցուք. զսիրտս սրբեսցուք, զաչս ցածուսցուք, զլեզուս 'ի բամբասանաց դադարեցուսցուք, զմեղս ապաշխարեսցուք, զխիղճս փարատեսցուք, զյիմարութիւնս թօթափեսցուք, և զծուլութիւնս 'ի փոյթ դարձուսցուք. պահօք պնդեսցուք, աղօթիւք աշխատեսցուք, յողորմութիւնս յօժարեսցուք, գործովք առաքինասցուք, 'ի չարեաց տղայասցուք, և հաւատով կատարեալ լիցուք ։ Զի այսպէս ամենայն առաքինութեամբ արժանաւորեսցուք ահաւորի և մեծի խորհրդոյն. բազում փափագանօք և կատարեալ սրբութեամբ վայելեսցուք յամենասուրբ և 'ի կենսարար 'ի մարմնոյ և յարենէն անարատ մերոյ Յիսուսի Քրիստոսի. որում փառք և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ԻԳ

# ԹՈՒՂԹ ՄԽԻԹԱՐՈՒԹԵԱՆ ՎԱԽՃԱՆԵԼՈՑ ՅԱՇԽԱՐՀԷՍ

Հայեաց դու 'ի յոյսն վերին՝ որ իջանես 'ի խոր խաւարային սգոյդ. փութա փարատել 'ի քէն զյիմարեցուցիչ խորհուրդս չարին, և զարթիր և ել 'ի միտս քո. յիշեա զպատուէրս պատուիրանացն այ, և թափեա ըզքեզ 'ի սատանայական թախանձանացդ, և 'ի միտ առ զբազմաչար հնարս թշնամւոյն, և պատկառեա 'ի նետից նորա. երկիր 'ի խորամանկութենէն և թիւնից աներևութից նորա. փախիր 'ի դառն վիրաց և 'ի սաստիկ հարուածոց նորա ։ Հայեաց 'ի պղտորութի մտացդ քոց, և ծանիր եթէ այդ սերմանք թշնամւոյն են 'ի քեզ. արի անկիր առաջի այ՝ զի ապրեսցիս 'ի չար խաբէից նորա և յանօրէն տրտմութենէն ։

Ո՛ի յորժամ սատանայ քօղովլիմք գերէ զմիտս մարդոյն, ածէ 'ի վերայ տրտմութիւն և յուզմունս խորհրդոց. որ թէպէտ և սուղ ինչ իցեն տրտմութիւնքն, սակայն նա 'ի պղտորեալ միտս նորա անհնարին և անչափս կարծրացուցանէ, որով և զսիրտն յիմարեցուցանէ, և թուլացուցանէ 'ի սովորական աղօթիցն և յերկիւղէն այ ։ Նաև մանաւանդ որում պատճառս ևս վախճանելոյ ուրուք գտանիցէ, քօղովլիմք արկանէ 'ի վերայ մտածութեանց նորա անհնարին մթերս սգոյ տրտմութեան, և 'ի ներքս զսիրտն այրէ, և զմիտսն նուաղէ, և ամենևին զուշն ափշեցուցեալ 'ի զգայութենէ մտացն ընկենու, և ոչ տայ խոնարհել 'ի բանս մխիթարչացն և սփոփողացն. այլ յամառեալ պնդէ 'ի սգոյն տրտմութիւն, զի ցնորք թշնամւոյն անհնարին թաղծանօք յիմարեալ ափշեցուցանեն առաւել քան արբեցութեամբ. և ամենևին ոչ թողացուցանեն նայել 'ի պատուէրանս

նոյ որ ասէ՝ Թէ լաւ է օր մահուանն քան զօր ծննդեանն ։ Ընդէր ․ քանզի օր ծննդեանն սկիզբն է մեղաց և անօրէնութեանց , և առիթ սկսանելոյ աճել ՚ի նմա ցաւք և հոգք՝ և տրտմութիւնք և զրպարտութիւնք և աղքատութիւնք , այրութիւնք և որբութիւնք և անզաւակութիւնք և ամենայն չարչարանք բազում նեղութեանց և տառապանաց աշխարհիս ։ Այլ և ժողովեալ ևս հեղու զնովաւ սատանայ զամենայն բազմութիւն ախտից մեղացն չարչարել , նեղել , վիրաւորել զնա թշնամութեամբ , գողութեամբ , սպանութեամբ , բամբասանօք , երդմամբ , նախանձու , չարակնութեամբ , ոխակալութեամբ , ագահութեամբ և զայլս զրկելով , նենգութեամբ , հմայիւ դիւթականօք , և ամենայն անթիւ ախտից բազմութեամբ ․ ընդ որոց հատուցումն է հուրն անշէջ և տանջանք մշտնջենաւորք ։ Իսկ ՚ի ձեռն մահուանն յայնժամ ամենայնէ բուժեալ դադարէ ․ զի թէպէտ և վարս արդարութեան ոչ ունէր , սակայն ՚ի մեղանչելոյն դադարեաց ․ ապա եթէ վարս ուղիղս էր ընտացեալ՝ զերծաւ յամենայն կասկածանաց մեղաց և ՚ի հոգոցս աշխարհիս , և վերացեալ խառնեցաւ ՚ի բանակս սրբոց և արդարոց ։

Եւ արդ զայսպիսի լուսաւոր կեանս յիմարութիւն է լալ և ողբալ անառակութեամբ և հեթանոսաբար ․ զի և Պաւղոս և զլոկ միայն տրտմութիւնն արգելեալ փակեաց առաքեալն՝ թէ „ Վասն ննջեցելոցն մի՛ տրտմիք որպէս և այլ հեթանոսք՝ որ ոչ գիտեն զԱծ „ ։ Իսկ որչափ սաստիկ պատժոց արժանի համարեցիք՝ որք ՚ի սուգս և ՚ի կոծս և յողբս մոլանիցեն ․ զի արգելեալ է ՚ի քրիստոնէից հաւատացելոցն՝ որք լուսաւորեցան սուրբ աւազանաւն , և մեծ և ահեղ անուն սուրբ Երրորդութեան ՚ի վերայ նոցա անուանեցաւ , և կնքեալ խաչիւն նոյ նուիրեցան , ամենևին իսկ ոչ են իշխան զնուիրեալսն նոյ խայտառակել հեթանոսական անօրէնութեամբք , և ոչ չարաչար խզել և փետել և մոխիր ՚ի վերայ նուիրեալ գլխոյն արկանել ․ այլ ամենևին ՚ի բաց հեռանալ յանօրէն և ՚ի սատանայական վայիցն և յողբոցն և անօրէն ձաղանացն ։ Ոչ զհերս փետել հրամայեսցէ քրիստոնէիցն , ոչ զայտս ցտել , և ոչ ՚ի կոծ մոլանել , ոչ զաւիգածն ածել , ոչ զուսովքն մերկանալ , ոչ զճակատն հար-

կանել, ոչ քուրձ զգենուլ, ոչ մոխիր ցանել, և ձայնս արկանել, և ոչ աշխարանօք ողողանել. զի այս ամենայն սատանայական է և հեթանոսական, զոր անմիտ կանայքն բարբառեն 'ի ցոյց կեղծաւորութեան, և դիւապաշտից գործեն 'ի վերայ քրիստոնէից, զողբան ողբալով, և զկականն բառնալով, և զձիչս աշխարանացն հնչեցուցանելով, անյուսաբար չարաչար զմարմինս կոծելով 'ի վերայ քրիստոնէի վախճանելոյն, զոր պարտ էր սաղմոսիւք և օրհնութեամբք յղարկել, պատուեալ երգօք 'ի կեանսն յաւիտենականս։

Ընդէ՞ր խայտառականօք և անարգանօք ազդող թըշնամանեք զմարմինս հոգեկիր և քրիստոսազգեաց։ Այլ արդ թէ դուք քրիստոնեայ անուանեցայք զինչ որք սատանայական մոլորութիւնս մոլորեցիք 'ի վերայ մեռելոյն. քանզի ընդ այդպիսի անօրինեալսն և դուք խառնիք՝ 'ի կածառեղին անցանեն։ Քանզի նոքին իսկ ուսուցին զկոծ անյուսութեան և զտրտմութեան սգոյ աշխարանացն, զի զկոծողսն ընդ նմին 'ի հուր գեհենին զատապարտեցեն։ Այլ ձեզ պարտ էր ամաչել 'ի Հրէից և 'ի հեթանոսաց և յայլազգեացն՝ որ զհաւատս մեր բամբասեն և ասեն. ո՞ւր է ձեր յոյսն յարութեան՝ յորժամ այդպիսի ողբովք և սգովք և աշխարանօք և զազրալի խայտառականօք արիւնահան և արիւնահեղ լինիք հանդերձ վայիւք և փետիւք, ձիչիւք, գուժիւք կոծեալ աշխարհեցէք զանուանեալն քրիստոնեայն։

Ընդէ՞ր պարծիք, ով քրիստոնեայք, որ երգովք էք նմանեալք Հրէից և հեթանոսաց. այլ դուք և ընդտրամութիւն զօրինաւորիդ առաւել քան զանօրինացն ուսանեցիք, որք չարաձայնք կառանչիւք և վայիւք և փետիւք խեղդին, ողբան և ողողանին անյուսալի, զճակատն դիւահարեն հարկանեն, և զկուրծսն անզգամօրէն բախելով իբրև զայրահար. և կանայքն կանչիւք հերարձակ զգլուխն ցանեն, զստինս կեղեքեն, և անամօթաբար իգացեալք մերկանդամք խաղին և կոծին մոլեգնօրէն, իբրև զմոլիչն չարաղուկ դիւահարեալս. եղուձ, արիւն և մոխիր, և հանդերձք պատառեալք։ Արդ այսպիսի ձաղանօք ձայնին և ծանակին քրիստոնէիցն պատկերքն՝ որ ոչ 'ի հեթանոսս լոկ, և ոչ 'ի Հրեայս, և ոչ 'ի հերձուածողս, և որք ոչ ընկալան երբէք զյոյս յարութե

մեռելոց ։ Այս արդ մեք մերժեսցուք զայնպիսի անզգա-
նեալ սգաւորսն 'ի համարոյ քրիստոնէից, և հանեալ
յեկեղեցւոյ՝ ընդ երախայս համարեսցուք, և սուգ առ-
ցուք 'ի վերայ նոցա իբրև 'ի հեթանոսաց. զի այնպի-
սիքն են ազգք արժանի՝ ողբալոյ և աշխարելոյ և կոծոյ
մեծի, որք 'ի հուր գեհենին դատապարտին, և մասն
ընդ անհաւատսն ունին, զի զհեթանոսական չարաչար
ախտսն անյուսութեան յեկեղեցի մուծին ։

Այլ արդ ասա ինձ, ով քահանայ, ընդէ՞ր մուծանես
զսգաւորս պաշտօնէից և սաղմոսաց 'ի գործ մերկանդամ
խաբէութեանցն. զի՞նչ կայ սրբեցելոց պաշտօնէից և
սատանայապաշտեաց դիւական կոծողացն ։ Ընդէ՞ր խառնես
զօրհնողսդ ընդ անիծողսն, զգոհացողսդ ընդ Թշնամա-
նողսն, զփառաւորիչսն ընդ հայհոյիչսն ։ Ո՞չ է օրէն յա-
նօրէն ժողովս սատանայական զհրեշտակական երգսն
մուծանել, և ոչ 'ի պիղծ մեհեանս դիւացն նոցա զսուրբ
զաղօթսն մատուցանել, և ոչ 'ի բագինս զոհարանացն
պատարագս նուիրել. զի պիղծք առ պիղծն ժողովին,
և սրբոցն սրբութիւնք վայելեն ։ Ո՞չ է մի ժողովուրդ
հրէից և հեթանոսաց, և ոչ քրիստոնէից և հերձուա-
ծողաց, զի հակառակք և խափանիչք են միմեանց. և
դու խառնեալ ընդ միմեանս միաւորես, և 'ի մի ժողովս
առաքես օրհնութիւս և անէծս ։ Կոծողք անօրէն անա-
ռակութեամբք բարկացուցանեն, և պաշտօնեայքն ա-
ղօթիւք և սաղմոսիւք բարեխօսեն ։ Յորժամ մերձա-
ւորք վախճանելոյն անօրէն սգով և կոծելով Թշնամա-
նեալ բարկացուցանեն զնա, ընդէ՞ր աղաչես, մաղթես
և բարեխօսես վասն Թողութեան մեղաց վախճանելոյն.
ո՞ւմ լսէ, և զո՞ր ընդունի ։ Եթէ ես ինչ հոգաբարձու
հրաժարելոյն, յեկեղեցիս քո յիշես, և յաղօթս քո
աղաչես զնա. այլ ընդ վայր և անվայելուչ է խառնել
զպաշտօնեայս սուրբ եկեղեցւոյ 'ի պիղծ ժողովս սատա-
նայական կոծողացն, և 'ի տեսիլ անամօթ կանանցն
հերարձակացն արիւնաշաղախ խզելոցն և մոլորացա-
նացն. որ Թէ և Թշնամիք էին վախճանելոյն, այնչափ
կարէին տրտմեցուցանել և առնել նմա չար, զոր 'ի ժա-
մանակի հրաժարելոյն հոգւոյն արարին. և ոչ ընկալան
զձայնն մարգարէին որ ասէր՝ եթէ “Դարձ անձն իմ
'ի հանգիստ քո, զի տէր բարի արար քեզ„ ։ Տէր բա-

րերարութիւն ցուցանէ զօր մահուանն, և դու կոծես և աշխարես և ողբաս դառնապէս: Ո՞չ քեզ ասէ մարգարէն՝ թէ "Վայ որ ասէ զչարն բարի, կամ զբարին չար". քանզի չար են կեանք մեղաւորին, և ևս քան զևս յաւելու 'ի մեղս. և բարի է մահ նորուն, զի դադարէ 'ի չարեաց:

Ապա թէ կեցեալ էր, ասես, թերևս ապաշխարէր, աղաչէր և ողորմութիւնս առնէր, և արտասուօք զտէրն հաշտեցուցանէր: Ո՞վ դու զայդպիսի ինչ ածեր զմտաւ, և անգէտ զամենագէտն կարծեցուցանէր՝ որ ոչ կամի զմահ մեղաւորին. բայց գիտէր սրտագէտն ա̃ծ՝ թէ ոչ ապաշխարեսցէ, զմահն նմա ողորմութիւն պարգևէ՝ զի դադարեսցէ յառաւելուլ մեղաց գործելոյ: Ապա մահ արդարոյն ամենևին իսկ ցնծութիւն է և ուրախութիւն՝ փոխել 'ի մեղսասէր և մշտավաստակ հոգւոց աշխարհէս. և զգանձս վարձուց առաքինութեան զոր հանդերձեալ տարաւ, յամրի և զգուշութեամբ պահեսցէ. և եթէ սուղ ինչ իցէ աղտեղեալ, օգնեսցուք նմա գթով մնաս-կաց, յիշեսցուք յահեղ խորհրդին, ողորմութիւն վասն նորա արասցուք. և այն է կաշառ բարերարին ա̃յ՝ որ առնէ բարերարութիւն 'ի վերայ վախճանելոյն՝ որպէս ինքն գիտէ: Այլ արդ զայս լսելով փարատեա 'ի քէն զսուգ թանձրամած յուսով ահեղ աւուրն յարութեան, և բոլորովին հանեալ զերծ 'ի քէն զաղձաստանս սգոյ տրտմութեան, զի քրիստոնեայ կոչեցիս. և ամենայն բերկրանօք սթափեցիր, ակն կալ փափագելի կենացն յաւիտենականաց. և այսու մխիթարեա, զի քում վախճանելոյն ոչ պատահեցին մահք սոսկալի պատահից:

Քանզի բազում են մահք չարաչարք, և յանկարծօրէն յորոգայթից ինչ տարաժամ մեռանել. այլ դու այդիւ մխիթարեա և գոհացիր զա̃յ, զի քոյդ խաղաղութեամբ 'ի մահճիս իւր վախճանեցաւ: Այլ մահք չարաչարք այնոցիկ է, որք 'ի գետոց վախճանեցան, և քարածեծ պատառեցան. այլ դու այդիւ մխիթարեա և գոհացիր զա̃յ, զի քոյդ 'ի գիրկս քո կատարեցաւ, և կտակ մխիթար կենդանեաց եթող: Այլ մահ չարաչար այնոցիկ է՝ որք 'ի թիւնից օձից և 'ի չարաժամի գազանաց դէշ դէշ պատառեալ իցեն, և ոչ ոք զյետին բարբառն լսեաց, և ոչ զձեռս և զոտս ածեալ տեսանիցեն. այլ դու

այդպէս մխիթարեա և զօրացիր զիս, զի զքոյդ ձեռաւք քովք թաղեցեր, և զյետին բարբառն լուար։ Ի ժամ հար այնոցիկ՝ որք 'ի պատերազմունս մեռանիցին, և ըզսուրն շողացեալ տեսանիցեն, և կենդանութիւն խաւարն զաչօքն պատեսցի, և թշնամոյն զինուաւ կացուցեալ՝ զէշ գազանաց արկանիցեն. այլ դու այդպէս մխիթարեա և զօրացոյ զիս, զի քոյդ 'ի վերայ անկողնոյ հիւանդացաւ, և պատուով իւր նախրեցաւ։ Ի ժամ հար այնոցիկ՝ որ վասն մեղաց դահճացն մեռանիցին, և կենդանութիւն զմարմինն յօշեալ և պատառեալ անդամ անդամ 'ի փայտ՝ բարձրանեալ տեսանիցեն անձինք և ազգականք ամօթալից ծաղրանօք. այլ դու այդպէս մխիթարեա և զօրացիր զիս, զի քոյդ զօրութեամբ հիւանդացաւ, և խոստովանութեամբ կատարեցաւ, և հաղորդութիւք ողջանից զգեստւոյն հոգւոյն ընկալաւ։ Ի ժամ հար այն՝ որք 'ի գետաց ընկեցան, և անզգայեալ զմարմինս անդամոցն ուտիցեն, և անողորմ ձեռակապօք արկեալ յարգել՝ սովամահ մեռանիցին. այլ դու մխիթարեա և զօրացիր զիս, զի քոյդ համբերութեամբ հիւանդացաւ, և օրհնութեամբ վախճանեցաւ, պատարագօք պատեցաւ, և սաղմոսիւք յուղարկեցաւ, և քահանայական աղօթիւք և պատարագօք յերկինս առաքեցաւ, և հանապազ օրհնի և յիշի 'ի յիշատակացն կատարելոյ։

Ու արդ ո՛վ իցէ որ այնչափ ապաշնորհ և անմխիթարական միտս ունիցի, և զայս զմտաւ ածելով մեծապէս ոչ մխիթարեսցի, և անդադար գոհասցի զիս՝ թէ արդարի փառօք և պատուով վախճանեալն յերկինս կոչեցաւ, ուր են ամենայն ժողովք սրբոց, բանակք արդարոց և գունդք սրբոց, երամք մարգարէիցն, դասք առաքելոցն և անթիւ հոյլք մարտիրոսաց, խորանք պայծառազարդք, բնակութիւնք լուսեղէնք, և մշտնջենաւոր վայելչութիւնք, և փափագելի դրախտն, անանց բարութիւնք, անսպառ խնդութիւնք, անծերանալի մանկութիւն, անխափանելի առողջութիւն, սէր սուրբ, տեղի ցանկալի, կեանք փափագելիք, և անպակաս ցանկութիւնք հրեշտակաց, հրճուանք հրաշալիք, գգուանք գգուանաց, և սիրելի փափկութեանց, և հանգիստ հոգեպարական ամենայն ընտրելոց. ընդ որս և քո վախճանեալն ուրախութեամբ հանգիցէ։

Նա՛ որդ քեզ պարտ է մխիթարել ամենայն խնդու-
թեամբ, զի 'ի յերկինս թռեաւ, 'ի մարդկանէ 'ի հրեշ-
տակս փոխեցաւ, 'ի մահուանէ 'ի կեանս ընկլեցաւ, 'ի
խաւարէ 'ի լոյս ձգեցաւ, յաղքատութենէ 'ի թագա-
ւորութիւն կոչեցաւ; 'ի ծառայութենէ յազատութիւն,
'ի վտանգաց 'ի հանգիստ, 'ի հոգոց յանհոգութիւն, 'ի
մեղաց յարդարութիւն, 'ի հողեղինաց 'ի հոգեղինան
փոխեցաւ և ընդ հրեղինան գասակցեցաւ. Որդ զա-
ւակիւ մխիթարեա ամենայնիւ՝ եթէ ակն ունիս յարու-
թեանն, այլ և ած զմտաւ՝ եթէ մահ է ճանապարհ
ամենայն աշխարհի, և ամենեքեան երթամք ընդ այն
ճանապարհ։ Ադամ, Աբէլ, Սէթ, Նոյ, և ամենայն
արդարքն զմահ ընկալան. որով պարտ է և քեզ մխի-
թարել։ Աբրահամ, Իսահակ և Յակոբ և Մովսէս
և Դաւիթ՝ տեսողքն այլ, և ամենայն նահապետքն՝
արդարքն և ճգնաւորքն զմահ ընկալան. որով պարտ է
և քեզ մխիթարել։ Նա ամենայն թագաւորք սուրբք
և արդարք զմահ ընկալան, որով պարտ է և քեզ մխի-
թարել. Նա և մարգարէքն և առաքեալք և մարտի-
րոսքն և սուրբ կոյսն ճգնածինն զմահ ընկալաւ, որով
պարտ է և քեզ մխիթարել. Նա և Քրիստոս որդին
այ վասն մերոյ փրկութեան զմահ ընկալաւ, զի զմեզ
անմահացուսցէ 'ի կեանս անմահս։ Վասն որոյ պարտ
է գոհանալ և մխիթարել նորոգութեանն յաւուրն յա-
րութեանն ամենայն արդարոց, ընդ որս և մեք յարի-
ցեմք, և զանխճանելին մեր ընկալցուք խնդութեամբ։

Որդ լուարուք Պաւղոսի, որ մխիթարէ զմեզ ասե-
լով՝ եթէ "Վասն ննջեցելոցն մի տրտմիք՝ որպէս և այլ
հեթանոսս որք ոչ գիտեն զած"։ Նոր և մարգարէն
որ ասէ. "Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտուց
եղիցի ուրախութի"։ Որդ եթէ անուանեալ էք քրիս-
տոնեայ, և հաւատացեալ էք յարութեանն, արդ մխ-
իթարեցէք զձեզ մարգարէական և առաքելական մխ-
իթարութեամբ. զի սուգ անյուսից է, և ոչ քրիստո-
նեայ և հաւատացելոց՝ որք ակն ունին նորոգման ամե-
նայն ննջեցելոց. զի ոչ է 'ի կորուստ մահ քրիստոնէին,
այլ 'ի նորոգութիւն կենացն յաւիտենից. վասն որոյ և
զոգիս վախճանելոցն մերոց սաղմոսիւք և օրհնութեամբք 'ի
կեանս յղարկեմք, իբրև ընծայ կոչ այ նուիրեմք։ Յա-

ղագս այնորիկ ոչ է պարտ քրիստոնէին 'ի վերայ մեռելոց սուգ ունել և լալ. այլ լայցեն Հրէայք և ողբասցեն հերետիկոսք, սուգ առնուցուն և կոծեսցին ամենայն թերահաւատք և հերձուածողք, զի նոքա լալոյ և ողբալոյ արժանի են, աշխարանաց և կոծոյ մեծի. այլ մեք նորոգութեամբ կենացն յաւիտենից մխիթարեսցուք: Նաև արդ վասն այսր ամենայնի բարձէք զկոծս, խափանեցէք զողբս, 'ի բաց արարէք զտրտմութիւն, դադարեցուցէք զարտասուս, արգելէք զլալականս, լռեցուցէք զկառաչիւն լալեաց և վայից. արհամարհեցէք զեղանակամարս լալականաց, անարգեցէք զփետիւն վարսից և զխզել հերաց, հալածեցէք զարիւնահանսն և զմոխրացանսն, թշնամանեցէք զմերկանդամսն և զխայտառակեալսն: Մեկնեսցուք յանօրէն մոլորութենէն, հեռասցուք 'ի հեթանոսական ամբարշտութենէն, ամենեւին 'ի բաց փարատեսցուք զսուգ սատանայական և զանյոյս մթերս: Օն կեցցուք քրիստոնէութեամբ, և վախճանեսցուք ածպաշտութեամբ, և հանգստեան և երկնից արքայութեանն արժանի լիցուք 'ի տէր մեր. որում փառք իշխանութիւն և պատիւ այժմ և յաւիտեանս:

# ԻԴ

## ՈՂԲՔ

Խոստովանողք փութացարուք
Չմնալ ապրել յաւուրս մեր.
Զի օր ահեղ կայ առաջի,
Ահեղ ատեան և հուր անշէջ։
Աստէն լացցուք և ողբասցուք
Եւ խընդրեսցուք ըզթողութիւն.
Զի ապրեսցուք յանշէջ հըրոյն,
Որ ըսպառնայ մեղաւորաց։
Միշտ հանապազ արտասուեսցուք
Գորովագին պաղատանօք,
Աղերսալի հառաչանօք
Զքաւիչ մեղացն աղաչեսցուք։
Անկցուք առ նա խոստովանել
Զոր արարաք աստ 'ի ծածուկ,
Յայտնել աստ և ցուցանել
Զգաղտնիս մեղացըն բազմութեան։
Զի անդ քըննելին խորհուրդք մեր
Եւ ցուցանելին յանցանքըն մեր.
Յայտնելին գաղտնիք սըրտից մերոց
Յաշխարհահանդէս հըրապարակին։
Ես զարհուրեալ եմ և դողամ
Յորժամ լսեմ ըզձայն փողոյն,
Որ տագնապաւ կոչէ զազգիս
Ի մեծ ահեղ օր ատենին։
Զի չարաչար մարտեաւ ընդ իս
Ամենամեղըն սատանայ.
Եւ կարեվէր զիս արարեալ
Հանեալ ընկեաց յանմահ փառացն.
Դառնագին չար պատրաստեաց
Ի տարտարոսըս գեհենին,
Եւ ըսպառնայ մեղաւորիս
Այրել 'ի հնոցըս կայծականց։

Որ ոք ունիք սէր սրբութեան,
Զիս ողբալով արտասուեցէք.
Ջերմագութ պաղատանօք
Ինձ խնդրեցէք ըզթողութիւն։
Քրիստոսասէրք իմ սիրելիք,
Ինձ օգնեցէք վիրաւորիս.
Եւ գորովով մեծ ողորմիւ
Ցաւեցէք ըզտէր վասն իմ։
Հառաչանօք զձեզ աղաչեմ
Մեղուցելոյս ողբակցեցէք.
Պաղատանօք լացէք ընդ իս
Ջանակցելով իմ աղէտիս.
Կականաբարձ զիս ողբացէք
Եւ ձայնս առէք ողորմելիս.
Զի չարաչար ըմբռնեցայ
Ի չար նետից սատանայի։
Միգապատեաց զիս թշնամին
Խաւարային ցանկիւքն իւրովք.
Եւ սուր համեալ վիրաւորեաց,
Զոր աղաչեմ զձեզ բըժըշկել։
Սուրբ հաւատոյ մանկունք, ուր էք,
Ողորմեցէք ինձ նեղելոյս,
Եւ գըթագին պաղատանօք
Զքաւիչ մեղացն աղաչեցէք։
Յողօթըս ձեր ապաւինիմ,
Եւ ինձ հայցեմ ըզթողութիւն.
Զի զանազան եմ մեղուցեալ,
Եւ ոչ բաւեմ ապաշխարել։
Ես զարհուրեալ եմ և դողամ
Յորժամ յիշեմ զիս մեծամեղս,
Թէ յայն երկիր կայ անցանել,
Եւ զտէր փառաց կայ տեսանել։
Քրիստոս գըթած և ողորմած,
Գըթա և յիս ամենամեղս,
Զի ես գըտից ողորմութիւն
Ի գումարել մեծ ատենիդ.
Զի օր ահեղ կայ առաջի
Եւ սոսկալի մեղաւորիս.
Որ ըզգաղտնիս սրտիս քննէ
Եւ ըզծածկեալ խորհուրդս յայտնէ։

Արդ աղաչեմ, տէր մարդասէր,
Զիս յայնմ աւուր մի պահանջեր․
Դար տանջանացն մի մատներ,
Եւ կայծականց անշէջ հրոյն։
Զի քեզ տացեն փառս օրհնութեան
Հօր և որդւոյ և սուրբ հոգւոյդ,
Որ միշտ օրհնեալ ես յաւիտեանս,
Փառաւորեալ յաւիտենից։

## ԱՂՕԹՔ ՆՈՐԻՆ*

Ով որ անեղդ ես և անստեղծ և արարիչ ամենայն արարածոց, զոր ոչ երկիրս ստանալ հանդուրժէ, և ոչ երկինք բաւանդակեն․ այլ 'ի վեր ես քան զերկինս, և անդր քան զծագս․ և ամենայն երևելիքս և աներևոյթքս ընդ քև եմք բովանդակեալ։ Դու տիրես ամենայնի, և քո հրամանք կառավարէ զամենայն արարածս․ դու աղքատացուցանես, և դու մեծացուցանես, հարկանես, և դու բժշկես․ դու ես օփոփիչ վտանգելոցս 'ի սատանայէ, և առողջացուցիչ հիւանդացելոց մեղաց․ դու ես ընդունիչ աղօթից և կատարիչ խնդրուածաց։ Խոնարհեցո, տէր, զունկն քո, և լուր քոյոյ ծառայիս․ տես, տէր, զտառապանս իմ, և ընկալ զիս գթութեամբ․ մի բարկութեամբ քով խրատեր զիս, և մի սրտմտութեամբդ քով յանդիմաներ․ զի դու ես գթութեանց՝ գթա և յիս 'ի մեղաւորս, որ բազում հեծեծանօք և պաղատանօք մաղթեմ և աղաչեմ զքեզ։ Զի կարեվէր եմ մեղօք, և ցաւագնեալ անօրէնութեամբ․ չարաչար ախտիւք եմ 'ի յանցանս, և պիղծ խորհրդովք յամբարշտութիւնս․ ժահահոտեալս եմ ազտեղեալ, և մեղսաթաթաւ մարմնովս զազրացեալ․ ամօթով երեսօք կամ առաջի քո, և ամօթով առաջի տեսողաց։

Այլ արդ դու տէր քաղցր և ներող, երկայնամիտ վասն մեղաւորաց կոչեցար․ որ ասացեր՝ թէ 'ի դառնալ անօրինին ոչ յիշեցից զամենայն անօրէնութիւնս նորա

* Մասն ինչ 'ի սկզբանէ աղօթիցս կայ 'ի գիրս Հարանց վարուց յանուն Ս․ Եփրեմի․ կան և այլ չորս օրինակք 'ի կարգս աղօթագրոց յանուն Ս․ Մեսրոպայ, կիսով չափ նման երկաթագիր օրինակին, թէպէտ երևելի տարբերութեամբ․ այլ անտի յառաջ ամենեքին տարաձայն։

## ԻԵ

## ՅԱՂԱԳՍ ՊԷՍՊԷՍ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ԽՐԱՏՈՒ*

Յառաջ քան զամենայն առաքինութիւնս է խոնարհութիւն, և նախ քան զամենայն ախտս է փառասիրութիւն : Գլուխ առաքինութեանցն սէր է. իսկ գլուխ ախտիցն է արդարացուցանել զինքն : Իսկ երկիւղն ա̃յ հալածէ զամենայն զմեղսն. իսկ դանդաղութիւն հալածէ զերկիւղն ա̃յ. Նոյնպէս և գերութիւնն հալածէ զառաքինութիւնս յանձնէ : Չորք են առաքինութիւնք, լռութիւն, և խոնարհութիւն, և պահել զպատուիրանս ա̃յ, և նեղութիւն : Չորք են առաքինութիւնք որ պահեն զանձն, ողորմութիւն յամենեսեան առնել, և մի բարկանալ, և երկայնմտութիւն, և զգուշանալ յինքեան 'ի մոռացմանէ մտաց : Պէտք են առաքինութիւնքս այս յարաժամ, և անսպառ անկանել առաջի ա̃յ 'ի սրտի իւրում, և ունել զինքն առ մեղաւորս, և մի դատել զոք. և յայնժամ դադարեն խորհուրդք : Չորք են այս առաքինութիւնք որ օգնեն մանկան աբեղայի, խոկումն գրոց յամենայն ժամ, և տքնութիւն և գործաձեռն, և հնազանդ և հպատակ լինել հօրն, և մի թուել զինքն յիրս ինչ ուրուք ամենեւին : Վասն չորից այս իրաց հոգիք աղծին, մի՛ շրջել 'ի քաղաքի և չդնել պահապան աչաց, և մի՛ ունել ծանօթութիւն ընդ կանայս, և մի՛ ունել սէր ընդ փառաւորս երկրի, և սիրել զմարմնական խօսս և զդատարկաբանութիւնս : Յաղագս չորից իրաց լինի պոռնկութիւն, յուտելոյ և յըմպելոյ յագ, և յագմանէ քնոյ և 'ի դատարկ կալոյ, և 'ի դատարկաբանելոյ խաղալ և ծիծաղել, և 'ի զարդարմանէ հանդերձից : Վասն չորից իրաց խաւարին միտք,

* Զայս Ճառ հանդերձ յաջորդ հատուածովն տես և 'ի Հարանց վարս երկելի տարբերութեամբ. հտ. Բ. 532. 571 :

մի՛ յուզելոյ զընկերս, և անգոսնելոյ զընկերն, և արհամարհել և նախատել ընդ ընկերին, և 'ի չարախօսելն զընկերն ։ Յաղագս չորից իրաց հոգիք խոպանանան և լինին անպտուղ, մի՛ յոչ դադարել 'ի տեղւոջ և 'ի տան, և մի՛ գործել ինչ ոչ, և մի՛ զի սիրեսցէ զզբաղմունս մարդկապէս, և մի՛ յորժամ սիրեսցէ զխուժս երկրի և զագահութիւն ։ Յաղագս չորից իրաց բարկութիւն գայ, մի՛ 'ի տալոյն, և յամելոյն զիւր կամսն, և հակառակելն և սիրելն վարդապետ լինել բազմաց, և մի՛ կարծել զինքն լինել քան զայլ մարդ իմաստուն ։ Չորք են այս առաքինութիւնք զոր դժուարաւ ստանայ մարդ, և այսոքիկ պահեն զամենայն առաքինութիւնս, ագալ յալուժամ, և հայել միշտ ևեթ յիւր մեղսն միայն և մի՛ դատել զոք, և ունել զինքն առ մեղաւորս, և ունել առաջի աչաց իւրոց զմահ իւր հանապազ ։ Արդ որ ոք կամի պահել զառաքինութիւնս զայսոսիկ, կարէ ապրել. զօրաւոր է ած պահել զմեզ յամենայն չարէ և 'ի փորձութենէ և 'ի հանդերձեալ ժամանակին՝ որ գալոցն են 'ի վերայ ամենայն աշխարհաց. զի գտցուք ողորմութիւն 'ի Քրիստոսէ 'ի ձեռն սուրբ հոգւոյն ։

## ՅԱՂԱԳՍ ԳԷՍԳԷՍ ԱՒՏԻՑ

Արար ած զմարդն, և եդ զնա 'ի դրախտին փափկութեան, զամենայն զգայութիւնս ողջ ունելով 'ի բնութեան իւրում ։ Արդ իբրև լուաւ այնմ՝ որ խաբեայն զնա, յայնժամ էառ զախտս ամենայն, և իսկոյն ընկեցեալ եղև արտաքս 'ի մեծ և 'ի չքնաղ փառաց իւրոց. զի ծանիցէ մարդ՝ թէ զոր ախտս որ մերժեն զնա յայ. և զի պղծէ զպատկերն ած, որպէս զի օգնեսցէ նմա, և այս կարասցէ կարել յինքենէ 'ի բաց զախտս ամենայն ։ Այս ամենայն վէրք են՝ որ կրեն յանձին մարդոյն, և քակեն որոշեն զնա յայ ։ Երանի որք սրբեն զինքեանս յամենայն ախտից և յամ պղծութեանց հոգւոյ և մարմնոյ. զի է ոչխար բանաւոր ընդունելի պատարագ այ, և լսէ զձայնն որ ասէ. "Բարի ծառայ և հաւատարիմ. 'ի սակաւուդ եղեր հաւատարիմ, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ, եկ մուտ յուրախութիւն

տեսանն քում,,: Իսկ որք կամին կատարել զկամս իւ-
րեանց որ ըստ մարմնոյ, և ոչ կամին բժշկել զինքեանս
'ի բժշկութենէ սուրբ առաքինութեանց, գտանին մերկ
'ի սուրբ պատուիրանէն 'ի ժամ հարկաւորութեանն.
անկանին 'ի խաւարն արտաքին՝ ուր կայ սատանայ և
կապեալքն: Եւ պատմուճանք պղծութեանցն են այսո-
քիկ, պոռնկութիւն, արծաթսիրութիւն, չարակնու-
թիւն, բանսարկութիւն, նախանձ, փառասիրութիւն,
հպարտութիւն. այսոքիկ և որք սոցին նման են: Ո ի՞նչ
է պոռնկութիւն. պոռնկութիւն՝ ցանկութիւն, որկորս-
տութիւն, յագել քնոյ, դատարկութի, դատարկաբա-
նութիւն, պաճուճանք մարմնոյ, և զեղումն և ընդ փայլ
ծաղր, անամօթութիւն, թուլութիւն, դանդաղումն:
Ո ի՞նչ է արծաթսիրութիւն. արծաթսիրութիւն, ան-
հաւատութիւն, անյուսութիւն, անգթութիւն, անո-
ղորմութի, ագահութիւն, արհամարհութիւն, անիրաւի-
տութիւն, անձնահաճութիւն, և ոչ հայել 'ի պատուի-
րանսն այ: Ո ի՞նչ է չարակնութիւն. չարակնութիւն է
չարախօսութիւն, նախանձ, մարդահաճութի, անձնա-
սիրութիւն, անգիտութիւն, ստութիւն, և սուտ վկայ-
ութիւն: Ո ի՞նչ է բարկութիւն. բարկութիւն է հարըս-
տահարել զիւր կամսն, հակառակութիւն, մինձութիւն,
նենգութիւն, սուտ գիտութիւն, կարճմտութիւն, նեղ-
կութիւն, ձանձրութի, ոչ բառնալ զթշնամանս այլոց,
տալ և առնուլ: Ո ի՞նչ է նախանձ. նախանձ՝ ատելու-
թիւն, ոչ բառնալով զփառս ընկերին, և արկանել
զայթագղութիւն ընկերին: Ո ի՞նչ փառասիրութիւն.
փառասիրութիւն է անզգամութիւն, սիրել զաշխարհս
և որ ինչ յաշխարհի է, և լինել անուանի 'ի մէջ մարդ-
կան, և կատարել զկամս յանդգնութեանն: Ո ի՞նչ
է հպարտութիւն. հպարտութիւն է խստասրտութիւն,
անհնազանդ լինել ամենեցուն, և քաջալերել յիւր զօ-
րութիւնն, և համարելով զինքն իմաստուն, և առնել
յար և եթ զիւր կամսն, և արհամարհել զընկերն, և
կարծել զինքեան իմաստուն գոլ, և ունելով զինքն իբրև
ոչ իմիք կարօտ գոլ: Այս ամենայն գործին յանձին
մարդոյն, մինչև որոշեն զնա յայ: Այս է զոր եբարձն
Ադամ՝ յորժամ եկեր 'ի պտղոյ ծառոյն, և անկաւ
ընդ ոտիւք մահուն:

## ԻԶ

## ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ՀՄԱՅԻՑ ԴԻՒԹԱԿԱՆԱՑ ԵՒ ԱՆՕՐԷՆ ՑՈՒԽՈՒԹՈՂԱՑ

Ո՛վ տայր առնէր ոք զգլուխ իմ շտեմարանս ջրոց բազմաց , և զաչս իմ յորդ աղբիւրս արտասուաց , և լայի զառաւօտս 'ի տուէ և գիշերի զհանապազ մեղս մեր . զի կորեաւ երկիւղած յերկրէ , և ոչ գոյ ուղիղ առաջի մարդկան . և լցաւ աշխարհ մեր հմայիւք իբրև զառաջինն . և խոնարհեցաք մեղօք 'ի հնազանդութիւն սատանայի մերոյին ևս մեզ . զի լեզուաւ խոստովանիմք ճանաչել զԱծ , և գործովք ուրանամք 'ի նմանէ . Ասաց Ած՝ եթէ “ Սիրեսցես զտէր Ած քո յամենայն սրտէ և յանձնէ և 'ի զօրութենէ քումմէ ” : Յանձնէ է՝ այս ինքն եթէ զնա միայն պաշտեսցես , և կոչեսցես անձին քում տէր և արարիչ . 'ի զօրութենէ՝ այս ինքն եթէ զզօրութիւն անձին քում նախ հանգիցես յաղօթս և 'ի վաստակս հոգևորս . յամենայն 'ի սրտէն՝ այս ինքն թէ մի 'ի տունս հեթանոսաց և 'ի ժողովս մարտիրոսաց , մի 'ի մեհեանս և յեկեղեցիս , մի 'ի բախտս և 'ի շնորհս , մի 'ի խաչն և 'ի ճակատագիր , մի առ դիւթս և առ քահանայս , մի առ աղօթս և առ պահարանս . մի լեզուաւ խոստովանել , և 'ի սրտէ ոչ հաւատալ . և մի սրտիւ հաւատալ , և լեզուիւ ուրանալ . մի բանիւք պատուել զԱծ , և արդեամբք բարկացուցանել . մի հաւատովք մեծարել , և գործովք տրտմեցուցանել . այլ յամենայն սրտէ և յանձնէ և 'ի զօրութենէ և 'ի մտաց սրտէ սիրել զԱծ , և քրիստոնեայ անուանակից Քրիստոսի :

Իսկ եթէ լեզուաւ կոչես զԱծ արարիչ , տուիչ և փրկիչ և կեցուցիչ , իշխան մահու և կենաց , և սրտիւդ և անձամբդ առ դիւթս և առ թովիչս և առ հարցուկս և առ ուռութս և առ խարիս և առ հմայս գերեսցիս , ոչ ևս պարտ է կոչել զանձն քրիստոնեայ՝ զի հեռացեալ ես

թիւնս, յաստեղագիտութիւնս, 'ի դիւահարցութիւնս, յօրահմայս, 'ի լուսնախտիրս, և 'ի չեղջախտիրս, յո-պտնահմայս, 'ի գեղահմայս, 'ի մնիկանս, յուռութս, 'ի բախտս, 'ի ճակատագիրս, և 'ի գիր պահարանի, և յամենայն 'ի շարժմանս բժժանաց, հմայից, դիւթաց, յորս կոչեն զդևսն յաղ, յերկաթ, 'ի ջուր, 'ի նարօտս, յիւղն, 'ի գարի, 'ի յուլունս, 'ի մոմ, և 'ի հեր գլխոյ և յամենայն պղծութիւնս՝ որով պղծեննն և կորուսանեն զոգիս հնազանդելոցն: Այլ արդ այս ամենայն սգոյ և արտասուաց և մեծի բարկութեան չիցէ՞ արժանի, զի յետ զորդին իւր առաքելոյ յայնպիսի իրս մոռաբերել իշխեցեմք: Այլ արդ որ այսմ հնազանդիցի, պա՞րտ իցէ արդեօք զանձն քրիստոնեայ կոչել՝ որ հեռացեալն է 'ի Քրիստոսէ, և հնազանդեալ կամաց դիւաց, և 'ի ծառայութիւն կայ սատանայի, և զհրամանս նորա կատարէ հանապազ հմայիւք և յուռթիւք և պահարանօք գրոյ՝ զորս գրեն մանկունք անիծից, և հաւանրին կալ 'ի սպասու սրբոյ սեղանոյն նմ:

Ով անմիտք և անհանճարք, ո՞չ լսես՝ զի մեղաւորին ասէ ած. «Դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւն իմ, կամ առնուս զուխտ իմ 'ի բերանս քո»: և դարձեալ ասէ. «Զմեղս թէ տեսանէի 'ի սրտի իմում, մի՛թէ լսէ՞ր ինձ տէր»: և դարձեալ ասէ. «Ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ որ գործէք զանօրէնութիւն»: Արդ 'ի սնոտի աղօթս քո հրաժարէ զքեզ մարգարէն, և ոչ իմանաս: Յորժամ ասես, եթէ 'ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ որ գործէք զանօրէնութիւն, ո՞չ ապաքէն անձինդ ասես հեռանալ 'ի բաց, պիղծդ և անօրէնդ. յորժամ դու իսկ ասես 'ի խնդրուածս քո, մեղաւորին ասէ ած՝ դու ընդէ՞ր բնաւ պատմես զարդարութիւն իմ, ո՞չ ապաքէն քեզ ասես. ընդէ՞ր իշխես բանալ զամենապիղծ բերանդ քո, և պատմել զարդարութիւնն նմ, ո՞չ ապաքէն հակառակ քեզ բարբառիս, և ոչ իմանաս: Այլ յորժամ լսես 'ի քումմէ բերանոյդ իսկ՝ զմեղս թէ տեսանէի 'ի սրտի իմում, մի՛թէ լսէ՞ր ինձ տէր, արդ ահա դու իսկ գիտես՝ թէ ունիս մեղս 'ի սրտի, տէրն ոչ լսէ քեզ. զի դու ասես զայդ բերանովդ քով հանապազ: Այլ արդ յորժամ զբարբառ բերանոյդ ոչ լսես, զիա՞րդ հնարս սատանայի գիտել մար-

թացես. և կարծէիր տեսանել զքեզ՝ և ոչ իմանաս. որ զգիրս ընթեռնուս, և զգրեալսն ոչ իմանաս։

Զինչ հրամայեն մեզ պատուիրանք այ. ո՞չ ապաքէն ամենայն գործոց մերոց զխաչն հրամայէ պահապան և յօրինիչ, հիւանդաց աղօթս և օծումն իւղոյ, և ըմպելեացն 'ի սատանայէ պահս և աղօթս. և որ զայս խոտիցէ, գրովք և յուռթովք վարիցէ, և կանայս ձեռնածուս 'ի տունս մուծանիցէ, արտաքոյ է պատուիրանաց և քրիստոնէութեան, և ընդ նզովիւք առաքելոցն։ Զի 'ի նոցանէ այդ ոչ քարոզեցաւ. այլ և նզովս եւս դնէ 'ի վերայ և ասէ. "Եթէ ոք աւելի քան զայս աւետարանիցէ, նզովեալ լիցի". և դարձեալ ասէ. "Մի ինչ աւելի քան զգրեալսն իմանալ". և դարձեալ ասէ. "Նզովեալ ամենայն մարդ՝ որ ոչ կացցէ 'ի գրեալսն 'ի գիրս". և Քրիստոս ասէ. "Եթէ ոք լուծցէ մի ինչ 'ի պատուիրանաց, փոքր կոչեսցի"։ Արդ ահա զշնորհսն այ և զզօրութիւն սուրբ խաչին լուծանես, և զպահս և զաղօթս զոր պատուիրանք հրամայեն, և մուծանես ընդ գիր պահապան, և զուռութս դիւթացն՝ որ ոչ է 'ի պատուիրանաց այ, այլ զգաղտնի նետս սատանայի 'ի ձեռն դիւթացն, որ իբրև զմէգ տարածեալ ունի զամենայն աշխարհս, և ոչ իմանան։

Այլ և ասես ես. զոր դիւթքն գործեն և ասեն, այսպէս լինի։ Այլ եթէ երբէք պատահէ՝ մի խաբիր, ով մարդ. ոչ եթէ 'ի դիւթէն եղև, այլ և թէ չէր թայիր առ դիւթն՝ քեզ 'ի ժամուն այն այնպէս պատահէր. բայց դու զայ ողորմութիւնն դիւթին զօրութեն կարծեցուցանես։ Բայց 'ի ձեռն դիւթաց բազում անգամ չլինի, և երբեմն լինի. ոչ եթէ զօրութեամբ դիւթին լինի, այլ իբրև կուրաց ընդ խարխափս ընդ ատս ինչ անկեալ գտանիցին. ահա ընդ խարխափս գտանես, և ոչ եթէ աչօք ինչ յառաջագոյն տեսանիցես. նոյնպէս և զդիւթացն տեսանիցես։ Բայց մարդիկ յիմար 'ի չպատահելն չհային, բայց եթէ զմինն պատահել տեսանիցեն՝ զայն առեալ վերացուցանեն, և 'ի լսելիս ամենեցուն արկանեն։ Այլ դիւթի և ուռթոյ զօրութիւն ոչ լինի. և եթէ եղեալ տեսանես 'ի յանկարծ, որպէս ասացին, ոչ եթէ յուռթէն և 'ի դիւթէն եղև, բայց զի դու այնպէս հաւատացեր՝ թոյլ ետ ած այնպէս

լինել ըստ քում այնպէս հաւատալոյն, զի մեծապէս զատապարտեցիս, զի փոխանակ այ առ դիւթսն ըն-թացար։ Ոչ ի յորժամ թողուս զպատուիրանն, և 'ի դիւթս և 'ի յուռութս ապաւինիս, մինչ կամիք ընդ հնազանդութեամբ սատանայի, և տէր եղև կամաց քոց. որպէս որդի թագաւորի յորժամ կամիք թողու զթագաւորն, և երթայ 'ի լերինս առ աւազակապետ մի. և տայ զինքն 'ի ծառայութիւն նմա, այսպէս տէր և իշ-խան է աւազակապետն կենաց և մահու նորա։

Արդ մեծ մասն աշխարհիս ընդ յուռութիւք և ընդ հր-մայիւք եմուտ 'ի հնազանդութիւն սատանայի, և չէ ոք որ խնամոյ զչարաչար ամբարշտութիւն մեր. որ թողեալ զԱծ արարիչ, և առ դիւթս և առ փառութս և առ թո-վիչս և առ պահարանս և առ հմայս ընթանամ, և հա-նապազ բարկացուցանեմ զարարիչն։ Նա և արդ առ այս ա-մենայն զինչ պարտ էր առնել, բայց միայն սգալ և լալ. զի փոքր մասն աշխարհիս հազիւ թէ ապրեցի. զի ա-ռեալ զպատիւ որ Այն վայել էր՝ մահկանացու մարդոց մատուցեալ էաք զգիտութիւն. զայն գիտութիւնն՝ որ ա-ռաջնոցն երևէր, որպէս Սամուէլ վասն իշոյն կորուսելոյ յայտնեաց. վասն զի տղայք էին, և չէր կատարելութիւն գիտութեանն առ նոսա։ Բայց առ մեզ կատարելութիւն են Ճշմարիտ ուսոյց գիտութիւնք. զի նինքն Քրիստոս եկն աւետարանեաց, զկատարեալ օրինացն ելուծ, զշնորհս եմուծ, զմահ խափանեաց, զյարութիւն խոստացաւ, և զարքայութիւն և զկեանսն յաւիտենից։ Այս է կա-տարեալ գիտութիւն, և ոչ գիւտ իշոյ կորուսելոյ. զանս գիտութիւնն եբարձ, և զայս եմուծ, զոր ոչ կամիք վասն մեր եթէ զմարգարէութիւն ինչ խնդրեցուք. այլ մեք զհո-գևորսն հոգացուք, և զմարգարէութիւն 'ի նոսա ընկեցուք. վասն այսր ծածկեաց 'ի մէնջ զայս գիտութիւն։

Արդ մի հաւատայք՝ եթէ ոք զօշաքաղութեամբ յոյց և 'ի սրբոց զօրութենէ գիտել ինչ կարծեցուցանիցէ զքեզ. արգելեալ է 'ի մէնջ զայն, զի չէր ինչ մեծ այն. քան զշնորհսն զոր ետ մեզ։ Արդ եթէ ոք հաւատայք առ Ած անկանիս, աղաչանօք ապաւինիս 'ի նշխարս մար-տիրոսաց, ընդունիս բժշկութիւն ցաւոց, զհալածումն ախտի, և զելումն դիւաց, և զթողութիւն մեղաց։ Այլ և ծածկեալ մարգարէութիւնն 'ի յայտնու ծա-

մանաւանդ մարդոյ ոչ է․ զի ոչ նշխարք մարտիրոսաց ըն-մէջս ուրուք յանդիմանեն, և ակամայ ապաշխարու-թիւն ՚ի վերայ ածեն առանց կամաց առնելոյն․ զի ած ոչ երբէք բռնադատէ զմարդ, այլ ՚ի կամսն ազատական առնէ, զի վարձս ընկալցի գործելոյն։ Նա ոչ եկեղեցիս և մատուռնս շինեն, զի ոչ երբէք ած ստոր է այսպիսի ինչ գործել, զի մի բարիքս մեր ՚ի հարկէ լինիցին․ այլ ՚ի կամսն ազատական արարին, զի վարձս տացէ անձ-լեացն։ Բայց այսպիսի չփմունք ՚ի դիւաց կեղծեաց լի-նին՝ զի անվարձ աշխատ և ծառայ արասցեն զմարդիկ։

Եւ զյառաջիկայն ինչ գիտութիւն դևք ոչ երբէք գիտեն, զի միայն միայն է որոշագէտ՝ արարիչն ամենայ-նի․ իսկ դևքն և դիւթքն արարածք են, և ոչ արարիչ․ և կեանս և մահ և առողջութիւն և հիւանդութիւն և բժշկութիւն և մեծութիւն և աղքատութիւն իւրոց ա-րարածոց տալ՝ արարչին միայն վայել է, և ոչ դիւաց և ոչ դիւթաց․ որ և անձանց նոցա ած է իշխան և արա-րիչ։ Արդ զիարդ իշխեն այլոց արարածոց հրամայել՝ որոց չեն արարիչ․ զի արարածք արարչին միայն կան ՚ի հնազանդութիւն, որ եղծանել և նորոգել կարէ, և ոչ դիւաց և դիւթաց, որ և ինքեանց չունին իշխա-նութիւն։

Արդ գիտացեալ եթէ ած միայն է արարիչ, ընդէ՞ր ընդ կապանօք խոտոց և հմայից արկանել զանձն, և յօրահմայս աճապարել․ և համարիս ՚ի նմանէն ինչ եղծանել և կամ նորոգել խոտոյ, որթոյ, և նիւթոց կալոյ, հնձանի, և աւերմանց, և ամենայն գործոյ որ անց-ցանէ ընդ ձեռս ձեր։ Ընդէ՞ր յօրահմայս և ՚ի խոտիս անկանիս, աղէ տուր ինձ պատասխանի։ Ու միաստակար է շաբաթն և չորեքշաբաթն, զի սոքա անուանք Քրիս-տոսի միայն են քրիստոնէայք․ և անուն ինչ նորոգել և եղծանել ոչ կարէ առանց լուսոյ և տօթոյ․ և լոյսն և տօթն յարեգակնէ է․ և արեգակնն ոչ եթէ յաւուրս չորեքշաբաթին և ՚ի շաբաթուն այլ ինչ ծառայումն է, և ՚ի յայլսն այլ․ այլ այս մի ծառայումն է, և նոյն հանա-պազ։ Արդ եթէ մի ծառայումն է արեգական՝ չորեքշա-բաթին և ուրբաթին, շաբաթուն և կիւրակէին, ըն-դէ՞ր ՚ի մի ծառայմանէն սոքա միաստեն և նոքա ոչ, տուր ինձ պատասխանի, ով յիմարդ խոտորաղանդ և ծա-

ուայք հմայից և հեռացեալ 'ի շնորհացն ա̃յ . ո՞չ ապաքէն ամենայն աւուրքն տեառն են, և 'ի յաւուրս ամենայն զոր բարի գործեմք՝ մերով յօժարութեամբ և կամաւն ա̃յ, և զոր չարն գործեմք՝ մերով չարութեամբ և ներելով ա̃յ . և բարւոյն ա̃ծ է կատարիչ, և չարին մեք եմք իշխան ։ Որք անուն շաբաթու և չորեքշաբաթու զիա՞րդ կարէ նորոգել ինչ կամ եղծանել, քանզի և մարթին իսկ ոչ . զի անուն՝ անձն և միտս ոչ ունի, և որ ինչ անձն և միտս ոչ ունի՝ զիա՞րդ մարթի առնել արարչութիւն ։ Բայց միայն սատանայ ապշեցոյց զքեզ իմանալ զայս . զի զա̃յ արարչութեանն պատիւ առեալ, և անշունչ անուանն շաբաթին և չորեքշաբաթի նուիրես, և ընդ կռապաշտսն դատապարտիս ։

Որք թողեալ զյիմարութիւնդ քո որ 'ի ձեռն խրարանաց աւուրդ է, զի ոչ ինչ կարես տալ պատասխանի, բայց միայն անօրէն մոլորութիւնդ քո քարշէ զքեզ գործել զայդ . բայց ասէ ցոյց, ընդէ՞ր ամբարշտես և 'ի լուսինդ, և առնես եղծիչ և նորոգիչ զլուսինդ . եթէ յարեգակն ամբարշտէիր, թերևս տայիր ինձ պատասխանի՝ թէ յարեգակն տօթութիւն է, և կարող է հաստացանել և լիացուցանել, ցամաքեցուցանել և մեծացուցանել ըստ հրամանի արարչին . զի հիւթք չորք են որ դարմանեն զարարածս ա̃յ՝ հրամանաւն ա̃յ, հուր և ջուր և հող և օդ . և 'ի դոցանէ թէ որ պակաս գտանի 'ի խառնուածսն, երկիր պտուղ ոչ բերէ . և յայսմ նիւթոյ ալուսնոյ ոչ գտանի ։ Ընդէ՞ր ունիս զլուսինդ պատճառ եղծանելոյ և նորոգելոյ . հողն յերկրէ է, հուրն յարեգակնէ, ջուրն յանձրևաց, օդն մրրկածին . այս են որ դարմանեն զարարածս հրամանաւն ա̃յ ։ Լուսնոյ զինչ իշխանութիւն է եղծանել կամ նորոգել . զի լուսնոյ ոչ տօթ է և ոչ օդ, ոչ հող է և ոչ ջուր . բայց միայն մեզ 'ի լուսաւորութիւն գիշերոյ ստեղծաւ . և պատի Թաղէ՝ բերելով զօրինակ կենարարին, և ինքն զինքն ոչ գիտէ՝ եթէ է ինչ և կամ չէ, զի շունչ և կենդանութիւն ոչ գոյ 'ի նմա . բայց շարժի և գնայ իբրև զհուր և զջուր, և կայ մեզ 'ի հարկի և 'ի ծառայութիւն հրամանաւ արարչին . և խոտոյ և սերմանց նա ոչ իշխէ, զի ամենեւին անշունչ է ։ Որք ո՞րչափ տանջանաց և գեհենի արժանի համարեցիս զայն, որ զանշունչսն շնչաւոր կարծե-

ցուցանէ, և զպատիւ և զիշխանութիւն արարչին տանուցու և տացէ սատանայի և աւուրց հմայից, և պաշտէ զարարածս և ոչ զարարիչն։ Յորժամ զիշխանութիւն եղծանելոյ դնիցես աւուրց նշանս, և տէր և արարիչ զնոսա կարծեցուցեր, և եդեր գործովքն քովք պաշտօնեայ և երկրպագու լուսնոյն և աւուրց հմայից, և անլուծանելի ածեր 'ի վերայ քո զանէծսն որ ասէ՝ եթէ “Անիծեալ լիցի որ պաշտօն տանիցի և երկիր պագանիցէ արեգական և լուսնի և զօրութեանց երկնից”։ Այլ ընդէ՞ր վիրաւորիս, ով թշուառական, աներևոյթ նետիւ սատանայի, արկանելով 'ի վերայ գործոց քոց հմայս աւուրց և խտիրս. յորմէ ոչ ինչ օգտիս, բայց միայն տուգանս ոգւոյ և առիթ գեհենին։

Ապա եթէ ասես, եթէ ընդէ՞ր ոչ հաւատացից հմայիցն՝ յորժամ տեսանեմք զոմն ինչ եղեալ 'ի յաւուրս խտրոցն, մի խաբիր, ով մարդ, զի չիք ինչ յարարածս այ աւանց ախտից և ապականութեանց և փախելոյ. զի անեղծ և անփոփոխելի արարիչն միայն է։ Բայց արարածս որ ընդ ձեռամբ մեր անցանէ՝ ախտ և ապականութիւն և եղծումն և յարդարումն։ Այլ եղծումն և յարդարումն 'ի խառնակութենէ անձրևաց լինին, և 'ի տօթոյ արեգական, և ոչ կառուելոյ օդոյ. այլ ոչ եթէ 'ի լուսնոյ, զի ոչ եթէ 'ի լուսնի անձրև է. և ոչ եթէ 'ի տօթութիւն, և ոչ օդ՝ եթէ վնասէր խտրոյ և սերմանց և ամենայն գործոյ՝ զոր խտրես գործել 'ի յաւուրս նորա. բայց միայն լուսատու է արարածոց։ Այլ քեզ 'ի լուսնոյն վնաս երբէք ոչ լինի, բայց միայն 'ի տօթոյ արեգական, և 'ի խոնաւութենէ լուսնի։ Զի որպէս 'ի չոր և 'ի ցամաք հոտ ինչ վնասակար ոչ հարկանի. և յորժամ զգիջութի հովոյն արեգակն ջեռուցանէ, հոտ և որդունս ծնանի. զի զոր օրինակ և 'ի հանդերձս մարմնոյ յորժամ գիջութիւն և ջերմութիւն և փոշի ոչ է՝ ցեցունք ոչ ծնանին, և յորժամ ջերմութիւն մարմնոյն և թացութիւն քրրտան և փոշին ընդ միմեանս մնասցեն՝ ցեցունք հանդերձից յղեալ ծնանին, նոյնպէս և փոշի 'ի խոտոյ և 'ի գիջութենէ և տօթոյ աւուրն լինի և 'ի կշռելոյ առ միմեանս հիւթիցն։ Զի շաբաթն և չորեքշաբաթն հիւթս ինչ ոչ ունին, և արարածոց այ ոչ իշխեն, ոչ նորոգել և ոչ եղծանել։

ոչ ընկալաւ։ Զի Պաւղոս ասէ վասն Նեռինն և այլոց անհաւատութեանց. «Փոխանակ, ասէ, զի ճշմարտութեանն ոչ հաւատացին, այլ հաճեցան ընդ անիրաւութեանն, վասն այնորիկ առաքեսցէ նոցա Աստուած ազդեցութիւն մոլորութեան՝ հաւատալ նոցա մոլորութեանն, զի դատապարտեսցին որք ոչ հաւատացին ճշմարտութեանն, այլ հաճեցան ընդ անիրաւութիւնն»։

Արդ ո՞չ զարհուրիս, ով մարդ, որոյ թողեալ զԱստուած արարիչդ, և սովորեալ մտօք արարածոց պաշտօնս մատուցանես հմայիւքդ։ Ոչ լսես գրոյն որ ասէ՝ եթէ «Հմայք աշխատութիւն և ցաւս ածեն ՚ի վերայ»։ և դարձեալ մարգարէն ասէ՝ թէ «Լցաւ իբրև զառաջինն աշխարհս մեր հմայիւք նման այլազգեաց»։ և Առաքեալ ասէ. «Զաւուրս խորէք և զամիսս և զժամանակս, երկնչիմ ՚ի ձէնջ»։ Արդ պարտ է և մեզ խորշել ՚ի պատուիրանաց, և հաւանել ճշմարտութեանն. և պիղծ համարել զնոսա՝ որք խորանօք և դիւթօքն վարին, և սուտ երազօք պատրեալ քանդագուշին։ Այլ ոչ խնանամ՝ եթէ յորժամ թողեալ ուրուք զճշմարիտ ճանապարհն աստուածպաշտութեան, և այնպիսեացն լսել հաւանի, բազում անգամ զստութիւնն որպէս ճշմարտութիւն ցուցանէ ՚ի միտս նորա, զի չարաչար դատապարտեսցի. փոխանակ զի ճշմարտութեանն ոչ հաւատաց, այլ հաճեցաւ ընդ անիրաւութեանն, որպէս և գրեալ է ՚յերրորդ Թագաւորութեանն. յորժամ մեղաւ Աքաաբ՝ եսես Միքիա մարգարէ զՏէր, և զօրութիւնք երկնից կային յաջմէ և յահեկէ. և ասէ Տէր. ո՞վ երթիցէ և պատրեսցէ զԱքաաբ, և երթիցէ ՚ի Ռամաթ Գաղաադու և մեռցի. և սկսան ասել ոմն այսպէս, և ոմն այնպէս։ Եւ ել ոգի և եկաց առաջի Տեառն և ասէ. Ես երթայց և պատրեցից զնա, և մեռցի։ Եւ ասէ Տէր. Իւ։ Եւ ասէ. Եղէց ոգի սուտ ՚ի մարգարէս նորա, և ելցէ ՚ի Ռամաթ Գաղաադու՝ և մեռցի։ Արդ Տէր ոչ է այն պատճառացն[1] պարտապան. բայց թոյլ ետ պատրանացն լինել, փոխանակ պատրանացն լինել հաւատալոյ նոցա սուտ մարգարէիցն։

Արդ որ հաւատալ սովորի պատրանաց դիւացն, թոյլ

1 Օրինակին չիք պատճառաց։

տայ մեծ պատուել զնա՝ զի դատապարտեցի, փոխանակ հաւատալոյ նոցա ստութեանն։ Արդ փախիցուք 'ի պատրանաց սուտ մարդոց, և 'ի տեսլենէ երազոց, և 'ի դիւացոյց գիտից սուտ նշխարաց, և 'ի հրամանաց խաբող մոլորեալ երազախօս սպասաւորաց նորա, որք աշխատեն զանձինս բազմաց սուտ մարգարէութեամբն իւրեանց, և զպատիւն մեր առեալ՝ զոր պարտ էր 'ի տանն մեր առաջի սրբոց խաչին և սուրբ վկայիցն մատուցանել, զգոլոշի անուշահոտ խնկոցն և զպայծառութիւն լուսոյն առեալ առաջի ստութեանն մատուցանեն։ Ով յիմար ընթերցող յամենայն մոլորութեանց, չեղե՞ն քեզ բաւական նշխարք մարտիրոսաց՝ որ եկեալ և դադարեալ են առ քեզ, և հանապազ խնդրեն վասն քո. և կամ նշան սրբոյ խաչին՝ որ առ քեզ և 'ի տան քում հանապազ։ Ընդէ՞ր ոչ խնդրես 'ի նոցանէ զխնդիրս քո. զի՞ ընթանաս 'ի խնդիր պատիր բանից. մի՞ եթէ մեծ վասն զի ոչ չոգար առ նոսա՝ բարկանայ քեզ. ո՞չ առաքէն ինքնին ասէ. "Եթէ ոք ասիցէ, ասէ, ձեզ աստ է Քրիստոս կամ անդ, մի՛ հաւատայցէք. զի բազում սուտ Քրիստոսք և սուտ մարգարէք ելցեն 'ի յաշխարհ. և մոլորեցուցանեն, ասէ, եթէ հնար ինչ իցէ և զընտրեալսն"։ Նա եղև իսկ և տեսաք յետ մարգարէիցն սուտ մարգարէք, յետ առաքելոցն սուտ առաքեալք, և յետ մարտիրոսացն ահա այժմ. իսկ տեսանեմք սուտ մարտիրոսս խաբել զմարդիկ։ Այլ վասն տգիտաց որք ոչ գիտեն զհոգի զօրութեանն և ճշմարտութեան, առուք զհրամանս զայս 'ի տեառնէ որ ասէ. "Եթէ ասեն ձեզ՝ եթէ ահա յանապատի է, մի՛ ելանիցէք. և եթէ ասիցեն՝ եթէ յշտեմարանս է, մի՛ ելանիցէք"։

Արդ պարտ է պահել զպատուէրն Քրիստոսի, և մի՛ խաբել մեզ 'ի պատրանաց դիւաց, Թէպէտ և սուտ ինչ տանջանօք չարչարիցեն զմեզ. զի լաւ է օրինօք Քրիստոսի չարչարել, քան հրամանաց դիւաց հնազանդել, Թէպէտ և նշանս և սքանչելիս առնիցեն. զի սովոր է սատանայ սուտ նշանօք որպէս ճշմարիտ ցասմամբք պատրել զմարդիկ՝ որք ոչ ինչ տեղեակ են աներևոյթ նետից նորա, զոր և յառաջն եցոյց առ Երեմիա մարգարէին, առ Մովսէսիւ Յաննէս, առ Պետրոսիւ Սիմոն, և այլք բազումք՝ որք զարմանեկութի սատանայի հար-

կանէին, և սուտ նշանս ցուցանէին, և իշխանք և ժողովուրդք հաւատային՝ մինչև զսուրբ առաքեալսն հալածել, և զճշմարիտ քարոզութիւնն Քրիստոսի մոլորութիւն համարել, և բազում նեղութիւն հաւատացելոյն հասուցանել: Արդ սուտ մարգարէիցն և սուտ առաքելոցն և սուտ մարտիրոսացն վասն սուտ նշանի մի հաւատար, զի սովոր է սատանայ զայդ առնել. որ 'ի յայնժամ զմոլեգնեալսն և զպաշտօնեայսն զհոգելիցն և զամենիմաստսն աշխարհի, մինչև ևս առաւել զյիմարս և զտխմարս:

Արդ այս ամենայն աներևոյթ հնարս սատանայի զինչ ունիցիմք առնել. այլ զգուշանալ պատուիրանացն այ, և սիրել զնա յամենայն սրտէ և յանձնէ և 'ի զօրութենէ. և անդադար աղօթել 'ի տուէ և 'ի գիշերի: Զի աղօթք զհնոցն շիջուցին, զառիւծուն սանձեցին, զգազանական ձուկնն դադարեցուցին, զծովն հերձին և զժողովուրդն ապրեցուցին: Եւ պահօք ամրացուցանել զքեզ, զի պահք զէն են առաքինութեան. 'ի ձեռն պահոցն շքեղացան դէմքն Մովսէսի. 'ի ձեռն պահոցն Նինուէ ապրեցաւ, մարգարէն յերկինս վերացաւ: Եւ մի վասն քո դանդաղ և յիմար մտացդ փոքր համարիր ըզմեծդ անօրէնութիւնս: Յիշեա վասն զի փոքր կարծեցուցանելոյ Ադամայ զպատուիրանն այ՝ ել 'ի դրախտէն. վասն փոքր կարծելոյ Քամայ զամօթ հօրն յայտնեալ՝ անկաւ ընդ անիծիւք և ընդ ծառայութեամբ. վասն փոքր կարծելոյն Եսաւայ զանդրանկութիւնն ընկենուլ՝ տեղի ապաշխարութեան ոչ եգիտ. վասն փոքր կարծելոյ Կայենի զանձն անգէտ համարել սպանմամբ Աբէլի՝ երերումն և սասանումն ընկալաւ. վասն փոքր կարծելոյն Կորխայ և Դաթանայ և Աբիրոնի 'ի պատիւ քահանայութեան մերձենալ՝ կենդանւոյն ընկլան 'ի դժոխս. վասն փոքր համարելոյ զպոռնկութիւնն Զամբրի՝ քսան և երեք հազար արանցն սատակեցան. վասն փոքր համարելոյ երդմանն Սեդեկիայ՝ աւարումն Երուսաղէմի. վասն փոքր համարելոյ Սաւուղայ ստել բանին այ և խնայանանել զԱգագ՝ պատառումն թագաւորութեանն. վասն փոքր համարելոյն Դաւթի ընդ թուով առնել զԻսրայէլ՝ սպանումն եօթանասուն հազարացն. վասն փոքր կարծելոյ Սափիրայ առնլոյն և Անանիայ՝ զգանն

մահ ընկալան. և վասն փոքր կարծեցեալ բաղձանաց զպատուիրանն ա̃յ՝ սոսա տանջեցան, և անդ տանջանաց ակն ունին ։ Այլ արդ պարտ է պահել զպատուիրանս զգուշաւ. ոչ յշտեմարանս մտանել, և ոչ յանապատս եղանել, և ոչ երկիր պագանել երկիւղիւ օտարին. այլ պահել ըզպատուիրանս նորա, ոչ յաւելուլ և ոչ հատանել ։

Չիցե՞ն մեզ բաւական իւրաքանչիւր նշխարք մեր, ընդէ՞ր եղանեմք և խափեմք 'ի դիւաց. չիցե՞ն մեզ բաւական հոգեկիր մարգարէքն, ընդէ՞ր լսեմք երազոց. չիցե՞ն մեզ բաւական քահանայք ա̃յ, ընդէ՞ր երթայեմք առ հարցուկս մոլորեալս. չիցե՞ն մեզ բաւական օրէնքն բնագիրք՝ յոր կան լրով կամքն ա̃յ, ընդէ՞ր ունիցիմք զհրամանս նորատուրս և զթուղթս պատիրս՝ որ թերի և պակաս կարծեցուցանեն զպատգամս հոգելից մարգարէիցն, զքարոզութիւն սուրբ առաքելոցն և ըզվարդապետութիւնս սուրբ աւետարանին. և զոր 'ի պատուիրանացն ոչ է հարկաւորել հարկաւորէ, և զնոյն յերկնից ցուցանէ, զգրեալս մատամբն ա̃յ ։ Այս ոչ լըւեմք Պաւղոսի որ ասէ. "Մ՛ի խռովել զձեզ, մի բանիւ և մի թղթով, որպէս թէ 'ի մէնջ" ։ Իմա սա՛, ով յիմար և չարադիւթ, զի վասն միոյ մեղաց Ադամ ել 'ի դրախտէն. վասն միոյ սպանութեանն տատանումն Կայենի. վասն գինջութեան ջրհեղեղն աշխարհի. վասն ամբարտաւանութեանն անկումն սատանայի. վասն ամբարշտութեանն շփոթումն լեզուաց. վասն արուագիտութեանն կործանումն Սոդոմայ. վասն սուտ երդմանն աւերումն Երուսաղէմի. վասն զծնողս արհամարհելոյ անէծք և ծառայութիւն. վասն սուտ վկայելոյ սղոցումն ծերոցն առ Շուշանաւ. վասն ոչ գոհանալոյ սատակումն Հերովդէի. վասն խստասրտութեան ընկղմումն Փարաւոնի. վասն գողութեան քարկոծումն Աքարայ ։ վասն տրտնջման յօձիցն սատակումն. վասն պոռնկութեան որ անկան 'ի միում աւուր քսան և չորք հազարք ։ Ո՛հ վասն 'ի սուտ յմ̃ծս երթալոյդ, և վասն անխափ 'ի հմայս մերձենալոյդ՝ են 'ի ձեզ, ասէ քարոզն եկեղեցւոյ, բազում հիւանդք և ախտաժէտք. վասն այդորիկ և մահք տարաժամք. վասն այդորիկ և նեղութիւնք բազումք. վասն այդորիկ և անզաւակութիւնք 'ի ծննդոց և կարկումն երկանց անլուծանելի. վասն այդորիկ և

ըմպումն դեղոց. վասն այդորիկ տնանկութիւնք և աղքատութիւն. վասն այդորիկ և երկնային պատուհասք. վասն այդորիկ և անդատապանաց մնութիւնք. վասն այդորիկ և շարժմունք անդադարք. վասն այդորիկ և չյաջողութիւնք անասնոց. վասն այդորիկ և զրկանք ի գողոց. վասն այդորիկ և հուր գեհենին և աղջամուղջքն յաւիտենից և տանջանքն մշտնջենաւորք:

Ո՛վ ի եթէ զբաժակն ոսկի՛ զոր Թագաւորի իսկ մատուցանիցեք 'ի տապաս և 'ի սեղան, և դարձեալ զնոյն առեալ՝ և կոյ և ցեխ և աղբ մարդոյ առեալ բերիցէք՝ զոր և նա իսկ տեսանէր, միթէ զնոյն բաժակն միւսանգամ անդրէն 'ի նորուն սեղան իշխէա՞ք մատուցանել. ոչ: Ոչ գէր. զի աղբոյն պղծեցաք, և Թշնամանեալ բարկանայ և դարձի Թագաւորն: Իսկ կամ վասն երդմանց պատուիրանք որպէս ասէ: Մ՛արգէն, ասէ, զոր ինչ 'ի վեր է քան զինքեանս՝ յայն երդնուն. նոյնպէս և ած, վասն զի ոչ գոյր մեծ որ երդնոյր՝ յանձն իւր երդուաւ և ասէ այսպէս. "Յանձն իմ երդուայ՝ ասէ տէր, եթէ օրհնելով օրհնեցից զքեզ": Այլ երդնուլ այ յարարածս իւր անհնարին է, ամբարշտութիւն է: Իսկ կամ յետ Քրիստոսի գալստեանն գրել մեզ գիր մատամբ այ, և տալ. զի եթէ այդ միւսանգամ մեզ պէտք էին յերկնից, ապա Քրիստոսի գալուստն Թերի և անկատարումն էր: Ոչ այդպէս. այլ օրէնքն մեզ 'ի յերկրի ետուն հրամանս լինել 'ի ձեռն Մովսէսի և Յիսուսի. և յետ այսորիկ տանջանք և արքայութիւն: Բայց կրկին օրէնք մեզ երկնաւորք գրեալ մատամբն այ այլ ոչ առաքին: Բայց սատանայ զոմանս յաջ խոտորեցուցանէ, և զոմանս յահեկ. և զահեակն ամենեքեան իմանամք, վասն զի յայտնի են գործք ձախոյ կողմանն. բայց զաջն ոչ իմանամք, զի աստուածպաշտութեան կերպարանօք խոտորի: Իսկ վասն այսորիկ առաք զպատուէրս զայս՝ եթէ "Մի խոտորեսցիս 'ի գրեալս պատուիրանացս յայսցանէ յաջ կամ յահեակ":

Իսկ արդ հայեսցուք 'ի պատուիրանս այ, և զգրեալս 'ի նմա արասցուք. և մի մոլորեսցուք իբրև զհեթանոսն 'ի բախտ և ճակատագիր և 'ի հրամանս: Ո՛վ ի զինչ և հրամանքդ տարածին ընդ ամենայն երկիր, և բանդագուշեալք խօսին սուտ, եթէ մարդ ընդ հրամանս

վարի և գործէ ։ Եթէ այսպէս է, և ընդ հրամանաւ գործէ մարդ, ապա յայտ է՝ եթէ և դատի ոչ վասն մեղացն, զի զհրամանս նորա կատարեմք ։ Ապա և պսակիմք ոչ վասն արդարութեան․ զի ոչ եթէ մեր կամաւ գործեմք զբարին, այլ նորա հարկաւ ակամայ ։ Ապա և թագաւորք ոչ պարտին[1] զգողն և զպոռնիկն և զսպանողն տանջել, զի ոչ իւրով կամաւ գործէ զայն, այլ զհրամանս կատարէ ։ Ապա թէ որ պիղծ այր ապականիցէ, կամ նու սկեսուրս, կամ դրացի զդրացի, կամ ծառայ զտէր, կամ աղախին զտիկին, կամ աշակերտ զվարդապետ թշնամանիցէ և սպանանիցէ, չպարտի ոք մեղադրել և կամ պատուհասել, զի զհրամանն կատարեն ։ Ապա և զաւազակսն չպարտիմք մեղադրել և հալածել, զի հրամանաւ գան ՚ի վերայ որպէս ասեսդ ։ Բայց ոչ այդպէս․ այլ արարածս ընդ հարկաւ և ընդ ծառայութեամբ և ըստ հրամանի նորա վարին, և ճնճղուկ անգամ յորոգայթ ոչ անկանի առանց հրամանի․ բայց միայն զմարդ տէր և ՚ի վեր քան զհրաման ստեղծ ։ Զի որպէս ինքն ա̃ծ ոչ է ընդ հրամանաւ ծառայ՝ այլ ազատ և զինչկամարար նմին, որպէս և զմարդն ըստ իւրում նմանութեան ստեղծ տէր և ազատ և անձնիշխան և զինչկամարար բարւոյ և չարի ։ Եւ կամակար մտօք եթէ բարիս գործեմք՝ արքայութիւն խոստացաւ, եթէ չար՝ զգժոխս ։ Կարող և կատարիչ ա̃ծ բարւոյ, և ընդ մահ մեղաւորին ոչ կամի, բայց զանձնիշխանութ̃ի ՚ի մէնջ ոչ բառնայ, քանզի ասէ իսկ՝ եթէ կամեսջիք և լուիջիք ինձ ։

1 Յօրինակին պարծին ։

ՆՈՐԻՆ

# ՏԵԱՌՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՄԱՆԴԱԿՈՒՆՒՈՅ

### ԿԱՆՈՆՔ․

Արդ եւ զայս ըստ խմուտ գիտելոյ ասեմ՝ թէ որ զմանուկ տգէտ զտխմար, որ ոչ կարէ կարդալ զաւետարանն 'ի բեմի 'ի լուր ժողովրդոցն, եւ զբոլոր ուսումն կարգի քահանայութեան ոչ է ուսեալ, զպատիժ քահանայանալոյ նորա նա կրէ՝ որ ձեռնադրեացն զնա. զի զհաւնոցն եւ զուսելոցն զհամարս մեղաց անձինք իւրեանց տան։ Այլ օրէն է առաւել զգիտունն եւ զհասակաւ կատարեալս արժանացուցանել զանձինս, եւ առաջնորդել ժողովրդեան։ Վասն որոյ մեծին իսկ Պաւղոսի ձայնարձակ բարբառովն զբողոք բարձեալ ասէր Տիմոթէոսի՝ թէ «Ձեռս յուրուք վերայ վաղվաղակի մի դիցես, եւ մի լիցիս կցորդ մեղաց օտարաց»։ Եւ դարձեալ. «Մի մատաղատունկ, զի մի հպարտացեալ 'ի դատաստան սատանայի անկանիցի»։ Այլ զի պարտ է քահանային անարատ լինել որպէս այ տնտեսի, վերակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեանն։ Արդ զոր օրինակ Պաւղոս զՔրիստոս դնէ միջնորդ այ եւ մարդկան, եւ երաշխաւոր եւ փրկանս ամենայն աշխարհի, արդ ո՞չ ապաքէն նոյնօրինակ եւ քահանային օրէն է ամենայն անարատութբ լինել առաջնորդ եւ փրկանք քաւութեան մեղաց ժողովրդեանն այ։ Արդ եթէ մեծին Մովսէսի ասէ գիր՝ եթէ հեզ եւ խոնարհ եւ հանդարտ էր քան զամենայն մարդիկ եւ ուսեալ զամենայն իմաստութիւն եգիպտացւոց, զի թէ հեզն եւ հանդարտն եւ

իմաստունն և անարատն 'ի բծոյ՝ հաւատարիմ պատգամաւոր այ՟ և մտերիմ տեսուչ ժողովրդեանն ոչ կարաց 'ի մեղաց ողջ պահել զժողովուրդն, և ապրեցուցանել զնոսա 'ի հարուածոցն այ՟, և ժառանգեցուցանել նոցա զպարգեւական երկիրն, իսկ քահանայք տգէտք և արատաւորք զիա՞րդ կարեն ապրեցուցանել զժողովուրդն 'ի մեղաց՝ որք և զանձինս անգամ չկարեն պահել 'ի մեղաց, թող թէ ժողովրդեանն այ՟ լինել առաջնորդ և երաշխաւոր՝ տանել յարքայութիւն այ՟։ Քանզի գրեալ է և պատուիրեալ՝ թէ մի՛ յաջ խոտորիցիս և մի՛ յահեակ։ Վասն որոյ պատուիրեմ առաջնորդաց եկեղեցւոյ զգուշանալ 'ի ձեռնադրութենէ տգիտաց, և մի կաշառօք արծաթոյ զոք յառաջ մատուցանել յեպիսկոպոսութիւն, կամ յերիցութիւն, և կամ 'ի սարկաւագութիւն, կամ յայլ աստիճան, որպէս 'ի սուրբ աւետարանին փրկիչն ասէ առ սուրբ աշակերտսն՝ թէ “Ձրի առէք, և ձրի տուք”։



# ՑԱՂԱԳՍ ՔԱՌԱՍՆՈՐԴԱԿԱՆ ՊԱՀՈՑ ԵՒ ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ՆՈՐԱ ԸՆԴ ԶԱՏԿԱԿԱՆ ՔԱՌԱՍՆԻՆ

Արդ վասն զի պահոց քառասնորդ կոչի որ մի ուրբաթ՝ չարչարանք խաչելութիւնն տեառն, և առիթ կոչման չարչարելոցն յաշխարհիս ունել յանձին զօրինակ չարչարանացն տեառն, առ 'ի փրկութիւն հոգւոյ չարչարակցացն տեառն, և առ 'ի պահպանութիւն անձանց պատուիրանապահացն տեառն, առ 'ի լինելոյ չարչարակից խաչելութեանն տեառն, և փառակից յարութեանն, և առիթ կոչման մեղաւորաց յապաշխարութիւն: Արդ յայսմ քառասներորդի որպէս զի օրէն է զշաբաթն և զկիւրակէն որպէս զուրբաթ և զչորեքշաբաթ պահել զհետ օրինացն առնելոյ[1], և յայնմ քառասներորդի որ կոչի՝ կիւրակէն կոչի օր առաջին և ըսկիզբն աւուրց յարութեան և ուրախութեան աշխարհի և աւետիք արքայութեան, ըն ամենայն ուրախութեամբ անձանց պատուիրանապահացն արդարութեան օրէն է զուրբաթն և զչորեքշաբաթին իբրև զկիւրակէն և զշաբաթն ուտել: Ուստի զոր օրինակ 'ի զատկէն մինչև ցվերացումն տեառն կիւրակէ կոչի, այսպէս և 'ի բարեկենդանէն մինչև ցզատիկն ուրբաթ:

Արդ քեզէն զքեզ ած 'ի հաւան, և զուգեա զայս քառասունս քաւութեան, և զայն քառասունս ուրախութեան. կշռեա զքառասունն ընդ քառասնի, և զուրբաթ և զչորեքշաբաթ ընդ շաբաթու և ընդ կիւրակէի, և գտանես հաւասարակ. ոչ 'ի սմա յագումն և ուրախութիւն, և ոչ 'ի նմին պահք և տխրութիւնք: Այս քառասունս առիթ քաւութեան մեղաց տարւոյն, և այն քառասունս յաջորդ ուրախութեանց տարւոյն: Արդ օրէն է զայս պահոց քառասնորդս հարթիկ պահել 'ի

1 Յայլում օրէն. առնելոյ:

բարեկենդանէն մինչև ցզատիկն. քանզի քաւիչ և թողիչ մեղաց տարւոյն կոչի։ Իսկ զինի և իւղ, ձու[1], ձուկն, պանիր, կոգի, կաղտի, բածխն, շձուկ, կաթն, խեր, և ձկնամորէ, զայս ընաւ ամենևին չէ օրէն և ոչ վայել է ճաշակել ամենայն ումեք, մեծի և փոքու, արդարոյ և մեղաւորի։ Շատ են մեզ այլ կամնկքն քառասուն աւուրն, կանեփհատն, կտաւատ, փոխինդ, հատ, սամթաղջուր։

Իսկ այսու քառասնորդաւ տէրն 'ի լերինն փորձութեան տարաւ յետս զփորձիչն սատանայ, որ է օրինակաբեր յաղթութեան ամենայն հաւատացելոց. միթէ ոյ պահել ինչ պիտոյ էր. ո՛չ ապաքէն վասն օրինակի մարդկան առնէր զայն։ Իսկ եթէ զհանապազօրն մեռանել ոչ կարեմք ըստ բանին Պաւղոսի, այլ գոնեայ քառասուն աւուրբքս լինել հաղորդ չարչարանացն տեառն ջանասցուք. զ'ի բազ անկեալ[2] մեղք տարւոյն քառասուն աւուրբքս ընկեսցուք յանձանց։ Ո՞չ գիտես զի որ միտեալ մտօք չարչարակից լինին չարչարանացն Քրիստոսի, նոքա միայն կարեն լինել փառակից յարութեն. քանզի ասէ, թէ ոչ միայն հաւատալ 'ի Քրիստոս, այլ և վասն անուան նորա չարչարանս ընդունել արժան է։

Իսկ այս քառասունք չարչարանք խաչելութեան տեառն, և այն քառասունք յարութեան կենդանութեն տեառն։ Այս քառասունք քացախ և լեղի չարչարանացն տեառն, և այն քառասունք խորիսխ մեղու և ձկան խորովելոյ մասն յարութեանն տեառն։ Այս քառասունք զինուորացն կնքով պահել զգերեզմանն տեառն, և այն քառասուն հրեշտակացն զաւետիսն տալ մարիամանցն զյարութեանն տեառն։ Այս քառասուն միջնորդ ապաշխարութեան, և այն քառասուն երաշխաւոր թողութեան։ Այս քառասուն քաւիչ յանցանաց, և այն քառասուն թողիչ մեղաց։ Այս քառասուն լալոյ և արտասուաց, և այն ցնծութեան և ուրախութեան։ Այս քառասուն սերմանելոյ ցաւովք և տրտմութեամբ, և այն քառասուն ժողովելոյ փառօք և գովութեամբ։

Իսկ այս քառասնորդաւ մեծ մարգարէն Մովսէս ետ

1 Յայլում չիք ձու, յորում և գրեալ էր զինի կաղցի, ձուկն։

2 Յայլում օրինակի բազանանկեալ։

գործէին ժողովրդեանն, և այն քառասնորդաւ քաւեաց Մովսէս զյանցանսն Ահարոնի և զյանցանս ամենայն ժողովրդեանն: Այս քառասնորդաւ չոգաւ Եղիա 'ի լեառն սինէական, առնուլ հրաման 'ի տեառնէ զվերանալոյն իւրոյ յերկինս: Այսու պահօք ապրեցան երեք մանկունքն 'ի բարձրաբերձ բոցոյ տոչորական հրոյն սատակչինն: Այսու պահօք լուծին նինուէացիքն զվճիռ մահուան զտէրունական հրամանին, առ 'ի լինելոյ ընդունելական պահք ապաշխարութեան նոցա, և արագաթող լինելոյ մեղք յանցանաց նոցա:



## Ի ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆՆ ԵՒ Ի ԾՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ

Սրբոյ և զուգական երրորդութեանն երեք անձինք, մի ա͞ծութիւն, մի էականութիւն, մի իսկութիւն, մի ինքնակամութիւն. մի է թագաւորութիւն, մի է արքայութիւն, մի է տէրութիւն, մի է իշխանութիւն, մի է փառաւորութիւն, մի է բնութիւն, մի է հաստատութիւն, մի է սրբութիւն, մի է կամք, մի է խորհուրդ, մի է փառք, մի է պատիւ, մի յոյս, մի սէր, մի հաւատ։ Մեծ, հզօր, կարող և 'ի վեր քան զամենայն, անեղ, անանց, անսկիզբն, անվախճան, անկատարած, անհաս, անտես, անքնին, և ոչ իւիք կարօտ, և ոչ իմիք ցանկացող. ամենահայր, ամենատէր, ամենագութ, ամենախնամ, ամենալուր, ամենապարգև, ամենահաս, ամենատես, ամենագէտ, ամենափրկիչ, ամենակեցոյց։ Որ ակնարկելովն դարմանէ զամենայն արարածս, զերկնաւորս և զերկրաւորս, զերևելիս և զաներևոյթս, 'ի չէնս և յանչէնս, յամենայն արարածոց յերևելեաց և յաներևութից, յերկնաւորաց և յերկրաւորաց՝ նմա փառք յաւիտեանս։

Միածին Բանն կամօք հօր եկեալ յերկիր, և 'ի սըրբոյ կուսէն մարմնացեալ, չարչարեալ, թաղեալ, յարուցեալ յերրորդ աւուր՝ նստաւ ընդ աջմէ հօր. և գայ դարձեալ դատել զկենդանիս և զմեռեալս։ Որ ըստ էութենն անմայր, և ըստ տեսչութեանն անհայր՝ եկն փրկել զարարածս։ Զի հնար և սուտ ա͞յ չարչարել, և մեռանել չէր հնար. արդ էն ա͞ծ եկն և եղև մարդ, և մեռաւ և փրկեաց զարարածս։ Արդ այլ ոք արարիչ և փըրկիչ և կեցուցիչ իբրև զնա ոչ եղև և ոչ եղիցի և ոչ լինելոց է. բայց միայն մինն, միածինն, 'ի կուսէն ծնեալ ա͞ծ, եղեալ մարդ։ Քանզի բազումք 'ի մարդկանէ ա͞ծածանօթք, ա͞ծատեսք, ա͞ծախօսք. այլ ըստ բնութեան մարդիկ կոչին, և ոչ ա͞ծ։ Եղին ոմանք մարմնով յեր-

կչնս․ սակայն և անդ մարդիկ ըստ բնութեան են, և կամ հրեշտակք, այլ ոչ եթէ ած։ Այն օրինակ և Բա-նին այ եկեալ յերկիր և եղեալ մարդ, և մեռեալ իբրև զմարդ, այլ ըստ էութեանն ած կոչի, և ոչ մարդ․ և ըստ տեսչութեանն ած մարդացեալ, և ոչ մարդ ածա-ցեալ։ Արդ յերկինս և յերկրի մի և նոյն ինքն միա-ցեալ միաւորեալ մարմնով և ածութեամբ, 'ի սրբոյ կու-սէն ծնեալ կամաւ հօր բան և միտք, և կամաւ հօր 'ի սկզբանէ արար զամենայն, և 'ի վախճանի երևեցաւ մարդկան, տէր և տեսուչ յերկինս և յերկրի։ Որ յա-ռաջ քան զյաւիտեանս և 'ի վախճանի էջ յերկիր վասն կենաց և փրկութեան մարդկան․ միջնորդ այ, և երաշ-խաւոր աշխարհի․ պատարագ հօր, և փրկութիւն մարդ-կան․ զատիկ աշխարհի, և տօն տիեզերաց․ հովիւ մարդկան, և պահապան 'ի թշնամեաց․ տուիչ կենաց, և աւետաւոր յարութեան․ յաջողիչ կենաց, և առիթ արքայութեանն․ խաղաղարար աշխարհի, և լուսատու խաւարելոց․ տուիչ կենաց, և բաշխող պարգևաց․ փառք արդարոց, և փրկանք մեղաւորաց․ կեանք կեն-դանեաց, և յոյս մեռելոց։ Նմա փառք յաւիտեանս։



## ՎԱՍՆ ՍԻՐՈՅ

Աստուած սէր է, ասէ որդին որոտման սիրելի աշակերտն Քրիստոսի Յովհաննէս. և որ կայ 'ի սէրն՝ յա̅ծ բնակէ, և ա̅ծ 'ի նմա: Իսկ արդ եղբարք, լուարուք և 'ի միտ առէք զճառս սիրոյ: Զի ամենայն որ սիրէ զա̅ծ, սիրէ նա և զեղբայր իւր. զի սէրն ա̅յ սիրով եղբօրն երևի: Զի թէ զեղբայրն զոր տեսանէ՝ ոչ սիրէ, զա̅ծ զոր ոչն տեսանէ՝ զիարդ կարիցէ սիրել: Այսուիկ ճանաչեմք եթէ սիրեմք զա̅ծ, յորժամ սիրեմք զեղբայրն մեր ըստ հոգւոյն սիրոյ և ոչ ըստ մարմնոյ: Զի այլ է սէր հոգւոյն և այլ մարմնոյն. զոր յառաջ գնացեալ ասացաք յիւրում տեղւոջն: Բայց արդ ամենայն որ սիրէ՝ ճանաչի յա̅յ, և ինքն ճանաչէ զա̅ծ. և ամենայն որ ոչ սիրէ զեղբայր իւր ցաւակցաբար, օտար է յա̅յ, և զշնորհս ա̅ծային ոչ կարէ ընդունել: Ամենայն որ սիրէ զեղբայր իւր 'ի սուրբ սրտէ, բնակարան լինի ա̅յ, և ա̅ծ 'ի նմա բնակէ: Զի ինքն տէրն սիրեաց զմեզ և առաքեաց զհոգին ճշմարտութեան բնակել 'ի մեզ: Զի իմանալի հոգիս մեր ընդ անիմանալի հոգւոյն ա̅յ սիրով կապակցի. և որպէս նա սիրեաց զմեզ, նոյնպէս և 'ի մէնջ կամի սիրել զմիմեանս:

Տես թէ որչափ համարձակութիւն ունի սէրն առ ա̅ծ, որպէս թէ նման ա̅յ առնէ զմարդն: Զի ա̅ծ սիրովն իւրով նման մարդկան եղև, և եցոյց թէ մարդիկ իւրեանց սիրովն նման ա̅յ լինելոց են: Զի ա̅ծ այնչափ սիրեաց զաշխարհս, մինչև զորդին իւր միածին առաքեաց 'ի փրկութիւն աշխարհի. եթէ մեք սիրեսցուք զմիմեանս որպէս և սիրեաց ա̅ծ զմեզ, ոչ ինչ է չար որ խափանէ զսէրն մեր: Ամենայն որ սիրէ, յայտնի է առաջի մարդկան և համարձակ առաջի ա̅յ. զի երկիւղ 'ի մեղաց մահու ոչ ունի, այլ սիրովն ա̅յ զինեալ կայ, և անահ յամենայն երկիւղական վտանգից: Ուր սէր է, անդ երկիւղ ոչ է. որպէս և Յոհաննէս ասէ. "Երկիւղ ոչ գոյ 'ի սէրն, այլ սէր կատարեալ 'ի բաց մերժէ

զերկիւղ»։ Զի երկիւղ ընդ տանջանօք է, և սէր 'ի համարձակութիւն. և զի երկիւղ հալածի 'ի սիրոյ։ Այլ ուր սէր ոչ է, անդ է երկիւղ դատապարտանելին, և ահ կորստեան յաւուր մեծի ահեղ ատենին։ Իսկ սէր աներկիւղ առնէ զմարդ յամենայն տանջանաց։ Սէր զայն առնէ, որ ամենեւին հեռի է յերկրայութենէ։ Զի երկրայութիւն և սէր 'ի միասին ոչ բնակէ. և գիտելի է՝ զի սէրն ոչ միայն 'ի կեանսն յաւիտենականս պտղաբերէ զպտուղ խաղաղութեան իւրոյ, այլ և յաշխարհիս յայսմիկ զամենայն թշնամութիւն 'ի բաց հալածէ, զնախանձ և զատելութիւն, զոխակալութիւն և զչարակնութիւն, զչարախօսութիւն և զհայհոյութիւն, զտրտունջ և զամբաստանս, զհպարտութիւն և զամբարհաւաճութիւն, և մանաւանդ զմայրն ամենայն չարեաց զարծաթսիրութիւն և զագահութիւն։

Արդ որ զսէրն ունի, յայս ամենայն չարեացս 'ի բաց հեռանայ, և յերկնային անքոյթ խաղաղական նաւահանգիստն ժամանէ յամենեւին բարին։ Զինչ խաղաղական քան զսէրն՝ ազատ լինել յամենայն խռովութենէ և զա՟ծային հաճոյսն կատարել։ Սէրն բանալի է արքայութեան երկնից և ճանապարհ կենացն յաւիտենից։ Սէրն զմարդիկ որդիս ա՟յ առնէ և երկնից արքայութեան ժառանգորդ։ Սէրն զապականացու բնութիւս անապականն գործէ, և զմահկանացուս յանմահութիւնս գերափոխէ։ Սէրն զերկրայինս երկնայինս առնէ, և ըզհողեղէնս հրեղէն կազմէ։ Այլ արդ ո՞վ կարէ պատմել զանչափ մեծութիւն սիրոյն, զի անճառ և անպատում է. ըստ որում և անեղ բնութիւն ա՟ծութեան անքննելի է, այսպէս և բնութիւն սիրոյն։ Այլ որպէս ա՟ծ անբաւ է, բայց յամենեսինն մերձ է, և բնակեալ է 'ի հեզս և 'ի խոնարհս և յայնոսիկ՝ որ դողան 'ի բանից նորա, այնպէս և սէրն յամենեսեան մերձ է, որ կամին զնա. և ինքն եկեալ բնակեսցէ 'ի խնդրողս իւր։ Քանզի սէրն սիրէ զսիրելիս իւր, և ատէ ոչ զատելիս իւր։ Որ խնդրեն զնա, մերձ է 'ի նոսա ա՟ծապէս. զի ա՟ծ սէր է և կամեցող սիրոյ 'ի սուրբ սրտէ և յանկեղծաւոր հաւատոյ։

# ԲԱՆ ԽՐԱՏՈՒ ԱՌ ՃԳՆԱՒՈՐՍՆ

Քանզի գրեալ է և պատուիրեալ թէ մի յաջ խոտորիր և մի յահեակ, արդ զհնչական ախտն աջոյ կոչէ և զմարմնական ախտն կոչէ ահեկի։ Նաւորդք իսկ որ դատարկութեամբ անցուցին զաւուրս իւրեանց, երկրքումբք վարին, մեղանչեն և ոչ գիտեն. քանզի թշնամին ա̃յ և մարդկան այսու ախտիւք յաղթեաց հողեղինին Ադամայ, և նովին ախտիւս յաղթեցաւ 'ի հողեղինէն Ադամայ. այսու ախտիւս եսպան զերկրաւոր Ադամ, և նովին ախտիւս սպանաւ յերկնաւոր Ադամայն. այսու ախտիւքս խաբեաց զնախահայրն Ադամ, և նովին ախտիւս խաբեցաւ 'ի նորածնեալ Ադամայն. այսու ախտիւք եկուլ զհնչաւորն Ադամ, և նովին ախտիւքս եթուք ա̃ծեղինաւն Ադամաւ. այսու ախտիւք ընկէց զԱդամ 'ի դրախտէն, և նովին ախտիւք հեղձաւ և ինքն 'ի ծովուն. այսու ախտիւք յաղթեաց կերողին Ադամայ 'ի դրախտին, և նովին ախտիւքս յաղթեաց 'ի պահողէն Ադամայ յանապատին. այսու ախտիւքս խաբեաց զտգէտն Ադամ 'ի դրախտին, և նովին ախտիւք խաբեցաւ և ինքն յետոյ 'ի լերինն փորձութեան։ Արդ փորձիչն մարդկան մինչդեռ կամէր զստեղծիչն իւրև զստեղծեալս փորձել՝ ինքն փորձեալ գտաւ որդին կորըստեան և ժառանգորդ խաւարի։ Արդ քանզի հոգւով ախտիւք անկաւ հոգին չար յերկնից և մարմնով ախտիւք զմարմնաւորն եհան 'ի դրախտէն, վասն այսորիկ հայր ամենայն ախտից և չար հնչոց կոչի հպարտութիւն, և մայր ամենայն ախտից մարմնոյ՝ որկորստութիւն։ Արդ յայսմ ախտիցս ծնանին ամենայն ախտք հնչական և մարմնական. արդ այսու ախտիւքս կռուի ընդ վանականս դաղմուսպէս. այսու ախտիւք սերմանեաց զցայգն քնով, նուէթէ զցայգն երազով և արկանէ զցերեկն լեզուով։

Արդ այսոքիկ են որ կոչի ահեկի. որկորստութիւն, անառակութիւն, շուայտութիւն, արբեցութիւնք, քընածութիւնք, ստախօսութիւն, որովայնամոլութիւն.

վասն այսորիկ ասէ առաքեալ. «Կերակուր պորտոյ և պորտ կերակրոյ, Ած զսա և զնոսա խափանեսցէ»: Վասն պոռնկութեան. ցանկութիւն, գիճութիւն, իգախրութիւն, ակնատեսութիւն, ակնագնացութիւն, պագշոտութիւն, անամօթութիւն, լրբութիւն, յարատ տեսութիւն, ծիծաղութիւն, շուայտեցութիւն, շնութիւն, պոռնկութիւն, իգացելութիւն, արուագիտութի: Վասն այսորիկ ասէ առաքեալն, թէ «Մարմնոյն մեղք մարմնոյն արտաքոյ մարմնոյն են. բայց որ պոռնկիցի, յիւր մարմինն մեղանչիցի»: Վասն դատարկութե. վատ, դատարկ, անյարիր, վեհերոտ, դանդաղկոտ, չգործօ, չկեցու, դատարկակեաց, դատարկակեր, անգութ, անամօթ, քնեայ, երազատես, երազագէտ, վատ մարգարէ, տգեղծ 'ի մարտի, անմիտ, անհանճար. վասն այսորիկ պատուիրեաց առաքեալ. «Որ գործէն ոչ՝ կերիցէ մի»: Վասն նենգութեան. խորամանկութիւն, խարդախութի, չարիմաց, ժանտիմաց, ժանտամիտ, թիւնաւոր, օձաքիմ, խարազղիմաց, ամենակեղծ, բիւրակեղծ, բիւրաբիծ, ամենաչար, խոժոռամիտ, խոժոռադէմ, տրտմող, ուռուցկոտ, դէզաւոր, դեգամոլ, դեղխիչ, գոռող, խածանու, չխթող, դաշտխօս, բանսարկու, հրապուրիչ, որոշիչ, ոխապահ, քինահան, անհաշտ, ատեցող. վասն այսորիկ ասէ, թէ այս ախտք են և կոչին ահեկի, և վասն սոցա դատապարտիմք:

Նոյ այս են աջոյն. ամբարտաւանութիւն, ամբարհաւանութիւն, մնափառութիւն, նեղութիւն անգոյս, արհամարհութիւն, չարակամ, խստասիրտ, խստամիտ, խստապարանոց, յամառ, անհաւան, անհնազանդ, խստաբարոյ, խստաբան, խստախօս, չարաբան, չարասիրտ, բարկացող, սրտմտող, չարացասումն, վայրապարացասումն, անժոյժ, եռացկոտ, փքացող, յարձակող, հարկանող, կռուող, արիւներբես, տրտմող, մինչ ոչ զփղձուկն և ոչ զփուքն թափել չկարէր յիստակեցուցանել զմիտս իւր: Նոյ դարձեալ՝ եթէ ոչ աղաչիցի յումեքէ՝ ուտել ոչ կարէ և ոչ աղօթել, այլ յաղթեալ 'ի ցասմանէն՝ անհաշտ անկանի: Վասն այսորիկ բողոքէ մարգարէն և ասէ, «Բարկանայք և մի մեղանչէք». ևս առաքեալ, թէ «Արեգակն 'ի վերայ բարկութեան ձերոյ մի մտցէ. և մի տայք տեղի սատանայի». և դար-

ձեռաւ առնէ, թէ «Բարկութիւն մարդոյ զարդարութեն այ ոչ գործէ»։ Վասն հպարտութեան. Հպարտ, անձնիշխան, անզգամ, ամբարտաւան, անհաւան, անհնազանդ, ստահակ, ստամբակ, վերիվայր, հեռ, յամառ, վիճող, հակառակող, ընդդիմացող, վատախօս, կռուող, թշնամանող, խռովիչ, խազմարար, խանգարիչ, չարաբան, չարաբար, չարակամ, չարալուր, չարատես, չարախօս, սուտ, ստապատում, կամակոր, կամապաշտ, կամակատար՝ որ կոչի մոլախոհ, անձնատեաց, անձնակորոյս։ Քանզի գրեալ է. «Որ սիրէ զմեղս՝ ատեայ զանձն իւր»։ Եւ դարձեալ, եթէ հանապազ զմիտ առաջի աչացդ տեսանես՝ ոչ մեղանչես եւ ոչ գործես զայս ամենայն։ Փառասէր, անձնակամ, անձնասէր, անձնահաճոյ, դատարկակեաց. եւ այս ամենայն չարիք մնեալ բնակէ 'ի մարդն եւ մերժէ յայ։ Ո՛վ որ աղաչեմ վասն այ զամենեսեան պահելով զանձինս 'ի չար ախտէս յայսմանէ. քանզի վասն սոցա բարկանայ ած, որ զայս կրէ յանձն իւր։

Վասն վարդապետաց։ Ոչ գտանի վարդապետ խոնարհ եւ ոչ աշակերտ հնազանդ. ուսեալն հպարտանայ եւ տգէտն խռովանայ. չիք ոք որ իրաւամբ վարի, եւ ոչ ոք որ արդարութեամբ կայ. գիտունն սնափառի եւ տգէտն փառասիրի. գիտունն չխոնարհի եւ տգէտն չհնազանդի. ծերն սաստելով հրամայէ եւ փոքրն ստահակութեամբ պատասխանէ. ծերն զպատիւ խնդրէ եւ փոքրն զհանգիստ. չիք ոք որ խնայ եւ չիք ոք որ ուսանի եւ առնէ. չիք ոք որ ոգեւէր է եւ չիք ոք որ անապատասէր է. Հրաժարեալք յաշխարհէ եւ չհրաժարեալք 'ի ստացուածոց. Հրաժարեալք 'ի ծնողաց եւ չհրաժարեալք 'ի ծանօթից. Հրաժարեալք 'ի հողոց եւ չհրաժարեալք 'ի խորհրդոց. Հրաժարեալք 'ի հողոց եւ չհրաժարեալք 'ի մեղաց. Հրաժարեալք 'ի լերինս եւ չհրաժարեալք 'ի հրապարակաց. Հրաժարեալք 'ի պահս եւ չհրաժարեալք յըմպողաց։ Եւ արդ բազումք են կոչեցեալք եւ սակաւք են ընտրեալք։

Արդ զոր օրինակ եկեղեցին կոչեցաւ քահանայքն, եւ չէ օրէն նմա այլ կին ունել՝ բայց 'ի միօջէն, զի եթէ աշխարհականքն չհրամայէ երկու կանայս ունել՝ այլ մի, 'ի նա յարել, զնա սիրել, նմա կեալ, զի այս է հրա-

մեն տեառն, և զարձեալ հոգին ամուսին կոչի, և զե-
կեղեցին ամուսին կոչէ, արդ նոյն օրինակաւ և վանա-
կանին վանքն կոչի, զի զվանսերն եկեղեցւոյն է ծնեալ.
քանզի ասէ առաքեալ թէ գլուխ կնոջ այր է, և փառքն
կնոջ այրն, և օրէնք կնոջ այրն։ Արդ յորժամ վանաց
երէցն գլուխ և փառք և օրէնք վանացն լիցէ, ՚ի տեղւոջն
կացցէ. և տեսցէ զժողովուրդ իւր. զի թէ դու որ ա-
ռաջնորդ ես՝ ոչ կաս ՚ի կայի, այլոց զիա՞րդ կարես ասել՝
թէ կաց ՚ի կայի, երկիր ՚ի տեառնէ և հնազանդէ՛ այ
վարդապետաց։ Արդ որք զիւրեանց անձանց զպատուէր
չկարեն հաւատարեաւ պահանջել, զիւրեանց անձինս ար-
ձակ համարձակս արածեն, զայլոց անձինս նզովիւք հա-
լեն և մաշեն. ինքեանք երիվարաւ սատանայիւ զհետ
տերանց և ակնաց յածեալ ծփին, և ՚ի կրօնաւորաց և
՚ի վանականաց իբրև յանարգաց գարշին և խորշին.
չկարէ ոք երկուց տերանց ծառայել։

# ՑԱՆԿ



